ըել ի նմանէ, զի դարձ արասցէ գերելեաց, որպէս զհին Իսրաէլին, բարեխաւսութեամբ ամենայն սրբոց, ամէն։

565 ա Եւ ի՛ յայս դառն և ի ‖ նուըր և ի նեղ և ի սուզական ժամանակիս այր մի բարեպաշտաւն, աղաւթասէր և ողորմած, աստուածասէր և քրիստոսադաւան և ուղղափառ, այր հսկայազաւր ի մրցմունս պատերազմաց, դիւցազնական ի յազատաց և պայազատ ի յիշխանաց, ի յազանց և ի տոհմէ ազքանազեան սեռից պարոն Շալուէ, որդի մեծի իշխանին՝ աստուածասէր պարոն Սարգսին և Թոռն պարոն Բուղլախին. եւ սա հմուտ գոլով հմտութեանց և ներհմտութեանց, արհեստից և մակացութեանց և հնա[գի]ր պատմութեանց՝ նորոց և հնոց, և ուսեալ զբանն, որ ասէ՝ Երանի, որ ունի զաւակ ի Սիովն և ընդանի յԵրուսաղէմ, և դարձեալ, թէ՝ Լաւ է անզաւակութիւն հանդերձ քաջութեան, զի անմահութիւն յիշատակ նորա, զի յաստուծոյ և ի մարդկանէ ճանաչի, և դարձեալ, թէ՝ Են մարդիկ որոց գործքն յայտնի են և յառաջագոյն երթան ի դատաստան, և են որոց զկնի երթան՝ գիրքն է և ամենայն սպասք եկեղեցւոյն։

Զայս տեսեալ և իմացեալ հաւատարիմ ծառայս աստուծոյ պարոն Շալուէս, ցանկացող եղև լուսափայլեալ և մեծապատ տաւնականիս, ի հաստատութիւն կաթուղիկէ եկեղեցւոյ։ Սա բուրաստան աստուածային և դրախտ աստուածատունկ, յորում ծաղիկքն բանականք սպիտակափայլ, կարմրանըշան, ծիրանագեղ, դեղնանկար, կանաչազարդ վայելչութեամբս ըստ զանազան առաքինութեանցն ցուցեալ. սա [եկ]եղեցոյ զարդ և փառք պարծանաց, հայրապետաց խնդութիւն, թագաւորաց պարծանք, քահանայից հրճուանք, սա գանձ և մարգարիտ մեծագին։ Ստացաւ զսա փափագանաւք և ի հալալ և ի քրտնաջան վաստակոց իւրոց և
565 բ ետ գրել զսա, զի լիցի բարեխաւս յաւուրն դատաստանի և ա ‖ նա-

Նկ. 22. Մի հատված Ոհաննէս Թմոքուեցու հիշատակարանից։

 նառ առենին բարեխաւս և անջինջ յաւիտենական յիշատակ պարոն
Բուղլախին, հաւրն պարոն Սարգսին, և մաւրն պարոն Թամսին, և եղ-
բաւրն պարոն Գրիգորին, որ ի ծրագրել սորա խակակոտորել յաշխար-
հըս և եթող սուգ և տրտմութիւն բազում եղբաւր իւրոյ, զոր տէր
աստուած իմ հանգուսցէ զնա ի գոգն Աբրահամու և ինքն անցեալ
պտշտեսցէ, և միւս եղբաւրն պարոն Փանուելին, և քերցն Սիթ-խաթու-
նին և Թենեկին, և ամուսնոյ իւրոյ պարոն Դովլաթ-խաթունին, և միւս
այլ կենդանի կենաց կցորդի իւրոյ պարոն Գուլփաշին, և նորաբող-
բոջ դեռաբուսիկ զաւակի սոցա՝ պարոն Դաւթին, զի տէր աստուած
պահեսցէ զսա անփորձ և անսասան մինչև ի խորին ծերութիւնն,
ամէն։

Արդ, որ հանդիպիք սմա կարդալով, կամ աւրինակելով, կամ
ունկնդրութեամբ՝ յիշեցէք ի մաքրափայլ և յերկնաթոիչ յաղաւթս
ձեր զվերոյգրեալսդ առհասարակ։ Դարձեալ, աղաչեմ յիշել ի տէր
Յովանէս եպիսկոպոս՝ մականուն Ոսկիափոր, որ է ուսուցիչ մեր այսմ
գործոյ։

Արդ, ծրագրեցաւ սա յերկիրս Արարատեան, ի գեաւղս, որ կոչի
Սերկևիլի, ընդ հովանեաւ սրբոյ Յովանիսիս և այլ սրբութեանցս, ի
հայրապետութեան և իշխանութեան տէր Գաբրիէլի՝ արի և քաջ կրաւ-
նաւորի, և ի խանութեան Ջանանշանին, և ի թագաւորութեանն
Վրաց Վախթանկի՛, և յիշխանութեան տեղոյս պարոն Ալիբէկին, և
պարոն Շալուին՝ տեառն գրոյս, և պարոն Վաչ[ուտի՞]ն, և պարոն Քրթին,
[և պարոն Սա՞]րգս[ի]ն: Դարձեալ, աղաչեմ վասն սիրոյն Քրիստոսի
յիշել ի տէր զայս գեղիս զկրաւնաւորքս և զքահանայքս՝ զտէր Խա-
չատուր կրաւնաւորն՝ խրատիչ և ուսուցիչ սոցա, վասն զի եաւթա-
566ա նասնամեայ || անձամբ հեծեծանաւք գնացեալ է յԵրուսաղէմ, յերկըր-
պագութիւն սուրբ ոտնատեղեացն և ի տեսութիւն գերեզմանին Քրիս-
տոսի աստուծոյ մերոյ, վասն թողութեան մեղաց և ծնողաց իւրոց։
Եւ ի դարձ նորա առել է զքարտէզսս և բազում աշխատութեամբ և
տառապանաւք հասոյց առ մեզ, զի եղիցի յիշատակ նորա ի սմա անջինջ
յաւիտենական, և ծնողաց իւրոց, կենդանեաց և ննջեցելոց իւ[րոց]։

Աղաչեմ կրկին յիշել զտէր Մանուէլ քահանայ, զՈհանէս կրաւ-
նաւոր՝ սպասաւորք սուրբ ուխտիս։ Կրկին աղաչեմ վասն սիրոյն
Քրիստոսի և յուսոյ արքայութեանն յիշել ի տէր զտէր Յակոբ կրաւ-
նաւոր՝ զփակակալ [սուրբ] Յովանիսիս, զեղբայրն իւր զԻշխան, և
զմայր սոցա զՆարին, և զհարսն սոցա զԳուլփաշայ, և զաւակսն սոցա
պահեսցէ Քրիստոս աստուած մինչև ի խորին ծերութիւնն, ամէն,
որ բազում աշխատութեամբ և տառապանաւք սպասաւորէին մեզ ի
ծրագրել սորայ, զոր տէր իմ Յիսուս հատուսցէ վարձս ատ և ի հան-
դերձեալն։ Դարձեալ, աղաչեմ յիշել ի տէր զգեղի տանուտէրքս՝ զՄով-
սէսն, զՎիրապիկն, զԽերադինն, զխաւջա Մկրտիչն, զհանգուցեալ Սար-
գիսն, հանդերձ կանամբք և զաւակաւք սոցա, և զայլ քրիստոնայքս,
որ յառ ոտս հաւաքեալ կան պարոն Շալուին՝ զայր և զկին, զծեր և

զաղա, զմեծ և զփոքր՝ ասրհնեսցէ Քրիստոս աստուած այն աւրհնութեամբն, որ ոչ անցանէ...։

566 բ Այլև աւրհնեսցէ Քրիստոս զԹաճաուխճ և Գուլ-Մելիքճ, զի բազում աշխատեցան յերթևեկութիւն և ի կերակրել զմեզ։

Կրկնապատիկ և բիւրապատիկ աւրհնեսցէ Քրիստոս աստուած, ամենայն սրբոցս բարեխաւսութեամբ, որ աստ կան հաւաքեալ, զբարեպաշտ և զհաւատարիմ և զամենայն աւրհնութեանց արժանաւոր զիշխանաց իշխանն զպարոն Շալուէճ. Թշնամիք սորա ընդ մի ճանապարհ գայցեն և հազարսն փախիցեն, սուրք նոցա մտցեն ի սիր[տս] նոցա և աղեղունք նոցա փշրեսցին, ատելիք և չարախաւսք սորա ընդ անդունդսն բեւեռեսցին՝ մինչև դարձցին և զղջասցին, զի բազում անգամ աշխատեցաւ ի վերայ մեզ՝ ի տան, ի | | | բել, ի հարկել | | | նեղանալ և կերակրել | | | կէ և ուրախացուցանել։ Աստուած զպարոն Շալուէճ ընդ հարիւրաւորսն դասեսցէ և ինքն անցեալ պաշտեսցէ, ամէն։

Եւ ես անարժանս և անարհեստս՝ անմարս ի բարեաց և լրացեալս յամենայն չարեաց սուտանուն Ոճաճճէս միայնակեաց, ի գաւառէն Վրացտանայ, ի յամուրն դղեակէն Թմոքոյ, ըստ իմում անարժանութեանս գծագրեցի զսայ, զի լիցի մասն մեր ի սմա։ Եւ որք կարդայք կամ աւրինակէք յիշեցէք յերկնաթոիչ յաղաւթս ձեր զիս՝ զանարժանս և զանարհեստս, և զծնողսն մեր, և զերախտաւորսն...։

567 ա | | | * անմեղադիր լերուք խոշորութեան գր] || բիտ և սղալանաց սորա, ծաղկիդ և կազմիդ, զի կար մեր այդ չափ էր։ Եւ ինքն՝ մարդասէրն աստուած թողութիւն շնորհեսցէ յանցանաց և սղալանաց ձերոց և արժանի արասցէ զձեզ և զմեզ անմահ կենացն և երկնից արքայութեանն, ամէն։

Բ

227 բ ...Եւ զՅակոբ կրաւնաւորն՝ սպասաւոր այսմ գործոյս յիշեա ի քում յարքայութիւնդ, ամէն։**

Գ

232 բ ...Եւ զՅակոբ սպասաւորս և զՅոճաճճէս՝ հողս և մոխիրս աղաչեմ յիշել վասն սիրոյն Քրիստոսի, մի մեղադրել խոշորութեան սորա, զի ժամանակս ձմեռնային է և ես պանդուխտ ի յաւտար գաւառի, և աստուած զձեզ յիշէ։

---

* 566 բ էջի Ի. սյունակի ցածի 10 տողը շատ մաշված ու գունաթափված է։ Վերջին չորս տողը հնարավոր չեղավ վերծանել, իսկ նախորդ 6 տողից անվերծանելի մնացին միայն մի-երկու բառ։

** Ցուրաքանչյուր գլխից հետո կան մանր հիշատակագրություններ, որոնք ոչինչ չեն ավելացնում գլխավոր հիշատակարանի վրա։ Այդ հիշատակագրություններից մեջ ենք բերում միայն մի քանի հատվածներ, որոնք նորություն են պարունակում։

դ

318 ա ...Եւ սղալանաց և պակասութեան սորա անմեղադիր լեր, վասն զի աւրինակս կտրաաած է և ես զայս չափս կարացի յիրար ածել։ Վայ, յանագաւրուն և յանիմասա մարդոց ձեռաց։

գ

344 բ ...Ստացող սուրբ կտակիս զպարոն Շալուէն, և զբարեպաշտ ծնողսն իւր, և զեղբայրն Գրիգոր յիշեսջիք յաղօթս, և զՅովսէփ՝ զիւր ճորտն, և զՈհաննէս գրիչս աղաչեմ։

զ

483 բ ... Ընդ նմին և զԹանսուխն, և զդերձակ Գաւրգասալն, և զծնողսն սոցա, և քեզ փառք յաւիտեանս, ամէն։

604

ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Ա.Դավրիժեցի, Պատմութիւն, 1884, էջ 322

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Վան

Աւարտեցաւ սուրբ գիրքս Յասմաւուրացս յամի ՊՂԱ. Թուականութեանս Հայոց (1442), ձեռամբ յոգնամեղ գրչի Կարապետ երիցու, ի խնդրոյ մահդեսի Մխիթարայ։ Եւ գրեցաւ սուրբ գիրքս ի քաղաքս Վան, ընդ հովանեաւ սուրբ առաքելոցս Պետրոսի և Պօղոսի, և սուրբ Ստեփաննոս նախավկայի, և Սահակայ հայրապետի. ի կաթողիկոսութեան տեառն Կիրակոսի։ Որ ի յայսմ ամի եղև ժողով եպիսկոպոսաց և վարդապետաց, ի մայրաքաղաքն ի Վաղարշապատ, որոց էր գլուխ մեծ րաբունապետն Թովմայ և Յովհաննէս վարդապետն. և եդին զտէր Կիրակոսն յէջմիածին՝ կաթողիկոս ամենայն Հայոց, և նոր նորոգեցաւ աթոռ սուրբ Լուսաւորչին Գրիգորի ըստ տեսլեանն մեծին Ներսէսի հայրապետին և Սահակայ Պարթևին, և մերոյս առաջնորդի սուրբ ուխտին Վարագայ Յովհաննէս եպիսկոպոսին. ի թագաւորութեանն Ջհանշահի, որ ի յայսմ ամի էառ զանառիկ բերդն զԸռել և զՋուլամերկ:

605

ՃԱՇՈՑ

Երևան 989

Գրիչ՝ Գալուստ
վայր՝ Աղջոց վանք

330 բ ...Աւարտեցաւ աստուածախաւս, մարգարէական և առաքելական հոգիաբուխս այս տառ ի Թուաբերութեան հայկազեանս տումարի

*ՊՂԱ. (1442), ի հայրապ[եաութեան] Հայոց տեառն* Կիրակոսի *և յաշխարհակալութեան ըստ ներելոյն աստուծոյ արիւնարբու գաղտնին* Ջհանշահին, *զոր իբրև էառ զիշխանութիւնն և նստաւ յաթոռ առաջին աշխարհաշէն և բարէմիտ ղանորէից՝ սկսաւ սայ աւերել և տապալել զբազում քաղաքս և զգաւառս, և ամայի և անմարդաբնակ առնել։ Եւ ոչ ոք կարէ զչարութիւն սորա ընդ գրով արկանել, առաւել ես զոր արար ընդ աշխարհն* Վրաց, *ընդ քաղաքին* Շամշուլտոյ, *զի խաբէութեամբ առ զնա և զամենեսեան ի սուր սուսերի մաշեաց, զի ըստ մարգարէին, որ ասէ՝ Ոչ ոք էր, որ թաղէր զնոսա, այսպէս և սոքա։ Անթիւք և անհամարք՝ քահանայք, և աշխարհականք, և զկանայս նոցա, և զմանկունս ցրուեցին ընդ ամենայն աշխարհ։ Եւ ով կարէ զաղէտ տարակուսանացս լեզուաւ պատմել, զոր եղև ի սոյն ամի ընդ ազգիս Հայոց։ Եւ ի սմին դառն և նեղ ժամանակի գրեցաւ գիրքս այս ի գաւառիս* Արարադեան, *ի ձորս* Քեղոյ, *ի վանքս* Աղջոց, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Կաթողիկէիս, և սուրբ Ստեփանոս Նախատակիս, և Թրի սուրբ Նշանիս և Սրամունից սուրբ խաչիս, և Թևատ սուրբ Գրիգորիս, և այլ բազմահաւաք սրբոցս, որ աստ կան հաւաքեալ։ Եւ է գրեալ սա ձեռամբ յոգնամեղի անարհեստ և և փցուն գրչի սուտանուն կրաւնաւորի անուամբ* [Գալուստ *կոչեցելոյ* | | | *

## 606

## *ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ*

*Երևան 769*

*Գրիչ՝* Գալուստ
*վայր՝* Աղջոց վանք

*... Արդ, յանկ ելեալ կատարեցաւ տառս, որ կոչի Տետր ձեռամբ յոգնամեղի և յոյժ մեղապարտի* Գալստի՝ *անուամբ միայն աբեղայի՝*
87 ա *սուտանուն կրաւնաւորի, ի դառն և յանբարի ժամանակի, ի թը ‖ վիսն ՊՂԱ. (1442), ի վանքս* Աղջոց, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Ստեփանոս Նախատակիս, և Թրի սուրբ Նշանիս, և այլ բազմահաւաք սրբոցս, յիշատակ մեզ՝* Մխիթարի *և* Գալստի, *և ծնաւղացն՝ հանգուցելոցն և կենդանեացն։ Եւ որք հանդիպիք տեսանելով յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր և աստուած զձեզ յիշէ յիւր արքայութիւնն, ամէն, եղիցի, եղիցի։*

---

** Հիշատակարանի շարունակությունը չի պահպանվել։ Գրչի անունը լրացրել ենք*
*219 ա էջում պահպանված հիշատակագրությունից, ուր ասված է «Զբաղմամեղս և զփծուն գրիչս՝ զԳալուստ աղաչեմ յիշել ի տէր, և դուք յիշեալ [լիջիք]»։*

607

## ՃԱՇՈՑ

Փիրզ. Նոտ 128, Բաղէշ, Ամրդոլու վանք

Գրիչ՝ Յոհաննէս
վայր՝ Խիզան, Գամաղիէլի վանք

...Անարհեստ գրիչս [Յոհաննէս վարդապետ] յանձն առի ակար անձամբ... բազում և մեծ աշխատանօք հասուցի զսա յաւարտումն յաստուածարտնակ վանքս, որ Գամաղիէլ կոչի, ընդ հովանեաւ սուրբ առաքելոյս Գամաղիէլի, ի թուականութեանս Հայոց ՊՂԱ. (1442), ի հայրապետութեան տեառն տէր Կիրակոսի , որ յայսմ ամի նորոգեցաւ սուրբ էջմիածինն, և տէր Կիրակոս հայրապետ ձեռնադրեցաւ, և ի մեր քուրդ ամիրիս՝ Ամիր-Դայուդիս։

Գարձեալ, Յոհաննէս վարդապետս աղաչեմ զսրբութիւնդ ձեր... յիշեսջիք զիս՝ զգծագրող սորա, և զծնողսն իմ զՎարդանն և զԴիլշատն, զհանգուցեալ եղբարքն իմ՝ ղքաղցրիկ Յոհաննէս և զտարաժամ Խէրապետն։

608

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Փիրզ. Նոտ. 129, Մուշ, Առաքելոց վանք

Գրիչ՝ Յովհաննէս
վայր՝ Արծկէ

Օրհնութիւն... որ ետ կարողութիւն... գրչի Յովհաննէս քահանայի հասանել յաւարտ յայսմ աստուածաշունչ կտակիս, յամի... ՊՂԱ. (1442)։ Եւ արդ, գրեցաւ սա ի քաղաքս Արծկէ, հանդէպ սրբարար ծովուս, որ մանր ձկունք ելանեն, ընդ հովանեաւ ամենամաքուր սուրբ Աստուածածնի կաթուղիկէիս։ Ի հայրապետութեան տեառն Կիրակոսի ընդհանուր Հայոց կաթուղիկոսի, որ է արժանաժառանգ մեծ աթոռոյ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին՝ ի տեղի իջման միածին բանին աստուծոյ։ Վասն զի զաջ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին գողացան ի Սսոյ, և բերեալ եդին յիւր սեպհական աթոռին, և այս ի խնամոցն աստուծոյ։ Եւ մերոյս նահանգի (առաջնորդութեան) Ստեփաննոս արքեպիսկոպոսի՝ հօրեղբօրս իմոյ։

609

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Փիրզ. Նոտ 128, Ռշտունիք, Կապուտկողայ ս. Յակոբի վանք

Գրիչ՝ Թումայ
վայր՝ Աղթամար

... Եւ արդ, ես՝ ունայնս Թումայ սուտանուն կրօնաւորս...գրեցի զսա ... ի կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ սուրբ Խաչիս և սուրբ Նշանիս,

ի Թուկանութեանս Հայոց ՊՂԱ. (1442), Այլ և զմեծ փիլիսոփայն զՄինասենց Թումայն, որ-զառաջն նա գրեաց, և զնորին ծնողքն [յիշեցէք]։

## 610

### ՍԱՂՄՈՍ

Փիրզ Նոտ. 129, ի Սեպուհ Լեառն, ի վանս Լուսաւորչի

Գրիչ՝ Յովհաննէս
վայր՝ Ի լեառն Սեպուհ

...Իսկ ես... փծուն գրիչս Յովհաննէս...։

Արդ, գրեցաւ սա ի Թուականութեանս Հայոց ՊՂԱ. (1442), ի մէջ երկուց գաւառաց՝ Եկեղեաց և Դարանաղեաց, յերկնահանկէտ և յաստուածարնակ լեառս Սեպուհ, ընդ հովանեաւ սուրբ Լուսաւորչիս մերոյ Գրիգորի, և սուրբ Փրկչիս, և սուրբ Աստուածածնիս, և սուրբ Կարապետիս, և Մանեայ կուսին սուրբ գերեզմանիս, և այլ բազմահաւաք սրբութեանց։ Եւ եդի զսա յիշատակ ինձ և ծնողացն իմոց... ի գուռն բազմերախտ հօրն մերոյ սուրբ Լուսաւորչիս Գրիգորի, մերձ այրն Մանեայ։ Ի յառաջնորդութիւն սուրբ ուխտիս տէր Թաքսեղ եպիսկոպոսի, և զմիաբան եղբայրութիւն սուրբ ուխտիս՝ զՅովհաննէս աբեղայն՝ զփակակալն, և Թորոս աբեղայն՝ զօրինակիս շնորհողն, և զՄարտիրոս աբեղայն՝ զծաղկողն, և զԱբրահամ աբեղայն՝ զդասավայրն, և զԱւետիք աբեղայն, և զՄեղիտոն աբեղայն, և զայլ միաբան սուրբ ուխտիս յիշեցէք։

## 611

### ԱՒԵՏԱՐԱՆ

Ն. Ջուղա 18, Մ. Տ. Ա. և Ս. Տ. Ա., Ալիշան, Հայկարան

Գրիչ՝ Ոնոփրիոս
վայր՝ Կեղի, Խլպաշի վանք

291 բ ...Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս յերկիրն Խորձիւն, որ կոչի Կեղի, ի վանս, որ կոչի Խլպաշի, ընդ հովանեաւ սուրբ Կարապետին և այլ սրբոցն, որ աստ կան, ձեռամբ յոգնամեղ և անարժան սուտանուն կրաւնաւորի Ոնոփրիոսի։ Արդ, աղաչեմ զամենեսեան յիշեսջիք և զառաջնորդ վանացս զՄելիքսէթ հայրապետ [և զՊետրոս հայրապետ] և զպատուելի քահանայքն, որ աստ կան՝ զՅովանէս քահանայ, և զԿիրակոս քահանայ, և զՎարդան քահանայ, և զՍտեփանոս քահանայ, և զԱստուածատուր քահանայ, և զՄելքիսեթ ճգնաւորն, և զԴանիէլ սարկաւագն, որ սպասաւորէ վանացս և մեզ, նաև զհոգեսէր խաթունն զՈւղուր-Մէլիքն*, և զծնողսն իւր՝ զհայրն իւր զՇահամիրն,** և զմաւրն

* Ս. Տ. Ա.—«զՈւլ Մէլիք»։
** Ս. Տ. Ա.—«զՇահմիրն»,

իւր զԿիրա-խաթունն,* և զեղբարն իւր Վֆախ (°),** և զաոն իւր զպարոն զԱղիպէկն,*** և զաստուածատուր զաւակն իւրեանց զպարոն Սարքախն,**** և զխոճա Ցարուխշան*****և զԿուլամիրն, և զհաւրեղբայր սոցայ զԱմիրպէկն, զոր ետուն գրել սուրբ աւետարանս և եդին յիշատակ ի դուռս սուրբ Աստուածածնին, և սրբոյն Ստեփանոսի Նախավկային, և աստուածընկալ սուրբ Նշանին...։

Դարձեալ... յիշեսջիք զեղկելի գրչակս զՈնոփրիոսս, և զծնողսն իմ, և զհոգևոր հայրն իմ Յոհանէս քահանայ, և որ ի վերա մեր երախտիք ունի, և զԹղԹին կոկողն, և զմարմառին տուողն, ամէն։

Գրեցաւ սուրբ աւետարանս ի Թուականիս ՊՂԱ. (1442). խոշորութեան և սխալանաց մի մեղադրէք, աղաչեմ զձեզ, զի այս էր կար մեր...։

## 612

## ԱՒԵՏԱՐԱՆ

Ն. Ջուղա 46, Մ. Տ. Ա. և Մ. Ֆ. Մ.

Գրիչ՝ Ոնոփրիոս
վայր՝ Կեղի, Խլպաշի վանք

295 ա– ... Եւ ես՝ անարժանս Ոնոփրիոսս սուտանուն կրաւնաւորս
297 ա անարհեստ գրչակս գրեցի սուրբ աւետարանս ի գաւառիս Խորձիւն, որ կոչի Կեղի, ի վանքս Խլպաշի, ընդ հովանեաւ սուրբ Կարապետին և այլ սրբոցս, որ աստ կան։ Աղաչեմ զամենեսեան յիշեսջիք և զառաջնորդ վանացս զՄելքիսէթ հայրապետ, [և զՊետրոս հայրապետն],****** և զալեաւք պատուեալ ծերունիս մեր զՈնանէս քահանայ, և զԿիրակոս քահանայ, և զՎարդան քահանայ, և Ստեփաննոս քահանայ, և զԱստուածատուր քահանայ, զՄելքիսէթ ճգնաւորն, և զԴանիէլ սարկաւագն, որ յայսմ ամի սպասաւոր էր վանացս և մեզ։ Նաև զքրիստոսադաւան քրիստոնէն զՃաշ-Մէլիքն, որ ստացաւ զսուրբ աւետարանս յիշատակ իւր, և ծնողաց իւրոց՝ հաւրն իւրոյ Գրիգորին և մաւրն իւրոյ Ճինաս-Մելիքին, և հանգուցեալ աոն իւրում Մլքին, և այլ ամենայն արեան մերձաւորաց։ Եւ ետ զսա հոգոյ որդոյ իւրոյ՝ Նորաբողբոջ քահանային Աստուածատրին...: Յիշեսջիք զՃաշն, զի յոյժ աղաւԹասէր էր և երԹայր աւր մի ի ժամ և կատարէր զսովորական աղաւԹս, Թէ՝ Երանի այնոցիկ, որ ունի զաւակ ի Սիոն և ընդանեակ նորա յԵրուսաղէմ։ Եւ ասէր Ճաշն ի մտի իւրում՝ ոչ ունիմ որդի, և

---

* Ալիշան—«Ներ-Խաթուն»։

** Աղավաղված այս հատվածը Ալիշանը չունի։

*** Մ. Տ. Ա. «Շարիպէկն»։

**** Ալիշան՝ «և զաստուածատուր զաւակ իւրեանց, և պարոն Սարքախն»:

***** Մ. Տ. Ա.—«Վարուխշան»։

****** Հետո է ավելացված։

ոչ ունիմ դուստր, և ոչ եղբայր և ոչ հայր, և փոխանակ ուստերաց և դըստերաց արար սուրբ աւետարանս իւր հոգևոր որդի...։ Ցիշեսջիք և զիս՝ զեղկելի գրիչս զՈնոփրիոսս և զծնողսն իմ, և մի մեղադրէք խոշորութեան և սղալանաց, զի թէպէտ անարհեստ էի և անմիտ, բայց զօրյաւրինակ գտաք՝ զայն գրեցաք...։ Գրեցաւ աւետարանս ի թուականութեան Հայոց ՊՃՂԱ. (1442)։

Ձեռս երթայ և այս գիրս մնայ։

613

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7870

Գնող՝ Անդրիաս

236 բ ...Արդ, ես մեղուցեալ ծառայս աստուծոյ Հանէսի թոռս Անդրիասս գնեցի զսուրբ աւետարանս ի հալալ վաստակոց իմոց՝ յիշատակ ինձ, և ծնողաց իմոց՝ պապին Հանէսին, և հանկանն իմ Մուշանին, հաւր իմ Մկրաչին, և հաւրեղբաւրն Տատուրին, և մաւրն իմ Արուս-խաթունին, և եղբաւր իմ Ասլան-Բէկին, և Ակոբին, որ տղաաւք փոխեցաւ առ Քրիստոս՝ ամաց իբրև ԻԶ. (26)-ից, և քուրն իւր Խութլու-խաթունն, և հաւրն իւրո Սարգսին, և ամենայն արեան մերձաւորաց, իմոց։

Արդ, երես անկեալ աղաչեմ զամենեսեան, որք կարդէք կամ աւրինակէք՝ զմեզ և զմեր ննջեցեալսն ի սուրբ յաղաւթս. ձեր յիշեցէք։ Եւ աստուածն ամենեցուն ձեզ և մեզ ողորմեսցի, առհասարակ ի սոսկալի յատենին, ամէն, թվ. ՊՂԱ. (1442)*,

614

ԱՒԵՏԱՐԱՆ

Ն. Ջուղա 481, Մ. Տ. Մ. և Ս. Տ. Ա.

Գնող՝ Կարապետ Սալիթաղեցի

ա

287 բ Ցիշեցէք ի Քրիստոս զսրբազան կրաւնաւորն զՍիմէովն՝ զմիջնորդ աւետարան[ի]ս և զծնողսն իւր, ամէն։

Զֆրա Կարապետ Սալիթաղցի,
Որ զաւետարանս զայս գնեցի,

* Ձեռագիրը գրվել է այդ թվից մի-երկու տասնամյակ առաջ։ Ծաղկողն է ոմն Առաքել եպիսկոպոս, որը 2ր էջի լուսանցքում գրել է. «Զսկաւ աշխատող ծաղկիս Առաքել եպիսկոպոս աղաչեմ յիշել»։

Ստացողն է ոմն Յովաննէս, որը 84 ա էջի հիշատակագրության մեջ գրել է. «Յովանէսս, որ զաւետարանս գրել տըւի յիշեցէք ի Քրիստոս»։

Յիշատակ ինձ արարի,
Յիշման արարէք արժանի,
Եւ զծնողքն իմ զբարի,
Որ Մամքան և Յնցիկ կոչին։

Բ

Վաճառող՝ պարոն Բէկտողմիշ

288 ա Յանուն աստուծոյ ես պարոն Բէկտողմիշս, հանդերձ իմ եղբօրացովս, և աէր Յոբ եպիսկոպոս ծախեցի սուրբ աւետարանս ֆրա Կարապետին ՅԻ. (320)* դ[ա]հ[եկա]ն, մեծ չնահաւր առնեմ։**

Ես տէր Յովանէս եպիսկոպոս վկայ եմ, ես ֆրա Յրանկչէս վկայ եմ և ծախող, ես ֆրա Օրբէլս վկայ եմ, ես ֆրա Յօսէփ վարդապետս վկայ եմ, ես ֆրա Մաթէոսս վկայ եմ, ես ֆրա Յովհանէս վկայ եմ։

615

# ՄԻՍԱՂ

Bibl. National 106 (Suppl. arm. 71)

ՀԱ. 1938, սյուն. 75, «Միսական», էջ 390

Նորոգող՝ Դոմինիկոս Շահապօնեցի

Պատուական վարդապետ ֆրա Յովսէփ՝ վերախնամող կարգիս միաբանողաց,*** ընկալ զսակաւ աշխատօղ և զկրտսեր կատարող դրոցս զֆրա Դոմինիկոս**** զանարժանս Շահապօնեցիս, և յիշեայ զ[իս] ի քո սուրբ աղօթսդ, և աստուած զքեզ յիշէ և զքո ննջեցեալսն ի յարքայութիւնն երկնից, ամէն։ Ի թու. մարդեղութեան տեառն ՌՆԽԲ. (1442) Նորոգեցաւ Միսալս։

---

* Մ. Տ. Մ.—«Յ» (300)

** Մ. Տ. Մ.—«առնեմ»։

*** «Միսականում» Դոմինիկոս անվան փոխարեն կարդում ենք «Ղուկաս»։ Բուցե այստեղ չկա շփոթություն, այլ նույն ձեռագրում, նույնպիսի մի հիշատակարան գրել է նաև Ղուկաս Շահապոնեցին։

**** Հավանորեն այն Յովսեփ Շահապօնեցին է, որը ոմն ժամանակակցի կողմից կոչվել է «գերապատիւ գերահրաշ հայր մեր ըստ հոգոյ»։ Սա սկսել էր թարգմանել Թովմա Աքվինացու «Յաղագս խորհրդոց եկեղեցւոյ» աշխատությունը, բայց «ոչ առեալ զաւարտն վասն վրդովման ժամանակին և խստութեան այլազգեացն, և մնացեալ թերատ բազում ամ» (մինչև 1415 թ.)։

Հավանաբար հենց այդ ժամանակ էլ թարգմանությունն ավարտել է ոմն ֆրա Գրիգոր։ Այս մասին տվյալներ են պահպանվել այդ աշխատության Հռոմում պահվող մի ընդօրինակության մեջ (Հռոմ, Borgio, Cod, arm. 45)։

## 616

### Ա Ի Ե Տ Ա Ր Ա Ն

Ն. Ջուղա 36. Ս. Տ. Ա. և Մ. Տ. Մ.

326 ա … Աստուածաշունչ աւետարանս… անկեալ էր գերութիւն. Նայ պր. Ամիր Կաֆացի գնեց զինքն իւր արդար ընչաւք ու պատարագեց յաւժար կամաւ ի վայելումն հաճատկատար Աստուածածնիս։ Իր յիշատակ է, և իւր ծընաւղացն, և իր պսակաւոր կողակցուն՝ Դուխտար-Մելիքին, յաւիտենից յիշատակ իւրեանց ծնողացն։ Աւրբ քահանայք, յորժամ ընդերնուք ձեր մաքրափայլ աղաւթքս յիշէք պր. Ամիրին ծընաւղքն՝ զհայրն Ցրաճկշայ և մաւրն անուն Խթա—Մելիքն յիշէք, և դուք յիշեալ լինիք սոսկալի ատենի.

Գրեցաւ աստուածայշունչ աւետարանս թվ. ՊՂԱ. (1442)։*

Ռ. Է. [Ր]. Գ. Մ. Թ. որ գրեց։**

## 617

### Ճ Ա Շ ՈՑ

Երևան 7446

Հատ. ստացող՝ Ազիզպէյ
վայր՝ Ղրի՞մ

529 ր Ի թվականի Հայոց ազգի
Արեթական սերեալ տոհմի
Ի ՊՂԱ. (1442), ամսեանն ԺԱ. (11) ապրիլի
Ստացա զգիրքս այս պանծալի,
Որ տարէգիրք սայ անուանի…։
Ի յիշատակ անջնջելի
Ինձ՝ անարժան Ազիզպէկի,
Որ Չիրքինեաց վերակոչի,
Եւ Գրիգորի բազմամեղի,
Որ Մխիթրեանց վերակոչի…։***

## 618

### ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ

Երևան 5199

Հետ. ստացող՝ Գրիգոր

265 ա Զվերջին ստացողք գրոցս զԳրիգոր աբեղայ և զհոգևոր եղբայրն իմ զՏիրատուր կուսակրաւն աբեղայն յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր, ով սուրբ ընթերցողք, և աստուած զձեզ յիշէ, ամէնւ

Թւիս ՊՂԱ. (1442)։

---

* Խոսքը սույն հիշատակարանի գրության մասին է։

** Փոխարինագիր ծածկագրով կարդացվում է «Աւ(և)տիք» անունը։

*** Ձեռագիրն ընդօրինակված է 1391 թվականին, Ղրիմում։ Հետ. ստացող Ազիզպէկի հիշատակարանը ընդարձակ է, բայց շարունակությունը զուրկ է պատմական արժեքից։

619

### ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 358

Գրիչ

306 ա …Եւ արդ, ես կրտսերս յորդիս եկեղեցոյ և անպիտանս ի քահանայս | | |* անիմաստ և ախմար գրիչ, և իմ անընդունակ գոլով յարուեստ գրչութեան և բաղում մեղաց ցնորիւք պաշարեալ, այլ ըստ կարի մերում, զոր պարգևեաց մեզ մարդասէր հոգին գրեցի անարժան ձեռաւք իմովք ի յ[ը]նտիր և ստոյգ աւրինակէ, ի մեծ Թուխս, ի յեղանական շրջագայութեան արեգական ստորիջիւք երկնաչու ճանապարհաւ յերկնից յերկիր հայելով, ըստ արարչութեանն չափել յԱդամայ մինչև ցայսր ամք ՑՊԿԷ. (6867), իսկ ի Հայոց Թուականիս ՊՂԱ. (1442) | | |

* Գրչի անունը և թվականին հաջորդող 3,5 տող քերված էր





620

## Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*Իրան, Փերիա, Սանգիրարան գյուղ, Մ. Տ. Մ.*

Գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Բաղէշ

*... [Արդ, ես]՝* Մկրտիչ *քահանայ, ցանկացող եղէ աստուածախօս և աւետարեր սուրբ աւետարանիս, գտի ստոյգ և ընտիր օրինակ, զոր գրեալ էր* Թորոս *փիլիսոփայն ի* Դրազարկն, *յաղագս հռչակաւոր ուխտին սուրբ Առաքելոյն* Տարաւնոյ... *որ կոչի Ղազարու վանք։ Եւ իմ առեալ գրեցի զսա անարժան ձեռաւք իմովք ի մեծ թուականիս ի յեզա[նա]կան շրջագայութեան արեգական ստորիջիւք երկնաչու ճանապարհաւ յերկնից յերկիր հայելով, ըստ արարչութեանն չափեալ յԱդամայ մինչև զայսր ՑՊԾԵ. (6855), իսկ ի Հայոց թուականիս ՊՂԲ. (1443), ի գաւառիս* Աղձն, *ի մայրաքաղաքս* Բաղէշ, *ընդ հովանեաւ Հինգ խորանիս, ի ժամանակիս յորում զաջն Լուսաւորչին գողացան ի* Սսոյ. *և վարդապետք միաբանեցան և դրին կաթողիկոս* Էջմիածինն, *և կասեն աջն Լուսաւորչին մաւտ ի մեզ է, և զստոյգն աստուած գիտէ։ Եւ ի կայսերական բռնակալութեան ազգին նետողաց* Ջհանշահ *պարոնին՝ որդոյ* Ուսուֆին, *ի դժուար և ի չար ժամանակի, յորում արդարութեան կողմն նուազեալ և անիրաւութիւն յամենայն կողմանց զաւրացեալ ...։*

*Յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր* զՍսային *և զկողակիցն իւր* զՏիկին-Մելիքն, *և զհանգուցեալ զաւակսն իւր* զՅովհաննէսն, *և* զՄուրատն, *և* զԲաղդատ-խաթուն, *և* զՄարտիրոսն, *և* զԹուրվանդէն, *և զծնողսն իւր* զՍտեփանոս *և* զՇնոհւորն*...։ Գրիչ* Մկրտիչ *քահանայ, և զծնողսն մեր՝* զԽաչատուր *քահանայ և* զԵղիսաբեթ ... *զի անմխիթար է սա յորդոյ, ի քաղաքիս յայս* Բաղիշոյ, *զսուրբ աւետարանս ետ իւրոյ հոգոյ, ի դուռն սուրբ եկեղեցոյ... սուրբ Կիրակոսիս....* Եւ *զիս* Յովհաննէս *անարժան քահանայս, որ զայս ղադար յիշատակարանս գրեցի յիշեցէք։*

## 621

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Մ. Աթոռ 74, «Էջմիածին», 1951 թ., նոյեմբեր—դեկտեմբեր, էջ 81—83

Գրիչ՝ Յովանէս
վայր՝ Բաղէշ

ա

549 բ Փառք ... որ ետ կարողութիւն Յովանիսի հասանել յաւարտ գրոցս, որ կոչի Ցայսմաւուրք ...։

Բարեպաշտ և մեծազգի տանուտէրս պարոն Վարդան... ետ գրել զսա բարի յիշատակ հոգոյ իւր, և ծնօղացն, և ամենայն ազգականացն։ Եւ արդ, ես՝ անպտուղս ի բարեաց և անկատարս ի կատարելոց, մեղանչականս յանմեղաց և անյիշելիս ի գրչաց՝ անարժան Յովանէսս յանձն առի գրել զսուրբ գիրքս ի դառն ժամանակիս, զոր կանք ի վշտի ի ձեռն անօր[ին]աց և սատանայի։

Եւ գրեցաւ սա ընդ հովանեաւ սուրբ Կիրակոսիս, ի քաղաքս Բաղէշ, ի հայրապետութեան տեառն Կիրակոսի ի յէջմիածինն, զի զաջ Լուսաւորչին գողացան ի Սիսայ և տարան յէջմիածինն ի Վաղարշապատ, և ... հաստատեցին զաթոռ Լուսաւորչին յէջմիածինն, և եդին կաթողիկոս տէր Կիրակոսն՝ Խլոնց կոչեցեալ, այր ցանկալի, նման մեծ հայրապետացն, ձեռամբ մեծ րաբունապետին Թումա հռետորի և Յովանիսի մեծ րաբունապետի։ Ի թվականիս Հայոց ՊՂԱ. (1442), և մեր առաջնորդիս տէր Ստեփանոսի, և յամիրութեան քաղաքիս Շիխ Մահմատ ամիրզի, և ի շահութեան* Ջհանշայ ամիրզին, որ սպանաւ եղբայր նորա ձեռամբ որդոյ իւրոյ, և նստաւ ի թաղթն Ջհանշայ ամիրզէն։ Եւ եմուտ ի Վրաստան, և շատ աւեր արար, զի էառ զբերդն Շամշուլտայ, և բազում սպանումն արար. զի զքահանայքն ետ ի չուան շարել և քարկոծ առնել, և զայլսն զամենեսեան ետ չարաչար գլխատել։ Եւ զկանայսն և զտղայսն ետ գերիլ առնել ԲՌ. (2000) անձն, և այս ամենայն վասն մեղաց մերոց եղև։ Բայց յայս ուրախ եմք, զի ի Քրիստոս եմք ապաւինեալ, զի նոքա, որ կոտորեցան՝ ի տեղի անկելոցն են ժառանգել զանպատում բարիսն ի Քրիստոսէ։

Բայց յայսմ ժամանակի ահաբկու նշան եղև, զի գլուխ միոյ լերինն, որ Նմրութ կոչի, հրդեհեալ վառեալ ի յանդընդոց. և զքարինքն բարձրացուցանէր իբրև Ե. (5) կանգուն, և հալէր, և բոցն երևէր Բ. (2) աւուր ճանապարհ։ Եւ ոք ոչ գիտաց թէ այն ինչ նշան է, բայց ճշմարիտ զայս զմտաւ ածեմք, որ վասն մեղաց հրաշս ցուցանէ մեզ, զի դառնամք ի մեղաց, և մեք յամառեալ ի մեղս։ Այլ հենց նշան մարդ չէ լուեալ և ոչ տեսեալ, և դեռ ի տեղացն ծուխն ելանէ, և որք տեսանեն զարհուրին, զի լեառն հերձեալ է և վիհ մեծ եղեալ, և զքարինքն յիրար եռացուցեալ ի գլուխ լերինն, և խրատ մեզ և ամենայն ազգի, որ դառնամք ի ճշմարիտ ճանապարհն Քրիստոսի աստուծոյ։

Արդ, աղաչեմք զամենեսեանս՝ զքահանայքդ և զժողովուրդքդ,

* Կասկածելի ընթերցված է, ըստ երևույթին բնագրում եղել է «ի զանութեան»։

որք հանդիպիք սմա կարդալով կամ օրինակելով, յիշեսջիք առաջի Քրիստոսի աստուծոյ զստացող սորա զխոջայ Վարդանն ///* Ամիրին, Աղուքին, և /// և կենակցին իւր /// զաւակացն Վարգելին և Յուղիդին, և հանգուցելոցն ի Քրիստոս՝ Յովանեսին և Բուտախին, և [իւրայն]ոցն առհասարակ։ Եւ ինքն Քրիստոս, որ առատն է ի տուրս բարեաց, տացէ նոցա զերկնից արքայութիւն ...։

Դարձեալ, աղաչեմ զամենեսեան՝ զքահանայքդ և զժողովուրդդ, յիշեսջիք առաջի Քրիստոսի զանարժան և զմեղաւոր ծառայս զՅովանէս գրիչս, և ուղիղ սրտիւ և լիակատար բերանով աստուած-ողորմի ասացէք ինձ և ծնօղաց իմոց՝ Մկրտիչ քահանային և Շահանդուխտին, և մեծ պապերուն՝ Խաչատուր քահանային, Յակոբ քահանային և քեռուն իմ Մելքիսէթ քահանային, որ տղայ հասակաւ փոխեցաւ ի Քրիստոս, զի շատ աշխատեցաւ հետ ինձ, աստուած արասցէ իւրն բարի փոխարէն յիւր երկնից արքայութիւն, ամէն. և ողորմի իմ մեծ մամերուն՝ Եղիսաբեդին և [Խա]թունին, և ամենայն արեան մեր-[ձաւո]րաց իմոց, և մեղաւոր [Յով]անէս գրչիս, և կենակցին իմոյ, և ամենայն արեան մերձաւորացն, և Խաթունին, որ շատ մէրութիւն է առել մեզ՝ ի գրոց գրելս, աստուած արասցէ իւրն փոխարէն, ամէն։

Դարձեալ, ողորմի և Վարդանին և իւր ծնօղացն՝ Շահամիրին և Աղուքին, և քեռն իւրոյ, և ծաղկեալ զաւակացն Ուղիդին և Վարգելին, և ամենայն ազգականացն՝ կենդանեացն և հանգուցելոցն, ամէն։

Գրեցաւ գիրգս այս ձեռամբ Յովանեսի, ի քաղաքս յայս Բաղէշ կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ եկեղեցեացս, որ աստ կան հաւաքեալ, ի թուականիս ՊՂԲ. (1443)։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք կարդայք զսա կամ աւրինակէք՝ մեղաց թողութիւն խնդրեցէք ստացողի սորա, և գծողիս, զի բազում աշխատութեամբ գրեցի զսա ի բազում տեղիս, ի դառն և ի չար ժամանակիս, որ Բ. (2) տարի գրեցի զսայ ի խուցս սուրբ Կիրակոսիս և ի սուրբ Դէորգա ժամատունն, և ի մարդոյ ոչ մէկ խնձոր տեսի և ոչ մէկ խիար, վասն այն, զի սէրն բարձեր էր ի Հայոց ազգէս, մանաւան[դ] յիրիցականաց։

Դարձեալ, աղաչեմ զձեզ, անմեղադիր եղերուք սղալանաց և խոշորանաց սորա, զի կար մեր այս էր։

Դարձեալ, ողորմի Քրիստոս աստուած օրինակի շնորհողին՝ Ղրիմ-Խաթունին, և իւր ծնօղացն, և քահանայիցն, որ կամակից եղեն ի տալն՝ տէր Մարտիրոսին, և Թադէոսին, և Արսենին, և Կարապետին, և Գրիգորին, որ աստուած՝ մշակ առանց ամօթոյ պահեսցէ զսոսա ի դուռն սուրբ Աստուածածնի և Գէորգա զօրավարին...։

Ո՛վ, գիրս ֆնայ,
Ձեռս հող և փոշի դառնայ,
Այլ ողորմութիւն տեսան ֆնայ,
Որ յետոյ նորոգէ զհողացեալ բնութիւնս Ադամայ։

Բ

241ա ... Վասն իմ զտէրն աղաչեցէք
Եւ թողութիւն ինձ հայցեցէք։

* Երեք տող անընթեռնելի։

Միթէ լինի [ինձ] ողորմի՝
Յովանիսիս անարժանի,
Եւ փոխեսցէ զիս ի բարի,
Զի մի անփոխ մատնիմ չարի։
Ո՜վ քահանայք աստուածասէրք,
Մաքուր մտօք սրբանուէրք,
Յորժամ որ զայս գիրքս կարդէք,
Յաղօթս ձեր զմեզ յիշեցէք.

Եւ աստուած-ողորմի ասացէք անարժան Յովանիսիս, և ծնողացն իմ Մկրտիչ քահանայի և Շահանդուխտին, և մեծ պապերուն՝ Խաչատուր քահանային և Յակոբ քահանային, և բարի խրատատուացն և ուսուցողացն իմ և վարպետացն։ Եւ ստացողի գրոց բարեմիտ տանուտըրոջն Վարդանին, և իւր ծնօղացն Շահամիրին և Աղութին, և քուրոչն, և կենակցին իւր Սառին, և իւրենց զաւակացն, որ հանգուցեալ են ի Քրիստոս՝ Յովանիսին, Բուտախին և այլոցն, և մեւս զաւակին՝ Ուդիդին, և ամենայն ազգացն, և խցան շինօղիս, որ աստ գրեցի։ Այլ լուն խիստ զահմաթ կու տայր, զի բազում էր ի խուցս, զի այլ մարդ չկայր ի ներս, և ամենին* փոխան՝ զիս կերան։ Աստուած ողորմի կարդացողացդ և լսո[ղացդ]։

622

ՃԱՇՈՑ

Ա. Դավրիժեցի, «Պատմութիւն», 1884, էջ 323

Վայր՝ Արծկէ

Եւ արդ, եղև սկիզբն Ճաշոցիս ի սուրբ ուխտս Մառնավանք, և աւարտեցաւ ի քաղաքն Արծկէ, յամի ութհարիւրեերորդի, իննսունեերորդի և երկրորդ ամի (1443), ի թագաւորութեան Ջհանշահի՝ որդւոյ Ղարայ-Իւսուֆին, և ի հայրապետութեան աթոռոյ Լուսաւորչին մերոյ տեղապահի տէր Կիրակոս ընդհանուր Հայոց կաթողիկոսի։ Զի մինչ ի սոյն ամս աջն Լուսաւորչին մերոյ Գրիգորի ի Սիս էր, և ամենայն ազգս Հայոց հնազանդեալ էաք աթոռոյն Կիլիկիոյ, և այժմ շնորհիւ նորին և օժանդակութեամբ հոգւոյն սրբոյ՝ վերստին եկն ի նոյն Վաղարշապատ էջմիածին շողակաթի տաճարին, և հաստատեցաւ աթոռ հայկազեան սեռի գերապատիւ և հրաշափառ, զոր պահեսցէ տէր Յիսուս, ամէն։

623

ՄԱՇՏՈՑ

Երևան 6450

Գրիչ՝ Իգնատիոս

վայր՝ Սուխարա վանք

238 ա ... Արդ, գրեցաւ ի թուականութիւնս մեր ՊՂԲ. (1443) ամին, ձեռամբ անարժան կրաւնաւորի և անպիտան գրչի Իգնատիոսի, ի քրովբէախումբ և աստուածաբնակ մենաստանիս՝ ի վանս Սուխարա

* Տպ. «ամենայն»։

առձանյելոյ, որ այժմ Հեռաբարձ* կոչի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի տաճարիս, և սուրբ Ստեփաննոսիս, և սուրբ Սարգսի՝ զօրեղ վկայիս, և սուրբ վարդապետաց գերեզմանացս, որ աստ կան հաւաքեալ։ Ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս հեզահոգի և բարեմիտ վարդապետիս Կարապետի, գրեցաւ ի յառաջին ամին հայրապետութեան նոր աթոռոյս էջմիածնի և նորընծայ կաթողիկոսիս տէր
238բ Կիրակոսի, ի խնդրոյ աստուածասէր և պատուական, փա‖ռաւոր, իմաստուն և հաւատարիմ տանուտէրս Պապն, յիշատակ իւր և ծնաւղաց իւրոց և ամենայն արեան մերձաւորաց իւրոց, զհայրն իւր խաւջայ Մըսրշէն և զմայրն Աթամելիքն, որ հանգուցեալ են ի Քրիստոս, զՊապին որդիքն՝ զՄիրիջանն, և զկողակիցն իւր Մաղխթում, զՇէրին, և կողակիցն իւր Խաւնդզաւղայն։

624

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 380

Նորոգող՝ Կարապետ

312բ ... Ի թուաբերութեանս Հայկազեան տաւմարի ՊՂԲ. (1443) ամի, ի դառն և ի նուրբ և յանբարի ժամանակիս, վասն որոյ ազգս քրիստոնէից սառուցեալ տատանեալ և վարատեալ ի ձեռաց իսմայէլական ազգաց, ի կաթուղիկոսութեան Կիրակոսի, ի նորոգութեան Վաղարշապատու Բ. (2) ամաւ յետոյ, և ի թագաւորութեան քրիստոնէից Վախտանգի՝ որդոյ Աղէկսանդրի, և ի ղանութեան Ջահանշահի՝ որդոյ Ուսուֆի, և իշխանութեան տեղոյս պարոն / / / իկին՝ որդոյ Ջաջուռին**. Քրիստոսասէր և ամենայն աւրհնութեանց արժանաւորք սրբասէր կրաւնաւոր եղբայրք սուրբ ուխտիս դամբարանաց սրբոյ Սարգսի զաւարավարիս՝ Յովհանէս փակակալ սուրբ տաճարիս, Բարսեղ բնական հայր, և Մովսէս եղբայր հեզահոգի և սպասաւոր սոցին։ Զմտաւ ածաք, որ ասէ՝ Երանի որ ունից զաւակ ի Սիովն և ընդանի յԵրուսաղէմ, ապաւինեցաք ի բարեխաւսութիւն սուրբ աւետարանիս, որ ունի համարձակութիւն առ Քրիստոս յոյսն ամենեցուն, և տվաք վերստին նորոգել և զարդարել զսա ի հալալ ընչից մերոց յիշատակ մեզ, և ծնողաց մերոց, և ամենայն արեանառու մերձաւորաց։ Դարձեալ, աղաչեմ յիշել ի տէր զիս՝ զկազմող սորա զԿարապետ անարժան աբեղայ....։

Ողորմեա տէր աստուած նորոգողի սոցա տէր Յովանիսի՝ սպասաւոր սուրբ տաճարի, և աշակերտին իւրոյ / / /*** Բարսղի և Մովսէսի,

* «Խառաբաստ» անվան կեղծ ստուգաբանությամբ աղավաղված ձևն է։

** «Տեղոյս պարոն»-ների անունները քերված են. տառերի մնացած հետքերով հնարավոր եղավ վերականգնել հոր անունը (Ջաջուռ) լրիվ, իսկ որդու անվան՝ միայն վերջավորությունը։

*** Քերված է։

և ամենայն հաւատացեալ քրիստոնէից, և ինձ՝ բազմամեղ և անարժան Կարապետի. փրկեա զմեզ յաւիտենական և անշիջ հրոյն և դառն դժոխոց, և արժանի արա անմահ կենացն և յերկնից սուրբ արքայութեանդ, ամէն, եղիցի, եղիցի։

## 625

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 582

ա

154բ Քրիստոս աստուած ողորմեա՛յ Կիրակոս բան[ա]սիրին, և իւր ծնօղացն, և ամենայն արեան մերձաւորացն, ամէն։

Քրիստոս աստուած, ողորմեա պարոն Մեծատան որդոյն, և հօրն Ղազարին, և մօրն Խբթոյն, եղբօր Յոհանէսոյն*, և քւերցն՝ Մարթախաթունին, և Ճուխար-խաթունին, և Մարեմին, և Քաղաքին, և Բաղդատին, և ամենայն արեան մերձաւորին և թող մեղք նոցին՝ զմահացուն և զներելին, բարեխօսութեամբ սուրբ աստուածածնին, ամէն։**

բ

Գրիչ՝ Դաւիթ

101բ Զանյիշելի Դաւիթ և զեղբարսն իմ զՅովանէս և զՄարտիրոս, և զքոյրսն իմ, և զծնողսն իմ աղաչեմ յիշել առ Քրիստոս, զի ողորմեսցի ամենեցուն, և աստուած զձեզ յիշէ. ամէն։

Տէր աստուած աւրհնեսցէ զՋաքարիա դպիրն։***

---

* Այս անունը հապավված է այսպես՝ «Յհոյ»․ առաջարկված վերծանությունն երկբայական է։

** Հիշատակագրության ստույգ ժամանակը հայտնի չէ։ Կարելի է կարծել, որ այն գրված պետք է լինի 1443 թվականից մի քանի տարի միայն հետո, որովհետև հիշատակագրությանը նախորդում է մի ժամանակագրություն, որի մեջ գրանցված վերջին տվյալը վերաբերում է հենց այդ թվականին՝ «ՊՂԲ. (1443)—Ձուէր Կիրակոս կաթողիկոսն փոխեցին վասն Նախանձոյ և Մակուեցին Նստաւ զապալով և թուրքով։ Նւ զիս, և Սարգիս վարդապետն (Սալնապատցի) տօգանել տվին, զինչ վատութիւն, որ արարին կաթողիկոսին, Սարգիս վարդապետին և ինձ (արարին)։ Աստուած թողոյ նոցա զմեղս իւրեանց» (էջ 150 բ)։

Այդ ժամանակագրության հեղինակը Կիրակոս վարդապետ Ռշտունեցին է, որը հիշվում է նաև սույն հիշատակարանի մեջ, որպես «Կիրակոս բանասեր», (այդ մասին տես Վ. Հակոբյան, Մանր ժամանակագրություններ, հատոր I, Երևան, 1951, էջ 113—114)։

*** Դավիթ գրչի սույն հիշատակագրությունը, ըստ հնագրական տվյալների, գրված է Ա. հիշատակագրությունից առաջ։

## 626

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 6342*

*Գրիչ՝* Գալուստ
*Վայր՝* Արարատեան գաւառ, Աղջոց վանք

ա

239ա *... Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի Թուականիս Հայոց ՊՂԲ. (1443), ի հայրապետութեան տեառն* Գրիգորի, *և ի Թագաւորութեանն Վրաց* Վաղթանկին, *և ի ղանութեանն արիւնարբու գազանին* Ջահանշահին՝ *որդո* Յուսուփին, *գրեցօ ձեռամբ յոգնամեղ և անարուեստ և անիմաստ գրչի* Գալստի *սուտանուն կրօնօրի, ի դառն և յանբարբ ժամանակի, ի գաւառս* Արարադեան, *ի ձորս* Քեղոյ, *ի վանքս* Աղջոց, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Կաթու[ղիկ]էիս, և սուրբ Ստեփանոս Նահատակիս, և Թրի սուրբ Նշանիս, և այլ բազմահօաք սրբոցս, որ աստ կան։*

բ

*Գրիչ՝* Մխիթար

239բ *Ես՝ Նուաստ և անպիտան անյիշելի անուն* Մկրտիչ *աբեղայս ստացայ զսուրբ աւետարանս յիշատակ մեզ՝* Մկրտչին, *և տէր* Կիրակոս *կաթուղիկոսին, և տէր* Աստուածատրին,* *և ծնաւղացն իմոց, և եղբարցն, և քուերցն, և ամենայն ազգականացն՝ կենդանեացն և հանգուցելոցն։*

*Արդ, աղաչեմ զհանդիպեալսդ ի սմա զաստուածասէր տեառղքդ, զընթերցողսդ և զաւրինակողքդ յիշել առաջի զենման գառինն աստուծոյ զտէր* Աստուածատուրն, *և զտէր* Կիրակոսն, *և զտէր* Մկրտիչն՝ *աբեղայք և հարազատ եղբարք, և զծնաւղսն մեր, և զամենայն ազգայինսն՝ զկենդանիսն և զհանգուցեալսն, և զհոգևոր զաւակն մեր* զՄերուն *կուսակրաւն աբեղայն, ընդ նմին և զանպիտան կազմող և գրող սուրբ աւետարանիս՝* զՄխիթար *և* զԳալուստ *աղաչեմ յիշման արժանի առնել ի սուրբ յաղաւթս ձեր։ Այլ աղաչեմ զամենեսեան՝ խոշորութեան և սղալանաց գրոյս անմեղադիր լինել, զի այս էր կարն իմ, և դուք յիշեալ լիջիք յառաջի ողորմութիւնն Քրիստոսի աստուծոյ մերոյ, ամէն ...։*

գ

*Նկարիչ՝* Ստեփանոս

7ա *Ո՛վ, եղբարք սուրբ և ընթերցողք, որ հանդիպիք աստուածաբուղխ սուրբ աւետարանիս ընթեռնելով կամ աւրինակելով, հաս ի*

---

* *Մկրտիչի, Կիրակոսի և Աստուածատուրի պատկերները՝ կանգնած դիրքով, նկարված են ձեռագրի 3ա էջում։ Նկարիչն է Ստեփանոսը (տես Նկ. 23)։*

վերայ և գիտութեամբ ընկալջիր և անմեղադիր լերուք, զի յառաջին աւրինակն խորանքս քարշել էի մի ըստ միոջէ, զամէնն հասարակ, և յետոյ այլոց հանդիպեցաք և հաւանեցաք՝ զցանկն ի սմա հաստատեցաք։ Աղաչեմ զձեզ և դուք ընկալջիք և լիակատար սրտիւ յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր զՍտեփանոս Նկարիչս։



Նկ. 23. Կիրակոս կաթողիկոսի և Մկրտիչ ու Աստուածատուր արեղաների պատկերները

## 627

## ՃԱՇՈՑ

Ալիշան, Հայկարան, Երկնիստ գիւղ Կարնոյ

Գրիչ՝ Գալուստ
Վայր՝ Աղչոց վանք

Այս է վաստակ մատանց եղկելի Գալուստի տարտամ եղեգնագըծի և կեղի, վայելումն յաւէտ լիցի, և կաթ աղօթից ձերոց ցնծղիցի ինձ ի տապանն գերեզմանի, և բուսուսցէ ի նորոգումն կենաց արքայութեան երկնից ամէն.

[*Ստացող* Ջանար (*կամ* Ջանհան), *կինն* Դինար, *ծնողքն* Սարգիս *և* Տիկնաց, *եղբայրն* Սարգիս, Պաղիկ, *քոյրն* Թէլուն, Նազխաթուն, *եղբօրորդի* Ազիզբէկ, *և քեռորդի* Մելքիսեդիկ *սարկաւագ*, Ազիզբէկի *կենակից* էսանթէն. *Գրեալ ի վանս* Աղջոց, *ձեռամբ* Մխիթար *և* Գալուստ *աբեղայից*]։*

628

## *ԱՒԵՏԱՐԱՆ*

***Կ. Պոլիս, Անտոնեան վանք 95, Մ. Տ. Մ.***

*Գրիչ*՝ Գալուստ
*ստացող*՝ Սամուէլ մահդասի և կինն Փաշիկ

*Գրեցաւ սուրբ աւետարանս ի թուականութեան Հայոց ՊՂԲ. (1443), ի հայրապետութեան տեառն* Կիրակոսի, *և ի թագաւորութեան Վրաց* Վաղթանկին, *և ի զանութեան* Ջահանշահին՝ *որդոյ* Յուսուփին, *ի գաւառս* Արարատեան, *ի ձորս* Քեղւոյ,** *ի վանքս* Աղջոց։

629

## *ԱՒԵՏԱՐԱՆ*

***Երևան 7772***

*Գրիչ*՝ Աստուածատուր
*վայր*՝ Խլաթ քաղաք

ա

298ա . . . *Որոյ ցանկացող եղեալ բարեմիտ և ողջախոհ տանուտէրն* Յոհանէս *և ամուսինն իւր* Հալւայ-Խաթունն, *և ստացան զսա յիշատակ հոգոյ իւրեանց և ծնաւղաց* Յոհանիսին՝ *տէր* Մկրտչին *և* Ազիզ-Մելեքին, *որ փոխեցեալ են ի Քրիստոս, և եղբարցն* Յովանիսին *և* Մինասին, *և քեռերն* Շալ-Մելեքին, *և հաւրեղբարցն* Սիոն *քահանային*, Թումին *և* Նեքամատին, *և դստերն* Նարին-Խաթունին, *և փեսին*
298բ Մկրտչին, *և դեռաբոյս զաւակի* ‖ *Նոցին* Մուրաչին, *զոր տէր ասաուած ընդ երկայն աւուրս առնէ, ամէն. Այլև նախնեացն*՝ Խութլուշին *և* Ջամլայ-Խաթունին, *և ամենայն մերձաւորաց իւրոց, ամէն*։

*Եւ արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սուրբ աւետարանիս կարդալով կամ աւրինակելով յիշեսջիք յաղաւթս ձեր զստացող սուրբ աւետարանիս* զՅոհանէսն, *և զամուսինն իւր* ըզՀալւայ-Խաթունն, *որ ետ զաւետարանս գրել, և մարմնաւոր աչօք չտեսաւ, այլ յայժմ ամի փոխեցաւ ի Քրիստոս, և զդուստրն իւրեանց* զՆա-

---

** Փակագծերի մեջ բերված հատվածը հիշատակարանի տվյալների հիման վրա շարադրել է իր խոսքերով Ղ. Ալիշանը։*

*** Մեքենագրված է այսպես՝ «ի Ձորոյ քեղոյ»։*

բիՇ-խաթունն, և զփեսէն զՄկրտիչն, և զորդին իւրեանց՝ զՄուրաչէն, որ փոխեցեալ է ի Քրիստոս, և աստուած զձեզ յիշէ յիւր արքայութիւնն, ամէն։

Եւ արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի Խլաթ քաղաքի, ընդ
հովան<ան>եաւ ԺԱ. (11) խորանացն, և սուրբ Գէորգ զօրավարին,
և խնդրակատար Աստուածածնին, և սուրբ Վարդանին, ձեռամբ
յողնամեղ և անիմաստ գրչի Աստուածատրոյ* սուտանուն քահանայի,
յամի ՊՂԲ. (1443) թըւականի, ի հայրապետութեանն տեառն Կիրա-
299ա կոսի էջմիածնի կաթողիկոսի, որ մին ամաւ քան զսա || յառաջ
հաստատեցաւ շնորհօքն աստուծոյ։

Արդ, աղաչեմ զմեզ, որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով, յիշեցէք ի յաղաւթս ձեր զստացող սուրբ աւետարանիս զՅոհանէսն և զԽալւայ-Հաթունն, որ փոխեցաւ ի Քրիստոս, զի նա եղև պատճառ սուրբ աւետարանիս և ետ գրել։ Ընդ նոսին և զիս յիշեցէք ի Քրիստոս՝ զմեղօք լցեալ գրիչս զԱստուածատուր, որ բազում աշխատութեամբ գրեցի, և զհարազատ եղբայրն իմ զտէր Յովանէս, և զծնօղսն իմ զԿարապետ քահանայն և զԹաղայ-Մելիքն, և զմեծ եղբայրն իմ զԽաչատուրն, որ երիտասարդ մահուամբ փոխեցաւ ի Քրիստոս, և զՎարդանէսն, և զդեռաբոյս զաւակսն իմ, և զկենակիցն իմ, և աստուած զձեզ յիշէ յիւր արքայութիւնն, ամէն։

Այլ ես՝ թափուրս յամենայնի
Աստուածատուր գրիչս ողորմելի,
Զձեզ աղաչեմ մանկունք բարի
Զմեզ յիշեցէք յեկեղեցի,
Եւ ի ժամ սուրբ պատարագի,
Սուրբ աղօթից տէրն լսէ
Առհասարակ ողորմեսցի
Ձեզ և մեզ և ստացօղի։
Արդ, կատարեալ գործն ի բարի,
Երանի այն մարդ, որ ունի արթուն հոգի,
Թող զանցաւոր կեանքս չսիրէ
Ոչ ժողովէ արծաթ 'ւ ոսկի
Եւ արդիւնք, զինչ որ լինի.
Ամէնն անցնի, որ չերևի,

* Ձեռագրի 18բ էջում կա ուշագրավ մի նկար։ Ձախ կողմում, աթոռի վրա բազմել է քահանայի հագուստով մեկը, աջ ձեռքում բռնած ունենալով մի տախտակ՝ «Երանեալ է այր, որ [ոչ գնա ի խորհուրդս ամբարշտաց]» մակագրությամբ, ձախ ձեռքում՝ հարվածելու պատրաստ մի ճիպոտ։ Նրա դիմաց կանգնած է դաս պատասխանող աշակերտը՝ ձեռքերը խաչաձև ծալած կրծքին։ Այնուհետև, նկարի աջ անկյունում ծալապատիկ նստած է մի այլ աշակերտ, որի ձախ ձեռքում նկարված է երեք թարմ ճիպոտ, որով ուսուցիչը «խելքի է բերել» իր աշակերտներին։

Նկարն իր բոլոր մանրամասնություններով նմանվում է № 3714 ձեռագրի համապատասխան նկարին (էջ 225, նկ. 10)։

Ով իմաստուն, որ կու գիտէ,
Քան զայս չկայ գանձ գովելի.
Ո՛վ Յոհաննէս, եղբայր բարի,
Դու զուգեցէր գանձ պանծալի,
Զինչ որ ակունք կոյ գովելի՝
Անգին ջաւխարն՝ զսա չարժէ.
Ամենայն ինչք, որ լինի՝
Անտես մընա և անցանի,
Սա քեզ ճրագ ի վառ լինի՝
Զհոգիդ յերկինս ուղևորէ,
Հոգիդ զհօր ձայնն լըսէ՝
Եկ դու, հանգիր, իմ սիրելի.
Քեզ պատրաստեալ եմ սուրբ տեղի,
Որ յաւիտեան ոչ անցանի.
Զի տէրն քաղցր է և բարի,
Որ կու լսէ իւր ծառ[այ]ի,
Եւ որ ասէ զտէր-ողորմին՝
Աստուած իւրեանն ողորմեսցի,
Եւ ամենայն քրիստոնէի,
Որ զսա լսէ յաւժար սրտի
՚Ի ի միտ առնու և աւգտեսցի,
Եւ. Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։

Բ

Ստացողներ՝ Յոհաննէս և Հալէայ-խաթուն։

199բ Եւ արդ՝ ես Յոհաննէս և Հալւայ-խաթուն տըւինք զսուրբ աւետարանս խլաթայ սուրբ եկեղեցեացն՝ ԺԱ. խորանին և սուրբ Գէորգ զաւրավարին, որ կենայ ի ձեռն Աստուածատուր քահանային և Յով[աննէ՞ս]ին. և մի ոք իշխեսցէ տիրել սմա, կամ ծախել, կամ գողանալ, ոչ յազգականաց իմոց և ոչ աւտարաց. և որ յանդգնի՝ զմասն Յուդային առցէ և զխաչահանուացն և զհայենին, ամէն։

Եւ արդ, կրկին աղաչեմ զձեզ աստուած-ողորմի ասել Յոհանի մեծ պապուն՝ Նասրադնին, և Հալւա-խաթունի մօրն խաթուն-Մելքին, և աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։

# 630

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՄԱՏԹԷՈՍԻ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ, ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՑ

ՄՑՀ, հա. Բ. 12, էջ 53—55

Գրիչ՝ Սարգիս
վայր՝ Եկեղեաց գաւառ

333 ա ... Արդ. գրեցաւ հոգիարուխ մատեանս աստուածազարդ և ծաղկաւէտ բուրաստանս, որ ընդունող | | | անսպառ քաղցր բարբառս քաղուածոյ աւետար[ան]ին, որ ըստ Մաթէոսի, հաւաքեալ ի լուսազարդ և յարփիափայլ բանից աստուածաբանչացն՝ Գրիգորի Աստուածաբանին և Ոսկէբերանին և այլոցն, քաջ և մեծ հռետորին՝ աշխարհալուր և տիեզերալոյս անկարաւտ գիտնականին և սուրբ իմաստասիրին, տիեզերահռչակ և մեծահամբաւ վարդապետին զուարթուն անուն կոչեցելոյ, ի պարծանս և ի փառս եկեղեցոյ և ի վարժ մանկանց Նորոյ Սիոնի, նայ և յիշատակ բարի հոգոյ իւրոյ և իւրոյն վարժապետի՝ Յովհաննու Որոտնեցոյն՝ մականուն Կախեալ ի սէրն Քրիստոսի, որոյ յիշատակն աւրհնութեամբ եղիցի։ Զոր տէր Յիսուս փոխանակ այսմ հոգևոր գանձոյ տացէ նմա զբազմելն ի սեղան հարսն և մտը | | | *

Եւ գրեցաւ մատեանս այս ի թուականութեան Հայոց... ՊՂԲ. (1443) ամի, աւգաւստոս Ի. (20)-ն**, ի գաւառս Եկեղեաց, ի վանք[ս Աւագ],*** ընդ հովանեաւ | | | ինք, սուրբ | | | լոյս մեծ բաբունապետիս մերոյ մեծիս Աւետեաց, զոր տէր Յիսուս հաստուսցէ զորս ընդ մեզ բազում աշխատանացն, նաև զբազմերախտ և զգորովագութ հայրս իմ հոգևոր և զուսուցիչս իմ՝ զհեզահոգի և զսրբասնեալ բանին սպասաւոր զտէր Խաչատուր յիշեցէք յաղաւթս ձեր, ով հետևողքդ բանին ճշմարտութեան, որ և յայնմ աւրէ, որ ոչ գձաւ և զա֊ ճանաչէի՝ սայ յայնմհետէ սնուցիչ եղև ինձ ընդ դայակ, զտիւ և զգիշեր աշխատեալ ընդ իմ առ ի յուսուցանել զճշմարտութիւն...։ Զոր աէր Յիսուս՝ հատուցանողն բարեաց հատուսցէ յիւր միւսանգամ գալստեանն իւր վարձս բարի աշխատողիս ընդ իս, զոր ոչ կայ | | ես վճարել փոխանակ բազում աշխատանացն, որ առ իս, ոչ բանիւ և ոչ արդեամբք, նաև զեղբայր տէր զԱստուածատուրն՝ զհաւատարիմ աստուծոյ և զբարի ծառայն, որ և երկոքեան սոքա քեռ[ի]ք են ինձ. ընդ այսր յիշատակեցելոցս թերևս և զիս՝ զհարեալս մեղաւք և զմեռեալս յոգի արժանի առնիջիք յիշման, ով գրոց աշակերտեալ մանկունք և սիրողք բանի, խնդրելով զթողութիւն յամենագութ փրկչէն բարի, զոր և ձեզ ամենեցուն ողորմեսցի։ Զի թերևս ի հայցմանց ձերոց ցաւղ ողորմութեանն աստուծոյ իջցէ ի գերեզման մեղաւք մեռեալ ոգոյս և սրբեսցէ զբազմաշարաւ վէրս անձին իմոյ։

---

* 15 տող խոնավությունից վնասվել է ու չի կարդացվում։

** Տպված է «Աւգոստոսին»։

*** Բերված է եղել։

*Այլ և աղաչեմ յիշել ի տէր զբարի և զսրբասնեալ կրաւնաւորն և զհետևողն ճշմարտութեան զտէր Խաչատուր զուսուցիչն իմ, որ բազում ուրեք ի սուրբ գիրքս գրեաց՝ զմարգարտաշար գիրս իւր սփռելով, մինչև զկէս գրոցս կարծեմ գրեալ սորա, զի մեք տկար էաք ի յարհեստ գրին, վասն այն աւգնական լինէր մեր. ընդ թէ զոսկի ընդ սեաւ գեղ | | | սեաւն գեղեցկանայ։ Նաև գիրս մեր անարհեստ և որ լի ամենայն արհեստիւ և գեղեցիկ, Քրիստոս հատուսցէ նմա փոխանակ այսմ աշխատանաց ղ[հանդի]ստն մշտնջենաւոր և զկեանս անվախճան, ամէն։*

*Այլ և յիշ[եցէք | | | եր իմ և զսիրելիքն ի սրաէ և | | | եղբարքն իմ ըստ հոգոյ զսբբա[սէ՞ր] հետևողքն բանին ճշմարտութեան զտէր Աստուրեն և զտէր Աւետիքն, զոր տէր Յիսուս ի կամս իւր պահեսցէ միշտ և տացէ նոցա բան իմաստութեան առ ի հաստատութիւն կալ եւալ ինքեանց, ամէն։ Զսոյն և ես յերես անկեալ աղաչեմ մոխրաթաւալ գիմաւք զհանդիպողքդ այս մատենի, ո՛վ գրոց աշակերտեալ մանկունք, յորժամ ընթեռնուք կամ գաղափարէք յիշեցէք զառածևալս մեղաւք զգրող այսմ տառի, որ և չհամարձակիմ և չհամարիմ արժան գրել զսեաւ անունս իմ ի սպիտակ գարտիզիս՝ զմեղօորս Սարգիս, նաև սխալանաց և խոշորութեան մեր, որ ի սմա ներեցէք, որ չեմ ուսեալ զքերթողութիւն ի կատար, անվարժ և անարհեստս ի մէջ մանկանց քերթողաց։ Զոր աղաչեմ անմեղադիր լինել վերաասացելոցդ, զի կար մեր այս էր, և թողութիւն մեղաց մերոց խնդրել ի տեառնէ աստուծոյ...։*

Բ

318 *Անմեղադիր լեր, ո՛վ սիրողդ բանին, որոյ հետևեալ ես խաչիս, սխալանաց և խոշորութեան, որ ի սմա, զի կարի շտապով էր աւրինակս, աղաչեմ զիս յիշեա։**

631

*ԺԱՄԱԳԻՐՔ ԵՒ ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑ*

*Երևան 6121*

*Գրիչ՝* Ղազար

105ա *Փառք... որ զօրացոյց զմեղսամակարդ մարմինս և զմատունս*
*հասանել ի զրաւ տառիս։ Աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա*
*ինչ կերպիւ և իցէ, յիշեսջիք աղօթիւք մասին զՅովսէփ քահանայս,*
*և զծնաւղքն իւր, զհայրն իւր զ[Ի]սրայէլ, և զմայրն իւր զՄռչան, և*
105բ *զորդիքն իւր զԿի‖րակոս և զԹաջդին, զՇաքար և զՎարդան, յի-*
*շեսցիք յերկնաթռիչ յաղաւթս ձեր, որք հանդիպիք տեսանելով կամ*
*աւրինակելով, լիակատար բերանով աստուած-ողորմի ասացէք*

* *Նորություն չկաբունակող մանր հիշատակագրություններ կան ձեռագրի բազմաթիվ էջերում։*

Յովսէփ քահանային, և ծնաւղաց իւր, և եղբարցն, և այլ ամենայն արեան մերձաւորացն, առհասարակ, ամէն, եղիցի, եղիցի։

Եւ զՂազար ղանպիտան գրիչս և զծնօղօքն իմ, ամէն։

Թվս. ՊՂԲ. (1443)։

632

## ՀԱՐԱՆՑ ՎԱՆՔ

«Միաբանք և այցելուք Երուսաղէմի», էջ 228

Ստացող՝ Ղազար Ղրիմեցի
վայր՝ Երուսաղէմ

Ձվերջին ստացող սուրբ կտակիս զՂազար Ղրիմեցիս յիշեցէք, որ եգի զսա Երուսաղէմ, ի սուրբ Փրկիչն՝ անջինջ յիշատակ ննջեցելոցն ...։

Ի թվին Հայոց ՊՂԱ. (1443), մարտ ամսոյ ԻԱ.(21) գրեցաւ։

633

## ԺԱՇՈՑ

Փիրդ. Նօա. 132, Նշխարք (№ 4515), էջ 157, Վարագ

Գրիչ՝ Յովհաննէս

Օրհնութիւն ... որ ետ կարողութիւն Յովհաննէս սուտանուն քահանայի հասանել յաւարտ այսմ կտակի, յամի ՊՂԲ. (1443) Թուականի, ի խնդրոյ սրբասնեալ կրօնաւորի տէր Ղազարի։ Արդ, գրեցաւ լուսազարդ տառս ի դառնացեալ և յերեկոյացեալ ժամանակիս, յորում ամի շարժեալ ի վերայ քրիստոնէից անհնարին վիշտ և տառապանք յազգաց անօրինաց և հարկապահանջողաց, յորմէ այց արասցէ զմեզ Քրիստոս որդին աստուծոյ։ Եւ զիս զանարժան զգծողս զՅոհաննէս սուտանուն քահանայ, և զծնողսն իմ զՅակոբ քահանայն և զՍալչուխաթունն, և զհարազատն իմ զԳրիգոր աբեղայն, և զՆերսէս դպիրն [յիշեցէք]։

634

## ԱԽԵՏԱՐԱՆ

«Թորոս Աղբար», Բ, էջ 349—350, Ղուլէի վանք

Գէորգ եպիսկոպոս Ջմշկազեկցի
վայր՝ Խուլավանք

Յիշատակ է այս սուրբ աւետարանս Ջմշկազեկցի Գէորգ եպիսկոպոսիս, որ դաղդաղեալ ձեռաւք գրեցի, անարժան առաջնորդ սուրբ Գէորգայ գերեզմանի Խուլավանից, որ զարդարել է հանգուցեալ Միքայէլ եպիսկոպոսն։ Վասն երկիւղին Լանկ-Թամուրին սուրբ գե-

* Ձեռագիրն ընդօրինակված է 1430-ին, Կաֆայում։

ըեզմանիս միաբանքն թագուցեալ են՝ ի Տով դղեակ, և վանս Խար-տիշարի, և ս. Կարապետին, և Կարմիր վանուց։ Եւ սիրով յօրգորեալ ամենայն միաբանաց՝ կրկին ժողովեցին ինն միաբանս, և պանծառա-ցուցաք սուրբ աթոռս. և երկու ագարակ գնեցաք գիւղին մերձ և դաշտն. մեծ ագարակն հարիւր փարայ և միւսն՝ քսան, իմ հալալ վաստակէս, և բացի վանքիս մերձակայ հաւղէ, որ աւծեալ քար գրաք ի ներքոյ վանացս ութն րոպէ, և հիւսիսային ճանապարհիւ սուտ Լօյսալի գիւղն, որ հեռի է կէս ժամ, և անտի հողադաշտ լեռն է յարևմտից կուսէ, դէպ ի հարաւ՝ կէս ժամ, անտի յարևմուտս՝ կէս ժամ, մինչև ի ճանապարհն Խարբերդու, և ճանապարհիւ ուղիղ դէպ յարևմուտս, և ի գլուխ գեղին՝ աւծեալ քարն, հանց ջրով և հողով, որ բազում աշխատանաւք ստացայ...։

Պարոն Աբէլճ Թաղարցի, որ կոյր էր աչաւք և եկն ուխտ, և բա-ցան աչք նորա՝ հարիւր և վաթցուն ամաց. եւ բազում քաջութեամբ ստացաւ վանացս հողն, որ տիրեալ էր Լօյսալի (գիւղի) չար կարդա-ցողն...։ Ասացէք աստուած-ողորմի նահատակ եղբաւրս տէր Յովա-նէսին... Մէլիք-Մահառյ Աւզբէկցւոյ, թաղեցաւ ի մատուռն սուրբ Աս-տուածածնայ, և բազում հիւանդ բժշկի։ Վայ ինձ, բթամտիս, որ եղբայր նորա եմ և այս սուրբ գերեզմանիս առաջնորդ եմ։ Գրեցի այս բանս սակաւ, այլ և գրեալ եմ ամենայն անցք, որք ընդ իս և ընդ աթոռս անցին՝ յիշատակագրութիւն Միքաէլ արքեպիսկոպոսին և միւս առաջնորդաց, որք յառաջ քան զմեզ, իսկ այս բանս սակաւ գրեցին թուին Հայոց ՊՂԲ. (1443)։*

---

* Թեև ամբողջությամբ կեղծիք չէ այս հիշատակարանը, որ արված է Խուլավանքի սեփականած կալվածքների հաստատության համար, ապա, անտարակույս, աղավաղված ու փոփոխված է և իր ներկա ձևով չի կարող 1443 թվականի շարադրանք համարվել։





635

## ՏՈՒՄԱՐ ԱՐԵԳԱԿԱՆ ԵՒ ԼՈՒՍՆԻ

*Երևան 8973*

*Հեղինակ՝* Եսայի

2 բ *... Ծանիր, զի յամի ծննդեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի*
*ՌՆԽԳ. (1444) թուին Հռովմայեցոցն և Հայոց թուին ՊՂԳ. (=1444)*
*էր...։*
*Եւ զիս՝ զյոգնամեղս և ղյետնեալս ի կրաւնաւորաց* զԵսայիս՝
*զանարժան աբեղայս՝ զշինող արուեստիս յիշեցէք միով տէր ողորմա-*
*յիւ, որ բազում աշխատութեամբ քննեցի և յարդարեցի զարեգակ-*
3 ա *նային և զլուսնեկին գնացմունքն և զաստեղաց դիրքն, որ ան ‖ սխալ*
*և անխափան ընթանալով ոչ կորուսանեն զժամն, զմասունքն, զծը-*
*նունդն, զլրումն, զաստիճանն և զմասունքն իւր, և ոչ բոպէ մի ան-*
*ցանէ, զոր ցուցանէ արուեստս, զի արարի զսա անխափան, որ ըն-*
*թանայ մինչև ի կատարած աշխարհի։**

636

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

*«Հայապատում», Բ, էջ 569—570*

*Վայր՝* Այրիվանք

*Ամենազովելի և աստուածահաճոյ, ամենայն գովութեանց արժանաւորեալն, սուրբ և քաջ հռետորն և արիաջան բաբունապետն* Սիմէոն, *յոյժ սիրելի գտեալ ամենայն սրբոց ի տօնախմբութիւն անյապաղ առանց ձանձրանալոյ, մի ըստ միոջէ կատարելով զտօնս սրբոց նահապետաց, նախահարց և սրբոց մարգարէիցն, մինչև ի խոնարհել որդւոյն աստուծոյ...։ Զոր տէր մեր* Ստեփանոս՝ *որդի մեծափառ իշխանին* Իւանէին Որոտնեցւոյ *երեր ի* Սսոյ *յաստուածաբնակ ուխտն* Եւստաթէի *սուրբ առաքելոյն, և մեծ վարդապետն մեր քաջ եկլեստիատէս Հայոց* Սիմէոն՝ *ստացող օրինակի սորին, բազում աշխատութեամբ և երթեւեկութեամբ բերել ետ ի գաւառն* Արարատեան, *և մեծափափագ յօժարութեամբ և բազում ծախիւք գրել ետ յիշատակ իւր և ծնողաց իւրոց։ Արդ, գրեցաւ օրինակ սորին ի թուաբերութեանն հայկազեան տոմարի ՊՂԳ. (1444), ի հայրապետութեանն* Գրիգորի *աթոռակալի*

---

** Եսայի վարդապետի տոմարագիտական այս աշխատությունը մեծարժեք մի գործ է և արժանի է մասնագիտական մանրակրկիտ քննության։*

*սուրբ էջմիածնին վերստին նորոգելոյ, և յաշխարհակալութեանն կորովի և յաղթող Ջհանշահ միրզին՝ որդւոյ մեծին Յուսուֆին, ի մենաստան Այրիվան, ընդ հովանեաւ հրաշափառ սուրբ լուսոյ մօր կաթուղիկէ սուրբ Աստուածածնին. ներկեալ արեամբ կենարարին սուրբ Դեղարդեանն, և ամենայն սրբոցն, որ անդ հաւաքեալ կան։*

*Այլ և աստանօր աղաչեմք զամենեսեան՝ պատահողք սուրբ տառիս, յիշեցէք զստացող օրինակի սորին՝ զաստուածահաճոյ և զարդիւնական և մեծ վարժապետն Հայոց զՍիմէոն, որ յայնմ ժամանակի փայլէր ի մէջ եկեղեցւոյ իբրև զարեգակն, և մեծաւ յուսով և եռափափագ սիրով սկսաւ նորոգել և զարդարել զվանորայս Աքաքաեան նահանգիս, որ խախտեալ կային ի սահմանաց և ի կրօնից յառաջին հարցն։ Նախ բնակեցաւ յաստուածաշէն և ի աիրախնամ գեղն Եղիվարդ, ի փոքր վանս, որ ի մէջ գեղին, և բազում արդիւնս արարեալ անդ ի խնդրոյ աստուածասէր և բարեպաշտ, մեծազգի և փառաւոր, աղքատասէր, ազատածին առն Ագիզպէկին և որդւոց նորին՝ Աւագին և Զաքարիային։ Բազում կրօնաւորս և աշակերտեալ մանկունս եկեղեցւոյ ժողովեալ յուսուցանել զհինն և զնոր մատեան աստուածաշունչ գրոց, զսուրբ և զարտաքին փիլիսոփայութիւն՝ ամս տասն։ Եւ ապա ուշեդեալ գնալ յաստուածակոխ սուրբ քաղաքն Երուսաղէմ՝ տեսանել և երկիր պագանել սուրբ տնօրինականացն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. և ի ճանապարհի տկարութիւն պատահեալ՝ դարձեալ եկն բնակեցաւ ի մեծափառ սուրբ ուխտն յԱյրիվանս, և զամենայն կարգս և զսահմանս ուղղեաց ըստ առաջին սուրբ հարցն, ուխտ եդեալ յամենայն օր ասել ԾԾ. (150) սաղմոսն Դաւթի, և անխափան կատարել զաստուածային պատարագն ի շաբաթ և ի կիրակէի, յամենայն մեծամեծ տօնի, և թողեալ յիշատակ պայծառ ժամատեղացն՝ մի պատուական Աստուածաշունչ, մի Տօնական և մի Ցայսմաւուրք։ Եւ կեցեալ սուղ ինչ ժամանակ, ապա եկեալ բնակեցաւ ի սուրբ ուխտն Զագավանք, և վերստին կարգեաց զամենայն բարի կարգս և օրէնս յերկրին Կոտեաց՝ ի կարգաւորս, յազատս և յաշխարհականս։ Վասնզի շատ անկարգութիւն և անօրէնութիւն մտեալ էր յեկեղեցի։ Առաջին՝ զազգակցութիւն, զկնքաւորութիւն և զխնամութիւն՝ ախտիր, անխրատ գործէին. շփոթեալ անամօթ, և յեկեղեցւոյ սաղմոսն Դաւթի պակասեալ էր և չոր շարականքն բազմացեալ, և քահանայք զանազան զգեստուք պճնեալ և գօտեւորեալ իբր այլազգի, և աբեղայք թողեալ զվանս և զանապատս և զամենայն հոգևոր ուսմունս՝ ի գիւղս բնակէին։ Իսկ սա աստուածային վարդապետութեամբն սաստէր և յանդիմանէր զանուսումն և զանխրատս և զանխըրղայս (*)։ Եւ դարձեալ, քաղցրուսոյց վարդապետութեամբն ուսուցանէր, խրատէր և մխիթարէր վկայութեամբ աստուածային սուրբ գրոց՝ զղջացեալ հաւատացեալ ժողովուրդս, օրհնելով յորդորէր ի պատուիրանսն աստուծոյ. և եբարց զամենայն խռովութիւն ի տանէ աստուծոյ։ Եւ կանոնս և օրէնս հաստատեաց՝ զի աբեղայք ի վանս բնակիցին, իւրեանց հանդերձիւն՝ բրդեղէն, մաշկեղէն կամ մազեղէն՝ ըստ առաջնոցն, և աշխարհի երէց ի պահք ժամանակի գինի մի ըմ-*

*պիցէ և ձէթ մի ուտիցէ. և կապուտ փաթթէ* ի գլուխն. զՃԾ. (150) սաղմոսն երգէ իւր ընկերօքն յեկեղեցի, և զերեք յիսնական կենաց պահօք շաբաթ և կիրակին՝ զղջացեալքն, միայնակեացքն և ապաշխարողքն։ Իսկ պատարագողք աբեղայքն և ճգնաւորքն՝ բոլոր կենան զյիսնակաց պահսն, և յօրն, որ զպատարագն մատուցանէ՝ լեզուաւն առէ զութ կանոնն անխափան, և գինի և միս մի ուտիցէ այն օրն, ըստ առաջին հարցն։ Այլ և զամենայն սահմանս և զկարգ վանիցն ուղղեաց ըստ առաջնոցն. եթէ բնակիչք, որ լինին ի մի խորհուրդ և բան և մի գործ, այսինքն երեք տեղ՝ ի ժամատեղն, ի հացատեղն և ի բանատեղն,** հնազանդ լինին առաջնորդաց եկեղեցւոյ. և առանց հրամանի կրօնաւոր ի վանացն մի ելցէ յոչինչ գործ։ Այլ և զվանքն պարըսպեաց և ամրացոյց և որոշեաց ի յաշխարհականացն, զի աբեղայ ի շուրջ պատի կողմն բնակեսցէ, և սանամայր մի արասցէ և քոյրաքոյր և մայրաքոյր. և ամառն և ձմեռն ի մի վայր ժողովին ի քնոյ ժամն, ըստ առաջնոց սահմանին։ Եւ հինգ մեծամեծ խաչ կանգնեաց ի մէջ պարսպին. կամէր զեկեղեցի շինել և այլ բազում արդիւնս առնել, եհաս հրաման յարարչէն կոչել զվարդապետն առ ինքն, ի թուիս ՊՀԷ. (1428), և մնաց գիրքն թերատ ամս բազումս։ Առաջինն գրեալ եղև ձեռամբ սրբասէր և մաքրամիտ քահանայի՝* Մեսրոբ *անուն գրոց աշակերտի, յիշատակ նորին օրհնութեամբ եղիցի։****

*Վկայասէր գոլով մեծ րաբունապետն* Սիմէոն*՝ ըղձմամբ և փափագանօք վասն յուսոյն, որ առ աստուած և սիրոյ վկայիցս՝ զտկարութիւն անձին մոռանալով գնաց և ի* Տաթևոյ *երեր զկէս աւրինակն և զկէսն ի տեղն ետ գրել։ Վասն որոյ աղաչեմ զճշմարիտ գաղափարողսն յամենայն ամսի վճարն գծագրէք ընդ յիշատակի ձերոյ զմեծ րաբունապետն* Սիմէոն, *որոյ յիշատակն օրհնութեամբ եղիցի։*

## 637

## *ԱՒԵՏԱՐԱՆ*

**Երևան 4829**

*Ծաղկող՝* Մինասենց Թումայ
*վայր՝* Աղթամար

296 ա *... Արդ, այսմ աստուածեղէն և երկնապարգև գանձիս և լուսափայլ և մաքուր մարգարտիս ցանկացաւղ եղէ ես՝ մեղաւոր և անարժան ծառայս ծառայիցն աստուծոյ* Թումայ *մականուն* Ղուզիկ *կոչեցեալ՝ ի գեղջէ* Գաւաշից, *և ետու գրծագրել զսա մեծաւ փափագմամբ և ջերմեռանդ հաւատով ի հալալ արդեանց իմոց, յիշատակ բարի հո-*

* Այս նույն հիշատակարանը, որ քաղված է Վենետիկի № 402 ձեռագրից, Ալիշանի «Հայկարանից» ընդօրինակել է նաև Մ. Տեր-Մովսիսյանը. նրա մոտ «փաթթէ»-ի փոխարեն գրված է «մի փաթթէ»։

** Իմա՝ «աշխատանոց», «գործատուն»։

*** Շարունակությունը վերցնում ենք Ղ. Ալիշանի «Հայկարան» ժողովածուից Մ. Տեր-Մովսիսյանի կատարած ընդօրինակությունից։

գոյ իմոյ, և ծնաւղացն իմոց՝ հաւրն իմոյ Կիրակոսի և մաւրն իմոյ
Խաթուն-Մէլէքին, եղբաւրն իմոյ Տէրուն աբեղային, և կենակցին իմոյ
Աղութին, և զաւակացն իմոց՝ հանգուցելոցն ի Քրիստոս Կուրնի-Բէ-
կին և Փաշային, այլ ամենայն արեան մերձաւորացն իմոց՝ կենդա-
նեացն և հանգուցելոցն։

298 ա ... Եւ տըւի զսա ընծայ և նըւէր ի յանուանի գեօղս Գաւաշ, ի
դուռն գերահռչակ սուրբ տաճարացս Ամենափրկչի և սուրբ Կիրակոսի՝
յիշատակ բարի հոգոյ իմոյ և ծնաւղացն իմոց, որպէսզի հանապազ
ընթերցցին զսա մանկունք եկեղեցոյ ի դուռն սուրբ տաճարացս,
մանաւանդ ի ժամ սուրբ և սոսկալի, հաշտարար և մեռսաքաւիչ պա-
տարագին...։*

298 բ ... Եւ արդ, ես՝ ունայնս և թափուրս յամենայն հոգևոր բարէ-
մասնութեանց, և հիւծեալս և մաշեալս վերջին աղքատութեամբ՝ մե-
ղապարտ և յանցաւոր ծառայս աստուծոյ Մինասենց Թումայս՝ ան-
ուամբ և էթ աբեղայս, տեսի զփափագ սորա և զսէրն, զոր ունէր առ
հոգևորն, և հարկեցայ յաղաչանաց նորա, և յանձն առի և ետու ըղ-
ծագրել զսա քըւեբորդոյն իմոյ Հայրապետ աբեղային ի ստոյգ և յըն-
տիր աւրինակէ։ Եւ ես իսկ մեղսամած մատամբ իմով ծաղկեցի զսա
299 ա ըստ իմում կարի, և զհամաբարբառսն և զտրնատաշ գըւ ‖ խագիրսն
և զյիշատաքանս զայս և զերից ևս գլխացն** գըծագրեցի ձեռամբ
իմով և կազմեցի յաստուածապահ կըղզիս Աղթամար, ընդ հովանեաւ
գերահռչակ և երկնանման գմբէթայարկ սուրբ Խաչի տաճարին, և
Ամենափըրկչին, և սուրբ Աստուածածնին, և սուրբ Սարգիս զաւրա-
վարին, ի հայրապետութեան տեառն Զաքարիայի, և ի թվականու-
թեան հայկազեան տումարիս ի յՊ. և ի ՂԳ.(1444), ի դառն և ի չար
ժամանակի, յորում տառապեցուցանեն և նեղեն զազգս քրիստոնէից
ազգի ազգի կեղեքմամբ, և անողորմ հարկապահանջութեամբ, և յաշ-
խարհէ յաշխարհ վըտարմամբ իբր զգերի՝ տամբ և ընդանեաւք,
անիրաւ ազգն նետողաց, որք են տեարք և թագաւորք և իշխանք աշ-
խարհաց մերոց՝ ազգաւ թուրք։

Արդ, ի յայսպիսում դառնութեան ժամանակի գըծագրեցաւ
սուրբ աւետարանս այս ձեռամբ անարժան և անարհեստ գրչի Հայ-
299 բ րապետի անուամբ և եթ աբեղայի, ‖ ի խընդրոյ երկուց հարազատ
եղբարցն՝ պատուական և ըրբասէր Տէրուն աբեղայի և Թումայի վա-
ճառականի։

Վասն որոյ աղաչեմ զամենեսեան սիրողս Քրիստոսի, լի ըերա-
նով և ուղիղ մտաւք աստուած-ողորմի ասացէք սուրբ աւետա-
րանիս երկուց հարազատացն՝ Տէրուն կրաւնաւորին և Թումայ վաճա-

* Բաց ենք թողնում 298ա—298բ էջերի վրա գտնվող ընդարձակ հատվածը, որը կրկնություն է նախորդ հատվածի։

** Խոսքը Մատթեոսի, Մարկոսի, և Ղուկասի ավետարանների վերջում եղող համառոտ հիշատակարանների մասին է, որոնք ոչինչ նոր բան չեն ավելացնում ընդարձակ հիշատակարանի վրա։

ռականին*, և ծնօղաց նոցին Կիրակոսին և Խաթուն-Մէլէքին, և Թումայի կենակցին Աղութին, և զաւակաց նոցին՝ հանգուցելոցն ի Քրիստոս Գուրջիրէկին և Փաշային, և քեռոյն իւրեանց Աղուպշային, և այլ



Նկ. 24. Ձեռագրի ստացողներ Թումայ վաճառականը և Տէրուն կրոնավորը

ամենայն արեան մերձաւորաց նոցին՝ կենդանեաց և հանգուցելոցն։
Ընդ նոսին և զմեզ արարէք յիշման արժանի՝ զմեղաւք տառապեալ
ոգիքս զՀայրապետ սոսկանուն աբեղայս՝ գծագրող տառիս, և զծնաւղսն
իմ զԽաչիկ և զՌսկիտիկին, և զեղբայրն իմ զՅոհաննէս, և զքոյրն իմ
300 ա զՎարդ-Խաթուն, և լի բերանով և բոլորա || խաւս լեզուաւ աստուած-
ողորմի ասացէք մեզ, զի և ձեզ ողորմեսցի Քրիստոս, ամէն։

Յիշել աղաչեմ ի Քրիստոս և զիմ անարժանութիւնս՝ զՄինասենց Թումայս՝ զբազմավէր ոգիս, որ ծաղկող և կազմող եմ աւետարանիս և գրծող յիշատակարանիս աննախանձ կամաւք և ինձ ասացէք աստուած-ողորմի, և ծնօղացն իմոց Սիմէոնի և Արղունի, և երախտաւոր քեռոյն իմոյ Թումայ միայնակեցին, և ձեզ յիշողացդ ողորմի Քրիստոս ի յաւուրն վերջին, ամէն։

Եւ արդ, ես՝ մեղուցեալ և անարժան ծառայս ծառայիցդ աստուածոյ Տէրուն սոսկանուն աբեղայս, որ ի Նարդեան ժամանակիս հէրպէտ կոչիմ ես սուրբ ուխտիս՝ հըռչակաւոր մենաստանիս սուրբ Վարդանայ զաւրավարիս, և հարազատ եղբայրն իմ Թումայ, որ ստացաւղն է սուրբ աւետարանիս, տըւաք զսուրբ աւետարանըս զայս ի

* Ձեռագրի 11ա էջում նկարված են մի աշխարհականի և մի հոգևորականի պատկերներ։ Ըստ երևույթին, դրանցից առաջինը ձեռագրի պատվիրատու Թումայ վաճառականն է, իսկ երկրորդը Տէրուն կրոնավորը (տես նկ. 24)։

յանուանի գեօղս Գաւաշ՝ ընծայ և Նըւէր գերահռչակ սուրբ տաճա-
300 բ րացն Ամենափըրկչին և սուրբ Կիրակոսին։ || Վասն որոյ աղաչեմք
զամենեսեան՝ զպատուական և զսրբասէր քահանայսդ, որ ի յայժմու
ժամանակիս սպասաւորք էք սուրբ տաճարացս՝ երկու հարազատ եղ-
բարքդ՝ Թադէոս և Կարապետ, Ատոմ, և Կիրակոս և Յովաննէս, և որք
յապայս լինելուց էք, զի սիրով ընկալջիք զսա ի ձեռաց մերոց նըւէր
աստուծոյ, և խնամով պահեսջիք զսա ի գողոց և յայլ պատահորաց,
և առանց ձանձրանալոյ և աննախանձ կամաւք և յաւժար սրտիւ հա-
նապազ ընթեռնուք զսա ի սուրբ քառասներորդ աւուրք յարութեանն
Քրիստոսի, և յամենայն կիրակմտի, և մանաւանդ ի ժամ սուրբ և
սոսկալի պատարագին, զի և դուք գտջիք ողորմութիւն ի Քրիստոսէ
յաւրհնութեանն պահու, ամէն։

Այլ և զպատուական և զսրբասէր կրօնաւորքս յիշեցէք ի Քրիս-
տոս՝ զհարքս մեր և զեղբարքս, որք են միաբանք և սպասաւորք
հրեշտակաբնակ ուխտիս սուրբ Վարդանայ զաւրավարիս, որք խրա-
301 ա տիչք եղեն մեզ և յորդորիչք || ի գործս բարիս՝ ծերունի հայրս մեր
պատուական տէր Թումա, որ ծընաւղ և սընուցող է լեալ մեզ ամե-
նեցուն։ Եւ ի սորա առաջնորդութիւնս շատ արդիւնք յաւելցաւ վա-
նացն, աւգնականութեամբ միեղէն եղբայրութեանցս, որք ի բազ-
մացն սակաւք են մնացել և են թըւով վեց՝ Մկրտիչ մահգասին և
Ստեփաննոս սրբահոգին, Բարսեղ և Վարդան, Յովանէս և Վարդան, և
ես Սերուեն՝ տրուպ քան զամենեսեան և սպասաւոր սոցին։

Արդ, ի հերպետութիւն տէր Թումային, մեր ամենեցուն աւգնա-
կանութեամբս և կամաւք աստուածասէր տանուտերացս, որք կան
այժմ կենդանի՝ Մանկասարենց Թումայն, և հիւսն Կիրակոսն, խոջա
Ստեփաննոսն, Ջիթկանց Կիրակոսն, և ըռէս Աղուպշէն, Կիրակոսն, և
301 բ Փափոսենց Յոհանէսն։ || Սոցա և մեր ամենեցուն կամաւքս և աւգնա-
կանութեամբս, և տըրաւք և ողորմութեամբ քրիստոնէից, և յորդոր-
մամբ սուրբ և աստուածաբան վարդապետացն Յակոբայ և Յովաննէս
Գուտըլկեցոյ՝ շինեցաւ ի հիմանց սուրբ Վարդան զաւրավարի գում-
բէթաձև և երկնանման տաճարն՝ ի հէրպետութեան վանիցն Թումայ
աբեղային, և ի ղանութեան Ղարա-Յուսուֆին, յամիրապետութեան
Ոստան քաղաքի՝ Ամիր-էզդընին և որդոյն իւրոյ Մէլիք-Մանամադին։
Կըտըրվաւ և նոյն Թումայ վանից հաւր ձեռօքն Նաջբապընի վէցքու
հողն արտ, ամիրաց մըլքաթըղթովն և նըշանովն՝ սուրբ Վարդանայ
մուլք գըրվաւ և* էգին, և Կաթողիկոսենց արտերն, և Պէշգէնի դրախտն՝
սուրբ Վարգանայ վանիցն մուլք, շինեցաւ և ձիթահանքն սուրբ
Վարդանայ, ի Գաւաշ գեաւղս։

Այսքան բարութիւնքս և առաւել քան զսոյն, կամօք և աւգնա-
297 ա կանութեամբ Գաւաշից աստուածասէր տանուտերացն և || ** պատուա-
կան քահանայիցն, և աշխատութեամբ վանից սըբակրաւն աբեղայիցն,

* Մի բառի տեղ բաց է թողնված։

** Հիշատակարանի վերջին թերթը, սխալ կազմված լինելով, այժմ ձեռագրի 297-րդ
թերթն է կազմում։

և տըրաւք և ողորմութեամբ ամենայն քրիստոնէից յաւելցաւ սուրբ Վարդանա։ Ցամիրապետութեան երկրիս Մէլիք-Մահմադին, և հաւրն իւրոյ և մօրն, և յառաջնորդութեան վանիցն Թումայ աբեղային, որոց ամենցուն առհասարակ՝ կանդնողացն, և կամեցողացն, և աշխատողացն, և ողորմութիւն տըւողացն, և յորդորող վարդապետացն՝ տացէ Քրիստոս վարձս բարի զանսպառ ողորմութիւնն իւր և զերկնից արքայութիւնն, ամէն։

Իսկ գրծագրեցաւ սուրբ աւետարանս ի թագաւորութեան ամիրզա Ջհանշային, և ի կողմնապետութեան մերոյ աշխարհիս Պըլին-Ասլան պարոնին, ի խընդրոյ երկուց հարազատ եղբարցն աստուածասիրաց Մէրուն աբեղային՝ սուրբ Վարդանայ հէրպետին, և եղբաւրն իւրոյ Թումային։ Գրծագրեցաւ և յիշատակարանս այս ձեռամբ Մինասենց Թումայի անիմաստ և տխմար գրչի։

297 բ Վասն որոյ աղաչեմ զհանդիպողքդ սմա՝ զպատուական քահանայքդ, որք սպասաւորք էք սուրբ Փրրկչիս և վայելողք աւետարանիս, և զաստուածասէր տանուտէրքդ Գաւաշ գեղիս, որ յամէն տարի երկուաւր ընթեռնուք զյիշատակարան սուրբ աւետարանիս՝ մի անգամ աստուածայայտնութեան տաւնին և մի անգամ աւագ զատկին, զի լըսօղքն ի բարին յորդորեսցին և ուղիղ մտաւք և լի բերանով աստուած-ողորմի ասասցեն ստացողի սորին Պուզիկ Թումային, և ծնօղաց նորին, և եղբաւրն, և կենակցին իւրոյ, և զաւակացն՝ ի վերոյ յիշեցելոցն։ Եւ մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսա ի Գաւաշից սուրբ եկեղեցեացն՝ գողանալով կամ ծախելով կամ գրաւելով։ Եւով ոք յանդըգնի և հանէ և կամ ի վերայ վանից արտորայիցն և անդաստանացն չար յիշատակ և բունիաթ գընէ՝ ընդ Կայէնի և ընդ Յուդայի և ընդ խաչահանուացն պատժի ի Քրիստոսէ, ամէն։

Յիշեցէք ի Քրիստոս և զՆասրադին սարկաւագն, որ աւգնական և ձեռնտու եղև մեզ կոկելով զնիւթ սորա, զոր տէր աստուած պահեսցէ անփորձ յերկրի, և [արա]սցէ զաւարտ նորա ի բարի, և [տա]ցէ նմա շնորհ և ողորմեսցի նմա, ամէն, ամէն։

Բ

303 բ Արդ, աղաչեմ զձեզ յիշեցէք յաղաւթս ձեր զբարեսէր և գհաւատարիմ տանուտէրն զպարոն Մուղբիլն, որ զսուրբ աւետարանս գերի գնեց յիշատակ իւրն և ծնաւղացն՝ հաւրն Դալարին, և մաւրն Շուշանին, և զաւակացն Ջանազիզին և Դարմանին, ամէն։

... Դարձեալ, աղաչեմ զձեզ յիշեցէք յաղօթս ձեր զբարիսէր տանուտրէք Գաւաշից՝ զպարոն Մուղբիլն, և զԱզբէկն, զաւագերէց զտէր Յովանէս, և զԳուլազիզն, զՀայրապետն, զՄլքամն, զտէր Վարդան, Գաւաշեցն Միրիջան, Մարտիրոսն, Տլօշենց Միրիջան, Քարիմշենց Մկրտիչն, զՖառուխն, զԿակոսն, զԱխշիբէկն, և զԱստուածատուրն, զԳուլազիզն, Մուսեխենց զքարզարկ Յովանէսն, յիշեցէք և լի բերանով աստուած-ողորմի ասացէք սոցա, ամէն...։*

* Այս հիշատակարանը հնագրական տվյալներով գրված պետք է լինի ԺԵ—ԺԶ դարերում։

## 638

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 5931

Կազմել տվող՝ Թովմա Մեծոփեցի

120 ա Այլ և ես մեղաւորս ի մանկունս եկեղեցւոյ պիտակ անուն վարդապետս Թովմա և հարազատս իմ Մկրտիչ վարդապետ, յերեսս անկեալ պաղատիմ քրիստոսընկալ ուսումնասէր եղբարցդ, որք հանդիպիք իմաստութեան գրոյս՝ լուծմանցս Պորփիւրի և Պարապմանցս սրբոյն Կիւրղի ախոյանի, աշխատասիրութեամբ մեկնեալ հոգևոր հաւր մեր՝ վարժապետին Գրիգորի Տաթեւացւոյ, յիշեսջիք և զմեզ ընդ առաջին աշխատողացն և զծնաւղսն մեր, ասելով՝ Քրիստոս աստուած, թող զյանցանս նոցա. և Քրիստոս աստուած զձեր յանցանսն թողցէ աստ և ի հանդերձեալն։ Զի ՊԼԲ. (1383) թվականին գրեալ էր։ Եւ ի ՊՂԳ. (1444) թվականիս մեք նոր ետուք կապել հոգևոր որդւոյ մեր Հէրապետ կրաւնաւորի և գրոց աշակերտի։ Քրիստոս աստուած զսա գրէ ի գիրն կենդանի, հանդերձ ծնօղօք, և ամենայն արեան մերձաւորաւք, և զամենայն սրբասէր ուսումնական[աւք], ամէն։

Եւ ես ԿԶ. (66) տարոյ եմ, և եղբայրս իմ ՀԲ. (72)։ Եւ այս գիր ի ձեռն մարդոյ չէ եկեալ վասն ծառայութեան* ուսումնասիրաց։

## 639

### ՃԱՇՈՑ

Ալիշան, Հայկաբան

Գրիչ՝ Թումա
վայր՝ Արճէշ—Մեծոփայ վանք

Ցամի ութհարիւրերորդի եըսուներորդի երրորդի ի թուականութեան Հայոց տոհմիս տումարի (1444), և ի հայրապետութեան տեառն Գրիգորի Վաղարշապատու էջմիածնի, և ի թագաւորութեան Ջհանշաճին, որ տիրեաց երկու թախտի՝ Հայոց և Ասորոց և արար խաղաղութիւն ոչ սակաւ, բայց հարկապահանջութիւնն բուռն և ծանր էր ի վերայ քահանայիցս...։ Ձեռամբ... Յովանէս քահանայի և Թումա անարժան կրօնաւորի, ... յիշատակ... ծնողացն Ղազար մահդասուն և Ամրար-խաթունին, և պապուն իմոյ Սարգսին, և Ծով-խաթունին, և զաւակաց նոցին՝ Աստուածատրուն և Տիրատրուն, և հօրքըւեր իմոյ Մարթային, և քեռոյն իմոյ Խաչատուր[ին], Կարապետին, և հոգևոր որդոյն իմոյ Մինաս քահանային | | |

---

* «Ծառայութեան» բառի ընթերցումը երկբայական է, կարող է լինել նաև «ծուլութեան» և այլն։

*Այլ և այս գիտելի է, քանզի ունի աստուածաշունչ գիրս այս զբոլոր մասունս տօնից տէրունականաց, զոր սուրբ հարքն հաստատեցին...։*

*Արդ, գրեցաւ աստուածաշունչ կտակս ի յերկիրս* Քաջբերունեաց, *ի քաղաքն* Արճէշ, *և կէսն՝ ի սուրբ ուխտս* Մեծոփայ, *առ ոտս տիրամաւր սուրբ Աստուածածնի տաճարիս, և յառաջնորդութեան սրբասէր և հեզահոգի արհիեպիսկոպոսիս տէր* Ներսէսի *և հոգևոր որդւոյ իւրոյ* Բարսեղ *կրօնաւորի...։*

## 640

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երուսաղէմ 2583*

*Ծաղկող՝* Զաքարա
*վայր՝* Վարագ

*Նկարիչն է* Զաքարա *վարդապետ, ստացող* Մաթէոս *վարդապետ՝ որդի* Սարգսի *և* Շամշայ-խաթունի, *պապն ու տատը* Յովանէս *և* Մարթայ, *քոյրերն են* Շաքար, Էվատ-Մէլիք, Գոհար, *եղբայրն է* Խդըրշահ, *գրեալ ի թուին ՊՂԳ. (1444), ի մենաստանիս* Վարագայ, *ի յառաջնորդութեան տէր* Յովանեսի, *և ի հայրապետութեան տեառն* Գրիգորի, *որ յետի ժամանակիս կաթողիկոս նստաւ ի սուրբ* Էջմիածին, *և կաթողիկոսին* Աղթամարայ *տէր* Զաքարիայի, *և իշխանութեան* Ջհանշա *միրզի, որ աւերեաց և գերեաց* զՎրացատւն:

*Աստուած գնա կործանէ, որ առաւել հարկապահանջութիւն խնդրէր ի քրիստոնէից։**

## 641

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 2671*

*Գրիչ՝* Վարդան
*վայր՝* Վան քաղաք

*...Արդ, կատարեցաւ սուրբ աւետարանս և բերանս Քրիստոսի և քարոզս Յիսուսի տեառն աստուծոյ մերոյ ի քաղաքս, որ կոչի* Վան, *ընդ հովանեաւ սուրբ առաքելոցն Պետրոսի և Պօղոսի և սուրբ Վար-*
298 – *դանայ քաջ* || *զօրավարին, ի թվաբերութեանս Հայոց ՊՂԳ. (1444), ի հայրապետութեան տեառն* Գրիգորի, *և մերոյ աթոռակալի և առաջնորդի սուրբ ուխտիս* Վարագայ *տէր* Յովանէսի, *և աթոռակալին երկրին* Քաջբերունեաց *տիեզերալոյս և քաջ հռետորին* Թումա *րաբունապետին, ձեռամբ անարժան և սուտանուն երիցու* Վարդան *անարհեստ գրչի։ Արդ, աղաչեմ զմանկունսդ սուրբ եկեղեցոյ, որք հանդիպիք սմա՝ յիշեցէք ի Քրիստոս և ի սուրբ յաղօթս ձեր* զՄկրտիչ *սրբասէր կրօնաւորն, և զծնողքն իւր* զԽնդուն *և* զԽութլուն, *և զեղբայրքն* զՅովանէսն *և* զԿարապետն՝ *զհանգուցեալքն ի Քրիստոս, և զքոյրն* զՓաշա-

---

* *Միայն վերջին նախադասությունն է բնագրին հարազատ։ Սկզբի ամբողջ մասը վերապատմում է նկարագրող Մ. Տեր-Մովսեսյանը։*

Մէլիք, և դեղբօրորդիքն զԽնդուն, և զզաւակսն՝ զՄխիթարն և զԿարա-
պետն, զԽէրապետն, և զզաւակսն Նորին՝ զԱմիր-Մէլէքն և զՅովանէսն,
298 բ և զ՞օրեղբայրն զԽոցադէղն, և զկենակիցն || զԼի-Տիկինն, և զզաւակսն՝
զպարոն Մկրտիչն և զՋմրութն, և զքւերորդին զԱռաքելն, և զզաւակսն
պարոն Մկրտչին՝ զպարոն Մեհերն և զՄուղդասին, և զքւերորդին՝
զՍտեփանոսն... և զիս զանարժան գծողս, և զծնողսն իմ զՅովանես
քահանայ և զՋմրութ, և զեղբայրքն իմ զԿարապետ քահանայն՝ զու-
սուցիչն իմ, և զՄկրտիչ, և զՄելքէսէթ, և զհոգևոր մայրն իմ զԱրդուն-
Մէլէք, և զերախտաւորքն մեր՝ զԱրդլմսեհն, զՅաուխշէն, և զՊապուհէք
դարբինն, և զԱւետիսն, և զիւր ծնօղքն, և զկոկող Թղթին յիշեցէք և
լի բերանով աստուած-ողորմի ասացէք ի ժամ սոսկալի՝ ի սուրբ
299 ա պատարագին, և աստուած չ[յ]իշօղքդ և զյիշեցեալքս արժանի արաս || ցէ
արքայութեան իւրում, ամէն։

Դարձեալ, յերես անկեալ աղաչեմ զձեզ անմեղադիր լերուք սխա-
լանաց և խոշորութեան գրիս, զի միտքս մեղօք մոլորեալ է և յիմ
չար գործքն տարեկուսեալ, աղաչեմ չմեղադրել։

Բ

299 ա Այլ և աղաչեմ ի սուրբ յաղօթս ձեր զԳրիգոր սոսկանուն քահա-
նայ՝ ծաղկող և կազմող սուրբ աւետարանիս, և զծնօղքն նորա և զեղ-
բարքն [յիշեցէք]....

642

ՑԱՑՍՄԱԻՈԻՐՔ

Երևան 3806

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Աղթամար

701 ա ...Արդ, ես՝ Ստեփանոս քահանայ, յոյժ փափաքանօք եստու գրել
զՑայսմաւուրքս ի հալալ և յարդար ընչից իմոց, և ետու զսա ընծայ և
նւէր սուրբ Ստեփանոսի Նախավկային՝ ի մայրաքաղաքս յՈստան,
որպէս զի հրճւեսցին սովաւ մանկունք սուրբ եկեղեցոյ, և յիշեսցեն
յերկնագնաց յաղօթս իւրեանց զստացող գրոցս զՍտեփանոս քահանայ,
և զծնօղսն իւր՝ զԹումայ և զՍուրաթ, և զկենակիցն իւր զՆաւառուզ-Խա-
թուն, և զնորին ծնօղսն զԹումայ քահանայ և զՇամշայ-Խաթուն, և
զմիւս մայրն զՇարմէլիք, և զզաւակսն նոցա զԱտոմ քահանայ և զԹու-
մայ դպիր, որ տարաժամ մահւամբ փոխեցաւ ի յաշխարհէս, և զայլ
ազգատոհմսն, և լի բերանով և ուղիղ սրտիւ աստուած-ողորմի ասա-
ցէք և աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։

Ես՝ Ստեփանոս քահանայ տըւի զՑայսմաւուրքս սուրբ Ստեփա-
նոսի Նախավկային, և մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսա ի դրանէ
սուրբ Ստեփանոսին ծախելով, կամ գրաւելով, կամ այլ ինչ աղագաւ,
կամ հակառակ կենայ կարդալոյն, ոչ ի մերոց և ոչ յօտարաց, և թէ

ոք յանդգնի և հեռացուցանէ կամ հակառակէ՝ դատապարտեսցի յաս-
տուծոյ և զանէծքն զաւձին և զԿայենին ժառանգեսցէ և զմասն զՑու-
դային և զխաչահանուացն առցէ՝ հանդերձ ծնօղօք իւրեանց, ամէն։
701 բ Եւ արդ ես... ‖ բազմամեղ և անարժան սոսկանուն քահանայ
Գրիգոր, որ զձև ունիմ քահանայի և ի գործոյն Թափուր և ունայն
գտանիմ, վա՜յ ինձ յահագին աւուր դատաստանին, տեսի զսէր և
զփափագ սորա, զոր ունէր առ հոգևորսն, և իմով իսկ տկարութեամբս
յանձն առի և ամենակարող զօրութեամբն աստուծոյ կատարեցի
զսուրբ գիրքս զայս մեղսամած մատամբս իմով, բազում և մեծ աշ-
խատութեամբ հասուցի զսա յաւատումն յաստուածարնակ կղզիս Աղ-
թամար, ընդ հովանեաւ սուրբ Խաչիս և սուրբ Աստուածածնիս, ի
հայրապետութեան տեառն Զաքարիայի, և ի Թուականիս Հայոց ՊՂԳ.
(1444), ի դառն և ի վշտալից ժամանակիս, յորում կամք ընդ հար-
կի և ի ծառայութեան ազգին նետողաց։ Վասն որոյ, բարեխօսու-
թեամբ սուրբ և փառաւորեալ աստուածածնին Մարիամու և աղաչանօք
ամենայն ընտրելոց սրբոց, Քրիստոս աստուած, որ տէրն է փառաց և
տըւող ողորմութեանց, տացէ զիւր առատ ողորմութիւնն ստացողի
սորա Ստեփանոս քահանային, և Նաւրուզ-խաթունին, և ծնօղաց նոցա,
և եղբարցն, և զաւակացն, և ամենայն ազգականաց նոցա, և խորա-
նակից և դասակից արասցէ սրբոց վկայիցն և զուրախարար ձայնն
արձակեսցէ առ նոսա, եթէ՝ Եկայք բարի և հաւատարիմ ծառայք,
մտէք յուրախութիւն տեառն ձերոյ, ամէն։
Դարձեալ, մեղապարտ և բազմավէր ոգիս Գրիգոր սուտանուն
քահանայ՝ գծագրող սորա... նաև զծնօղքն մեր զԽաչիկ և զԱզիզ-Մէլիք,
և զեղբարքն մեր՝ զհոչակաւոր քարտուղարն զԹումայ կրաւնաւոր, որ
ուսոյց մեզ զարուեստ գրչութեանս, և զՆաւասարդ՝ զհանգուցեալսն
702 ա առ Քրիստոս, և ‖ զքոյրն մեր զՀալիմ-խաթուն, և զզաւակսն մեր զԹու-
մայ և զՆաւասարդ, զԽումար-խաթուն և զԱզիզ-Մէլիք, և զմայր սոցա՝
զՔրման-խաթուն, որ յայսմ ամի փոխեցաւ ի կենցաղոյս, և զծնօղսն
նորա, և զայլ ամենայն արեան մերձաւորքն մեր՝ զկենդանիսն և
զննջեցեալսն, և զայնոսիկ, որք երախտաւորք եղեն մեզ ի պէտս
մարմնաւոր պիտոյից, և արժանի արասցէ լսել զկենեղուտ բարբառն,
որ ասէ՝ Եկայք աւրհնեալք հօր իմոյ, ժառանգեցէք պատրաստեալ
ձեզ զարքայութիւնն երկնից ի սկզբանէ աշխարհի, ընդ սուրբս և սի-
րելիս անուան իւրոյ, ամէն։ Եւ ինքն՝ Քրիստոս աստուած, որ տէրն
է փառաց և տըւող ողորմութեանց՝ տացէ զխաղաղութիւն և զողոր-
մութիւն իւր ամենայն աշխարհի, եկեղեցեաց՝ զանշարժ զհաստատու-
թիւն, հայրապետաց ընդ ամենայն տեղիս՝ ուղղափառ վերադիտողու-
թիւն, վարդապետաց՝ արիութիւն, կրօնաւորաց՝ վարս առաքինու-
թեան, քահանայից՝ սրբութիւն, սարկաւագաց՝ պարկեշտութիւն, Թա-
գաւորաց հաւատացելոց՝ յաղթութիւն, իշխանաց՝ հանդարտութիւն,
տանց՝ շինութիւն, տղայոց՝ պահպանութիւն, աւդոց՝ քաղ[ց]րութիւն,
անձրևաց՝ առատութիւն ըստ պատշաճի, անասնոց՝ անսխալ ծննդակա-
նութիւն, մեղաւորաց՝ դարձ ապաշխարութեան, համօրէն հաւատացեալ

*ննջեցելոց՝ մեղաց թողութիւն, հանգիստ և ողորմութիւն. և յամե-
նայնի գոհացողական փառատրութիւն մատուցանել ամենասուրբ եր-
րորդութեանն և մի աստուածութեանն, այժմ և հանապազ յանսպառ
յաւիտենին յաւիտեանս, ամէն։**

## 643

## ՄԱՇՏՈՑ

**Երևան 4846**

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Աղթամար

260 բ *... Զոր տեսեալ զսորայս մեծութիւն աստուածասէր և հաւատա-
րիմ ծերն* Քարիմ, *և ստացաւ զսա յարդար և ի քրտնաջան վաստա-
կոց իւրոց, յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնաւղաց իւրոց* Վարդանայ *և*
Զմրութի, *և եղբարց իւրոց* Յովանիսի *և* Վարդկայ, *և այլ ամենայն*
261 ա *ազգատոհմից իւրոց՝ կենդանե || աց և հանգուցելոց, և ետ զսա ընծայ
և նուէր յանուանի գեօղն ի* Գաւաշ, *ի դուռն ամենասուրբ Փրկչին և
սուրբ Կիրակոսին, որով հրճուին սովաւ մանկունք սուրբ եկեղեցոյ և
հրաւիրեն զազգս մարդկան յորդէգրութիւն հաւրն երկնաւորի։*

*Եւ արդ, մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսա ի դրանէ ամենա-
սուրբ Փրկչին ծախելով, կամ գրաւելով, կամ այլ ինչ աղագաւ, ոչ ի
մերոց և ոչ յաւտարաց, և եթէ ոք յանդգնի և հեռացուցանէ՝ զանէծքն
զաւձին առցէ և զպատիժն զԿայենին ժառանգեսցէ, մասնակից Յու-
դայի և այլ խաչահանուացն եղիցի, ամէն։*

*Եւ արդ, ես՝ ամենամեղս և անարժանս ի մէջ կարգաւորաց՝*
Գրիգոր *անպիտան և մեղուցեալ սոսկանուն քահանայ, ըստ իմում
տկարութեանս յանձն առի և ամենակարող զօրութեամբն Քրիստոսի
կատարեցի մեղսամած մասամբ իմով յաստուածապահ կղզիս* Աղթա-
մար, *ընդ հովանեաւ սուրբ Խաչիս և սուրբ Գեզարդեանս, ի հայրա-*
261 բ *պե || տութեան տեառն* Զաքարիայի, *և ի թվականիս Հայոց ՊՂԳ. (1444),
ի դառն և նեղ ժամանակիս, և կամք ի նեղութիւն ի ձեռն անաւրի-
նաց։*

*Եւ արդ, աղաչեմ զդասս լուսերամիցդ, որք հանդիպիք սմա տե-
սութեամբ, կամ կարդալով, կամ աւրինակելով, յիշեցէք ի սուրբ և*

---

** «Ցիշատակարան գծագրողիս» խորագրի տակ, այս հիշատակարանի շարունակությամբ, գրիչը բերել է մի ընդարձակ (ավելի քան 100 տող) չափածո գրվածք, որտեղ պախարակում է ինքն իրեն։ Նա գրում է.*

*«Ես յաշխարհի մեղօք կացի*
*Եւ ծուլութեամբ զկեանս անցուցի,*
*Զմարմնոյ կարիս կատարեցի*
*Զհոգիս ի միտս ես ոչ ածի...» և այլն։*

*Այս գրվածքում կենսագրական ու պատմական ոչինչ չկա, ուստի այն հետաքրքրություն կարող է ներկայացնել սոսկ որպես Գրիգոր Աղթամարցի գրչի գեղարվեստական ստեղծագործություն։*

յար[ժան]աւոր յաղօթս ձեր զստացող սուրբ գրոցս զՔարիմ, և զծր-նաւղքն իւր զՎարդան և զՋմրութ, և զե[ղբա]րքն նորա զՅովանէս, և զՎարդիկ, և զ[կե]նակիցն իւր զԱր | | |, և զզաւակսն նոցին՝ զԱւետիս և զՀայրապետ, և զքուերսն իւր զԴովլաթ, զՀռոփսեմ, զՇնոհւոր և զՄարթայ, և զքուերորդիսն զԿիրակոս և զՄարտիրոս, և զկենակիցն զԱմենաաիկին, և զզաւակն զխոցադեղ, և զայլ ամենայն արեան մեձաւորսն իւր յիշեցէք և սերտ սրտիւ և լի բերանով զաստ-ւած-ողորմի ասացէք, զի և աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։

Եւ ընդ արժանաւորացն զանարժան գծող զԳրիգոր մաղթեմ յի-
262ա շել ի սուրբ և յըն || թունակ յաղօթս ձեր, նաև զծնօղս մեր զխաչիկ և զԱզիզ-Մէլիք, և զեղբարսն մեր զԹումայ կրաւնաւոր և զՆաւասարդ, և կենակիցն մեր, որ յայսմ ամի փոխեցաւ առ Քրիստոս, և զա-ւակսն մեր, և զամենայն ազգատոհմքն, և զերախտաւորսն, և զայնոսիկ, որք յանձնեցին զինքեան ի մեզ յիշել յաղաւթս, աղաչեմ զամենեսեանդ յիշել և ուղիղ սրտիւ աստուած-ողորմի ասել ստացո-ղին և գծողիս և մերոցն ամենայնի...։

## 644

## ՃԱՇՈՑ

Փիրղ. Նոտ. 134—135, Վարագ

Գրիչ՝ Դանիէլ
Վայր՝ Աղթամար

ա

...Եւ արդ, ես՝ անպտուղս ի բարեաց... Դանիէլ սուտանուն քահա-նայ տեսի զսէր և զփափագ [Առաքել քահանայի], կատարեցի զսուրբ գիրքս զայս։ Բազում և մեծ աշխատանօք հասուցի զսա յաւարտումն յաստուածաբնակ կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ ամենայաղթ սուրբ Խաչիս և սուրբ Նշանիս և սուրբ Աստուածածնիս, ի Թուականիս Հա-յոց ՊՂԳ. (1444), ի հայրապետութեան տեառն Զաքարիայի։

բ

Զստացող սուրբ գրոցս զԱռաքել քահանայն և զծնողքն իւր զՍտեփանոս քահանայն և զԱրղուն-Մելքն, և զկենակիցն զՆազխաթուն, և զորդիքն զԹումայ-Պէկն, զՍտեփաննոսն և զՅովհաննէսն... յիշեցէք ի Քրիստոս։ Ընդ նոսին և զմեղուցեալ գրիչս զԴանիէլ սուտանուն քա-հանայ, և զծնօղսն իմ զԿարապետ քահանայ և զԴուռն-Մելիք, և զեղ-բայրն իմ զԹումայ կրօնաւոր, և զորդիքն մեր զՍտեփաննոս կրօնա-ւոր և զՅովհաննէս սարկաւագն, որ աշխատեցաւ ի կոկել և ի կցել թղթիս։

## 645

## ԳԱՆՁԱՐԱՆ

*Երևան 8058*

*Գրիչ՝* Կարապետ
*վայր՝* Ոստան մայրաքաղաք

259 ա *... Վասն որոյ փափագաւղ եղեալ այսմ մարգարտաշար տառիս աստուածասէր տանուտէրն* Ատոմ *և իւր կենակիցն* Խովլաթ, *և ստացան զսա բարի յիշատակ և ետուն զսա ի դուռն ուրբ և գերամաքուր Աստուածածնին և սուրբ Գէորգեա զաւրավարին, զի մանկունք սուրբ եկեղեցեացս [զու]արճացին սովաւ՝ երգելով և եղանակելով...։**

258 բ *... Եւ արդ, ես* Կարապետ *գծողս, բազում աշխատութեամբ և կամաւք յանձն առի և ըստ կարի իմում յաւարտ հասուցի զսա՝ շնորհաւք և ողորմութեամբ աստուծոյ։*

*Եւ արդ, գրեցաւ սա ի մայրաքաղաքս* Ոստան, *ի դուռն Քարի սուրբ Աստուածածնին, որ է ծովահայեաց, ընդ հովան[ե]աւ սորին, և սուրբ Ստեփանոսի Նախավկային, և սրբոյն Սարգսի զաւրավարին, որ սակաւ հեռի։*

*Եւ արդ, գրեցաւ սա ի Թուականիս Հայոց ՊՂԳ. (1444), ի հայրապետութեան տեառն* Զաքարիայի, *զոր տէր աստուած ընդ երկայն աւուրս արասցէ և պահեսցէ զնա ի չարէ, ամէն։*

*Արդ, և ես* Կարապետ *գծայ[գր]ող սորին, երես ի գետին դնելով ձեզ, և աղաչեմ [զդաս]ս կրօնաւորացդ, և զամենեսեան առհասա[րակ]՝ զմեծ և զփոքր, զի և զիս յիշման արժանի առնէք** զունայնացեալս ի բարեաց գործոց... տառապեալ ոգի* Կարապետ *գրիչս, և զմեծ պապն իմ* Յովանէս *քահանայ, և զծնաւղսն իմ՝ զհայրն իմ* զՍտեփանոս, *և զմայրն իմ* զՓաշայ, *և զքոյրն իմ* զԱրմանի, *և զեղբայրն իմ* զՅովանէս *քահանայ, որ հանգեաւ ի Քրիստոս, և զայլ ամենայն արեան մերձաւորսն իմ՝ զկենդանիս և հանգուցեալսն ի Քրիստոս...։*

*Գարձեալ, յիշեցէք ի Քրիստոս զսպասաւոր և զերախտաւորք սուրբ ուխտիս, զիմաստուն և զհանճարեղ և զմեծահամբաւ րաբունին* զՅովանէս, զՍտեփանոս *հէրպետ, և* զԱստուածատուր *վարդպետն, և* զԱբրահամ *սրբասնեալ կրօնաւոր, որ առաջնորդ եղև գրոցս, որ և յայսմ ամի փոխեցաւ ի Քրիստոս, և* զՄկրտիչ *մահդասին, որ մականուն* Կոշկըրենց *կոչի, և* զՅոհանէս *կրօնաւորն, և զայլ ամենայն հաւատացեալ ննջեցեալք, որ ընդ հովանեաւ սուրբ եկեղեղեցեացս*

---

** Հաջորդ տողերի աջ եզրերը մաշված են և լրիվ չեն վերծանվում։ Կարդացվում են ստացող* Ատոմի *մերձավորներից և ազգականներից մի քանիսի անունները՝ մայրն է* Շնահւտր, *քույրերն են* Շաhmr *և* Գոհար. *կարդացվում են՝ նաև* Ակոբ, Կարապեs, Մխիթար *անունները, բայց նրանց ազգակցական կապը ստացողի հետ չի պարզվում։*

*** Շարունակությունը, որ այժմ ձեռագրից բացակայում է, մեջ ենք բերում Հ. Աճառյանի «Ցուցակ հայերեն ձեռագրաց Նոր-Բայազետի» աշխատությունից (Վիեննա, 1924, № 30, էջ 40)։*

հանգուցեալ են և եղեալ ի սուրբ ուխտս Պըտըլկի վանք կոչեցեալ, թէ ի վարդապետաց են, թէ ի կրօնաւորաց, թէ ի քահանայից, թէ ի սարկաւագաց, թէ ի մենակեցաց, թէ յաշխարհականաց, թէ ի յարանց են, թէ ի կանանց, թէ ի ծերոց են, թէ ի տղայոց, դասակից և պսակակից արասցէ տէր աստուած սրբոց առաքելոց, սուրբ վարդապետաց և սրբոց մարտիրոսաց....։

Դարձեալ, յիշման արժանի արարէք զայժմու ըզսպասաւորք և զգործաւորք սուրբ ուխտիս, որ կան ծաղկեալ պէս-պէս առաքինութեամբ, և սուրբ վարիւք աշխատին ի սուրբ եկեղեցեաց դուռս։ Նախ և առաջին՝ զանբիծն հոգով և զանարատն մարմնով զՅովանէս վարդապետն, և զպատուական և զընտրեալ կրօնաւորն զՄարտիրոս, և զՍտեփանոս կրօնաւոր, որ պատճառ եղև սուրբ տաճիս, և զսրբասնեալ կրօնաւորն զԱստուածատուր, որ յայժմ ամի ընկալաւ զառաջնորդութիւն սուրբ ուխտիս, զոր տէր աստուած հովանի լիցի նմա և յաջողէ զգործս նորա ի բարի, զընտրեալքն և զգովեալքն ի մարգկանէ՝ սրբասնունդ եպիսկոպոսքն զտէր Սիոն, և զտէր Յոհանէս,, և զՅոհանէս և զՊետրոս կրօնաւորքն, զծերացեալն մարմնով և զմանկացեալքն հոգով, և զհեզահոգի կրօնաւորն զՅովանէս փակակալն, և զառաքինի կրօնաւորն զԱռաքել, և զԹադէոս, և զԹումա անբից | | | մահգասի, և զՊարոնլուս մահղասին | | | սուրբ եկեղեցեացս, և զՂազար | | | զգործաւոր և զերախտաւոր | | |

646

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 5784**

* Նորոգող և կազմող՝ Յովանէս
վայր՝ Տըփխի՞ս

357 ա ... Ըստ յաճախման աստուածային բանին և զհոգւոյն սրբոյ, սրով լուսաւորէ զհոգիս աստուածասիրաց անձանց և տպաւորէ ի նոսա զլոյս աստուածագիտութեան իւրոյ և մերձաւորս առնէ աստուածային երանութեանն, որ և զհուր սիրոյ իւրոյ արկեալ ի սիրտ աստուածասէր ամենամաքուր և ամենաբարի, հեզ և ընտրեալ կրաւնաւորի և անյաղթ փիլիսոփայի տէր Սարգսի՝ սպասաւորի և առաջնորդի սուրբ և հրաշափառ կաթողիկէի մայրաքաղաքին Տըփխե[ա]ց, որ և ցանկացող եղեալ այսմ աստուածային տաճիս և կենսաբեր սուրբ աւետարանիս, և ստացաւ զսա ի յարդար վաստակոց իւրոց, եւ
357 բ վերըստին ‖ նորոգել ոսկէնկար և բազմերանգ գունովք զտնաւրէնութիւնն և զայլ սքանչելիսն Քրիստոսի աստուծոյ մերոյ, ի զուարճութիւն և ի պայծառութիւն նորոյ Սիոնի։ Զի յետ ստանալոյ բազում տաւից և բազում արդեանց, զոր ունէր յեկեղեցի աստուծոյ՝ յաւել և զսա ի գանձս աստուածային, ի յիշատակ իւր և ծնողաց իւրոց՝ հաւր իւրոյ Սողոմոնի և մաւր իւրոյ Ուլու-Խաթունի, և եղբաւր իւրոյ

Ամիր-Ազըզի, և հաւրեղբաւր իւրոյ Դաւիթ աբեղայի, և մաւրքուերորդւոյ իւրոյ և ձեռնասնունդ աշակերտի Վարդան քահանայի, և ամենայն արեան մերձաւորաց իւրոց՝ կենդանեաց և ննջեցելոց։

Արդ, որք աւգտիք ի սմանէ և լուսաւորիք յաստուածային բանիցս՝ յիշեսջիք սրտի մտաւք առաջի Քրիստոսի զնախագրեալ ստացաւղ զտէր Սարգիս աբեղայ, հանդերձ աստուածասէր զարմիւքն իւրովք, ամէն։

Ընդ նոսին և զձեռնասնունդ աշակերտն իւր՝ զորդի պարոն Թումանին՝ զՂուկաս սարկաւագ, և զհոգևոր եղբարսն իւր զՍտեփաննոս քահանայ, և զՇմաւոն քահանայ, և զԿիրակոս քահանայ, և զԱստուածատուր քահանայ, և զխաչատուր քահանայ...։

Նորոգեցաւ և կազմեցաւ սուրբ աւետարանս ի Թվականիս ՊՂԳ. (1444)։ Ընդ նոսին, որք վերոյ յիշեցան, յիշեսջիք և զիս՝ զՅովանէս մեղապարտ գրիչ, որ զսակաւ յիշատակարանս գրեցի։*

## 647

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 1771**

Գրիչ՝ Աւետիք

վայր՝ ի յամուր դղեակս յԱրղնի

309 ա ...Ըստ նմին աւրինակի և այսմ աստուածաւանդ աւետարանիս
տենչացեալ եղև մաքրամիտ, պատուական և հեզահոգի աստուածասէր
այրս այս Մելքիսեթ, և կողակիցն իւր Մէհրինար՝ Թողեալ զբարս ման-
կութեան և փափաքեալ ըստ բանին, որ ասէ՝ Երանի որ ունիցի զա-
ւակ ի Սիոն և ընդանեակ յԵրուսաղէմ, և ստացան զսուրբ աւետա-
309 բ րանս յարդար և ի հալալ արդեանց իւրեանց, յիշատակ և բարեխ-
խաւս առ աստուած իւրն, և բարի ծնաւղ[աց] իւրոց՝ Փողոցին և Ջհա-
նին, Նաև Յովանէսին, Արղունին և ամենայն արեան մերձաւորաց
իւրեանց։

Եւ արդ, սկսեալ եղև սուրբ աւետարանս յԱրղնի, ի վերադիտողութեան հայկազեան սեռի երկու կաթողիկոսաց՝ տէր Գրիգորին և տէր Կիրակոսին: Զի յորժամ գրեցաւ սուրբ աւետարանս՝ չորս ամ էր, որ Լուսաւորչի աջն կորեր էր ի Սըսոյ, և էլ համբաւն ի Վաղարշապատ: Վասն որոյ ժողովեցան վարդապետք, եպիսկոպոսք, քահանայք՝ եւթնհարիւր անձն, և հաստատեցին զաթոռն յէջմիածին, և եդին

* Բուն ձեռագիրն ընդօրինակված է 1293 Թվականին, Սկևռայում։

** № 1771 ձեռագիրը ժողովածու է, ընդօրինակված 1651 Թվականին, Վարդան գրչի կողմից։ 301ա—309բ էջերում գտնվում են 4 տարբեր ձեռագրերի հիշատակարաններ, ի Թիվս որոց և սույն հիշատակարանը՝ «Զայս ալ յայլ գրքէ գտաք և գրեցաք» խորագրի տակ։ Այդ բոլոր հիշատակարաններում էլ տվյալներ կան Լուսաւորչի աջի Սսից անհետանալու և էջմիածին տարվելու մասին։

*զոՌ* Կիրակոս *անուն՝ այր առաքինի և խստակրօն ճգնաւոր՝ կաթողիկոս, և հաստատեցին զաթոռ սուրբ Լուսաւորչին։*

*Արդ, աւարտեցաւ սուրբ աւետարանս ի յամուր գղեակս յ*Արդենի, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ նշխարացս, որ աստ կան հաւաքեալ, ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս և յեպիսկոպոսութեան տէր* Մկրտիչ *արքեպիսկոպոսին, և յերեսփոխանութեան նորին՝* Յոնանէս *կրօնաւորին, ի դառն և ի նեղ ժամանակիս, ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի* Աւետիք *աբեղայի անարժանի, ի յաշխարհակալութեան* Համզայ *սուլտանին, ի թվականութեան Հայոց* ՊՂԳ. *(1444) ամին։*

*Ո՛վ, սուրբ մանկունք եկեղեցւոյ, որք հանդիպիք սուրբ աւետարանիս կարդալով, կամ աւրինակելով, կամ տեսանելով՝ յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր զվերոյգրեալսդ ի սմայ* զՄելքիսէթ։*

## 648

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

*Փարիզ 48, Մ.Տ.Մ.*

*Ծաղկող՝* Գրիգոր
*վայր՝* Խարբերդ

[*Ծծագրեցաւ*] *ի թվականութեան Հայոց ազգիս* ՊՂԳ. *(1444) ամին, և ի հայրապետութեան Կիլիկեցոց տեառն* Գրիգորի, *և ի Վաղարշապատուն տէր* Կիրակոսին, *և յաշխարհակալութեան սուլթան* Համզային, *ի քաղաքս* Խարբերդայ, *ի գղեակս, որ կոչի* Սինամուտ, *ընդ հովանեաւ սուրբ Նշանիս, որ այժմ Տղայ սուրբ Նշան կոչի, և սուրբ Վասլիս, և սուրբ Ցակորիս, և այլ սուրբ Նշանացս, որ աստ հաւաքեալ կան, ի յառաջնորդութիւն և յեպիսկոպոսութիւն տէր* Ստեփանոսին, *ձեռամբ* Մինաս *դպրի և մեղսամած* Գրիգոր *ծաղկողի։ Որ հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով՝ յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր զստացող սուրբ գրոցս՝ զսրբասնեալ քահանայն* զՏղապարոն, *և զհայրն իւր զպարոն* Թաւաքալն, *և զմայրն* զՍուլտան-Մելիք, *և զաւագ եղբայրն զխոջայ* Ամիրն՝ *զփոխեցեալն ի Քրիստոս, և զկողակիցն իւր* զՇան-Մէլիքն, *և զամուսին նորին* զՓաշայն, *և զաւակ նոցին* զՄանուկն, զԽաչայբաղշն, *և զկողակիցն իւր* զՇան-Մէլիք, *և զաւակաց նոցին* Շամսին, *և* Գուրգադնին*։ Այլ և խաւջայ* Ալէքսիանոսին, *և կենակցին* Խանզադային, *և զաւակին* Սէթին, *և քուերն* Շանփաշին, *և փեսայ* Վարդերեսին... զՏղապարոն ...*և մեծ պապուն և մեծ մաւրն* Մեծ-Խաթունին, *և* Դովլաթին, *և* Աղութ-Մէլիքին, *և* Ամիրբէկին, *և* Գրիգորին...։

* *Այս նույն հիշատակարանն ընդօրինակված է նաև № 8143 ձեռագրում (ԺԲ. դար) և Առ. Դավրիժեցու «Պատմության» մեջ (1884, էջ 823)։*

## 649

### Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*ԱՑԹ. էջ 72, Թաւրէզ, Բերդաթաղի Ս. Աստուածածին եկեղեցի*

*Գրիչ՝* Աբրահամ եպիսկոպոս Մսրի
*Վայր՝* Դավրէզ

342 բ *Ո՛վ դասք քահանայից, յորժամ ընթեռնուք զսուրբ աւետ[ար]անըս յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր զանարժան զսուտանուն եպիսկոպոս* Երուսաղէմա *զտէր* Աբրահամ Մսրցին, *որ հանդիպեցայ ի* Դավրեզ, *ի թուին Հայոց Մեծաց ՊՂԳ. (1444) յաւգոստոս է. (7)։ Զյիշողքս Քրիստոս յիշէ։*

## 650

### Ս Ա Ղ Մ Ո Ս

*«Հանդէս հայերէն ուսումնասիրութեանց», 1929, էջ 137—181**

*Ընթերցող՝* Սիմոն Վանեցի

*Այս սաղմոս կարդացի ես՝ բնիկ* Վանեցի Աբիսողոմի *որդի* Սիմոնս *որ վաթսուն ամեայ էի, թվին Հայոց ՊՂԳ. (1444)։ Ով որ կարդայ՝ գրողին և կարդացողին ողորմի տայ, ամէն։*

## 651

### ԼՈՒԾՄՈՒՆՔ ՊԱՐԱՊՄԱՆՑ ԳՐՈՑ, ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՑ

*Վիեն. 151. Տաշ. Ցուց., էջ 455*

*Գրիչ՝* Խաչատուր

133 ա– *...Գրեցաւ գիրքս, որ կոչի վերլուծութիւն Պարապմանց սրբոյն*
133 բ *Կիւրղի ասացեալ ընդդէմ երկաբնակաց, զոր եւ արարեալ է զվերլուծութիւնս զայս* Գրիգորի *քաջ հռետորի և տիեզերահռչակ վարդապետի, ի խնդրոյ* Գէորգեա *քա՟ փաղերային եւ մեծ րաբունոյն։ Եւ գրեցաւ սա ձեռամբ իմով՝ անարժան եւ սուտանուն աբեղայի* Խաչատրի, *ի թվականութեան Հայոց ԸՃՂԳ. (1444)։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա ընթերցմամբ կամ գաղափարելով՝ յիշեսջիք զյիշմանն արժանին զբարունեաց պետն՝ զշնորհալին եւ զերախտաւորն իմ եւ զամենայն բարութեանց կամեցողն՝ զվարժապետն իմ* զԱւետիք *քա՟ հռետորն, որ զօրինակն շնորհեաց։ Նաեւ զԹշուառ ոգիս՝ զեղկելի գծողս, եւ զծնօղսն իմ, եւ խընդրեսջիք զողորմութիւն...։*

---

** Անձամբ չենք տեսել, քաղել ենք Մ. Տէր-Մովսիսյանի ձեռագիր ցուցակից։*

## 652

### ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

*Ղ. Գարտաշեան, «Գահիրէի հայ. առաջնորդարան», Ա, էջ 86—87*

*Քրիստոս աստուած ողորմեա* Կիրակոս *վարդապետին եւ Թող զմեղք նորին՝ զմասս չունին և զնեբելին. Բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնի եւ կենսաբեր սուրբ Խաչին եւ Յովհաննու կարապետին եւ սրբոյն Ստեփաննոսի Նախավկային եւ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին եւ ամենայն սրբոց գնդին ողորմեսցիս* Կիրակոսին. *ամէն.*

*Թվ. ՊՂԳ. (1444).*





## 653

### ՄԱՇՏՈՑ

«Դիւան հայոց Պատմութեան», Ժ., էջ 5—12
Փիրզ. Նօտ., էջ 136—139, Ոշտունիք, սուրբ Յակոբայ վանք

Գրիչ՝ Մինասենց Թումայ
Վայր՝ Աղթամար

...Զոր տեսեալ զսորայս զհոգեոր փարթամութիւնս սրբասէր կրաւնաւրս Յովաննէս, ի գեղջէն Գաւաշից, ըստ նախնեաց Բըծոնց կոչեցեալ, և նուիրեաց զսա ընծայ սուրբ տաճարիս, որ է շինեալ գումբէթաձև և երկնանման, ի գերահռչակ ուխտս և ի հրեշտակաբնակ կրօնաստանս, որ կոչի սուրբ Յակոբ, զոր շինեալ է յառաջին թագաւորացն Հայոց, ի գլուխ երկրիս Ռշտունեաց, յարևմտից կուսէ, առաջի Կապոտկողան բերդին՝ ի պահպանութիւն աշխարհիս Հայոց...։

Ստացող սուրբ կտակիս ընծայեաց զսա սուրբ Յակոբայ գերահռչակ տաճարիս՝ յիշատակ հոգւոյ իւրոյ, և ծնողացն իւրոց Բաղտասարին և Շնոնվորին, և եղբօրն իւրոյ Թումային, որ յաւուրս ձմերայնոյ ի բքաբեր ուսի* անկեալ՝ մեռանի յերկիրն Կեցնայն։

...Եւ արդ, ես...փծուն ի գրչաց... Մինասենց Թումայ եղկելի հոգիս... ի սիրոյ և ի հարկեցուցիչ հրամանէ սրբազան անձինն և աստուածաբան վարդապետին Սիմէոնի՝ առաջնորդին և շինողին սուրբ Յակոբայ գերահռչակ ուխտին, որ յորդորեաց զՅովաննէս [կրօնաւորն] ի բարին, յաղթեցայ և ես... կատարեցի զսա յաստուածախնամ կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ գմբեթաձև երկնանման տաճարիս, և սուրբ Փրկչիս, և սուրբ Սարգիս զօրավարիս յաշխարհակալ թագաւորութեան ամիրզայ Ջհանշային, և ի կողմնապետութեան մերոյ աշխարհիս, որ տիրէ Վանայ և Ոստանայ՝ Դլիճ-Ասլան պարոնին, որք են ազգաւ թուրք՝ յոյժ հարկապահանջողք և կեղեքիչք քրիստոնէից, ի հայրապետութեան մերոյ Նահանգիս տեառն Զաքարիայի, և ի թուականութեան հայկազեան տումարիս ՊՂԴ. (1445), ի յամսեան մարեքի Թ. (9), յաւուր շաբաթու գծագրեցաւ և աւարտեցաւ սուրբ տառս այս...։

Եւ այժմ սակաւ ինչ պատմութիւնս արժանիս յիշատակի գծագրեցից յայսմ տառի՝ ես Մինասենց Թումայս՝ եղկելիս ոգի, զի զկնի մեր եկողքն գիտասցեն թէ յորո՞ց ոմանց շինեցաւ և յորո՞ւմ ժամանակի սուրբ ուխտս այս և հանդիսաւոր կրօնաստանս, որ կոչի սուրբ

* «Ուս» Փիրղալեմյանի բացատրությամբ նշանակում է «շեղջ ձյանց»։

Ցակոբ, որ ի վաղուց ժամանակաց ամայի էր լեալ և անբնակ ի մարդկանէ։

Արդ, որպէս լուաք ի պատմութեանց՝ առաջին սկիզբն շինութեանս սորա եղև յառաջին թագաւորացն Հայոց՝ ի Սենեքերիմայ և յորդոց նորա, ի ժամանակին, յորում գնաց քոյրն Մանանիրճի հետիոտս՝ ջերմեռանդ հաւատով և յորդաբուղխ արտասուօք ի Նըշէրինն, և եբեր զսուրբ Ցակոբ հայրապետի ճկոյթն մինչ ի տեղիս այս. և աստ հաճեցաւ սուրբ մատն հայրապետին Ցակոբայ բնակիլ, և ազատեցաւ յերկիրս Ռշտունեաց յանիծիցն սուրբ հայրապետին։ Վասն որոյ աշխարհաժողով արարեալ թագաւորն Հայոց շինէ զփառաւոր եկեղեցիքս՝ զսուրբ Աստուածածինն, և զսուրբ Ցակոբն, և զսուրբ Յովհաննէս, և զսուրբ Մանկունքն, և ժողովեալ բազում կրօնաւորս՝ առնէ զսա վանս միաբանակեցաց բազմաց, մինչ զի ասի աւանդութեամբ, թէ քան զերեք հարիւրն աւելի աբեղայ եղեալ է ի վանքս այս։ Եւ հաստատէ թագաւորական հրամանաւ ի բոլոր ծովուս, ընդ ամենայն իշխանութեամբ իւրով՝ գեօղս և արտորայս, այգիս և դրախտս և ծառատունկս ոխ և մուլք վանացս. և մնայ բազում ժամանակ շէն այնպիսի փարթամութեամբ՝ մարդով և մլքով։ Եւ այս առաջի շինութիւնս յառաջ էր քան զհայ թուականն։ Բայց զկնի ժամանակաց աւերեալ տեղիքս՝ լինի անմարդաբնակ, իբր զհողաբլուր մի մեծ, ոչինչ մնացեալ նշան շինութեան, բայց միայն եկեղեցիքն անշարժ մնացին։ Եւ թէ զի՞նչ եղև պատճառ աւերմանն, և քանի՛ ամ մնացաւերակ՝ ոչ գիտեմ հաստատ, բայց կարծեօք թուի թէ քան զերկու հարիւր տարի աւելի աւերակ մնաց։ Իսկ ՊԿԱ. ամի թուականութեան Հայկազեան տօմարիս (1412), ի թագաւորութեան թաղթին Ղարայ-Յուսուֆին և ի կողմնապետութեան մերոյ աշխարհիս Ամիր-Եզդին և որդւոյն իւրոյ Մելիքին, որ էր յոյժ խնամածու և բարեկամ քրիստոնէից, և ի կաթողիկոսութեան մերոյ վիճակիս տեառն Դաւթի, վարդապետ ոմն երևելի, բարեսէր և աստուածային ձիրիւքն բարգաւաճեալ, որոյ անուն Ստեփաննոս ճանաչի, մականուն Փիր, յերկրէս Ռշտունեաց, ի գեղջէն Բախվանից, աշակերտ գոլով Յոհաննու Որոտնեցւոյ՝ մականուն Կախիկ կոչեցելոյ, սորա՝ վարդապետական քարոզութեամբ շրջագայեալ ի վերայ ամենայն երկրի՝ ընդ կողմամբ աշխարհի Հոռմոց ամս բազումս, երթայ մի անգամ և երկիցս յԵրուսաղէմ, և ապա դառնայ վերստին և գայ յաշխարհս Հայոց, ի բնիկ և ի սեփհական երկիրս իւր՝ մեծաւ ընծայիւք ամենայն եկեղեցեացս, շուրջառ և սկիհ և աւետարան բերելով վանօրէից և գիւղօրէից եկեղեցեացս։ Եւ յորդորեալ զքրիստոնեայս և ինքն գլխաւոր լեալ՝ քան զտասն աւելի եկեղեցիք կրամածք և կամարօք շինել տայ յերկիր Ռշտունեաց, յամիրապետութեան Մելիքին և հօրն իւրոյ։ Եւ ապա խորհրդակից և գործակից ինքեան առեալ կրօնաւորս աստուածասէրս, որոց անուանք յորջորջեալ կոչին Մկրտիչ և Կիրակոս, Յովանէս և Յոհաննէս, Սիմէոն և Գրիգոր, և եկեալ ի մեծահռչակ և ի թագաւորաշէն ուխտս, որ կոչի սուրբ Յակոբ, որ էր ի բազում ժամանակաց աւե-

*բակ լեալ և անմարդաբնակ։ Եւ սկիզբն առնեն շինութեան տեղւոյս, և յաջողութեամբն աստուծոյ ժողովին ի տեղիս և այլ կրօնաւորքս և աշխարհականք՝ գործաւորք վանացս, որոց անուանք գրեալ են ի դպրութիւն կենաց, և շինեն զվանքս ծագէ ի ծագ. Նորոգեն կղմնտրաշէն և կրամած զսուրբ Յակոբայ գումբէթս, որոյ ճարտարապետ և շինող էին սրբասէր կրօնաւորքն* Գրիգորն *և* Յոհաննէսն *և* Յովաննէսն, *որք մաքրական վարուք զկնի ամաց ինչ անցելոց փոխեցան յաշխարհէս, որոց ողորմի Քրիստոս յօր դատաստանին, ամէն։ Իսկ* Սիմէոն *սրբասէր՝ աբբանեակ և սպասաւոր լեալ վարդապետին* Ստեփաննոսի, *և տուեալ զինքն յընթերցումն աստուածաշունչ կտակարանաց՝ եղև աշակերտ գրոց և սպասաւոր բանի։ Եւ մնացեալ վարդապետն* Ստեփաննոս *ամս ինչ ի նորաշէն սուրբ Յակոբ, յանձն առնէ զաշակերտն իւր և զընակիչք տեղոյս շնորհացն աստուծոյ, և ինքն դէմ եդեալ՝ երթայ դարձեալ ի սուրբ քաղաքն* Երուսաղէմ, *և վախճանի անդ. որ և հանգուցիչն աստուած հանգուցէ զհոգի նորա ընդ աստուածաբան վարդապետացն ի խորանսն լուսեղէն, ամէն։ Իսկ ապա, զկնի գնալոյ նորա,* Սիմէոն *սպասաւոր բանի առնու գաւազան իշխանութեան վարդապետութեան ի ՊՀԶ. (1427) թուականին, և լինի խնամածու, հոգաբարձու և առաջնորդ սուրբ Յակոբայ հանդիսաւոր կրօնաստանիս, և ծնօղ և դայեակ, խնամիչ և դարմանիչ, սնուցանող և սփոփիչ սուրբ Յակոբայ միաբանիցս, իւր զգօրովագութ ծնող զաւակաց իւրոց։*

*Վասն զի յաւուրս սորա և մեր բազում վրդովմունք եղև աշխարհիս մերոյ. և էառ անիծեալն* Սքանդար *զաշխարհս մեր և զանառիկ բերդորայքս Քրդստանաց՝ զՎան և զՈստան և զայլսն ամենայն ի ձեռաց ընիկ պարոնանց մերոց, և անցոյց զտունն* Շամօանից, *և մնաց երկիրս շատ աւերակ։*

*Ի ՊՀԴ. (1425) թուին էառ զՎան։ Եւ ի ՊՁ. (1431) թուականին էառ* Փիր–Բէկն *զԱղթամար կղզին, և անպատմելի տրտմութիւն եհաս աշխարհիս և ազգիս Հայոց. և երկիրս աւերակ մնաց երկու տարի։ Եւ յՊՁԴ. (1435) թուականին* Շահռուխն *ի դուրս եկն, և* Սքանդարն *փախեաւ, և երկիրս սասանեալ կայր, և զՋհանշէն եդիր պարոն* Շահռուխն, *և ապա խաղաղացաւ երկիրս։ Եւ յՊՁԸ. (1439) թուին գողացան զԼուսաւորչի աջն ի* Սիս, *և... հուր անկաւ յերկնից ի* Մըմրուտ *սարն և շատ տարի այրեց զայն սարերն։ Եւ յՊՂ. (1441) թի.ն յէջ*միածին *կաթողիկոս նստուցին։ Եւ յայս ամենայն նեղութիւնքս և հալածանքս հեզահոգի և աստուածաբան վարդապետն* Սիմէոն *զսուրբ Յակոբայ միաբանքս իբր զգօրովագութ ծնող պահեաց զսոսա, յայլ և այլ տեղիս շրջելով, ի հոգևորսն խրատելով և զմարմնաւոր զպէտսն լիակատար պատրաստելով։ Սա ստացաւ և բազում մուլք և արտորայք, այգի և ծառատունկք վանիցս, զոր ինքեամբ գնեաց՝ տրօք քրիստոնէից, և զոր յորդորեալ զքրիստոնեայս՝ զքահանայս և զաշխարհականս, ետ գնել նոցա ի հալալ արդեանց իւրեանց մուլք և անդաստան վանիցս, որոց տացէ... Քրիստոս աստուած ընդ միոյն հարիւրապատիկ։*

Եւ արդ, այսոքիկ են նոր տուած և արծաթագին մուլք վանացս. Զինչ որ բնական մուլք է վանացս՝ Թէ կաղամախի պրակն, և Թէ արտ, և Թէ ափն, որքան և է ի յԸնծափու դաշտս՝ յայտնի է ամենեցուն, և երկու արտ ի Շատուան, և ծառ ի Գանձակ, և երկու արտ ի Դեղձիսն, և հինգ արտ և Սաղաթիէլ երիցանց այգւոյ կէսն ի Մոխրաբերդ, և Օմար Շամշանի բաժին հոգն, ԺԳ. (13) արտ, և խոտունցն, և փագախն*, և կալն, և Մանդուկանց Ամիրպէկի այգին՝ ծառ ոերովն ի Մոխրաբերդն. Սոքա ամենեքեան Սիմէոն վարդապետին արծաթագին մուլք են վանացս, զոր ստացաւ տրօքն քրիստոնէից և յորդորեաց վարդապետական քարոզութեամբ զայլս ոմանս՝ ըստանալ ընչիւք իւրեանց և նուիրել մուլք և ոխվ սուրբ Ցակոբայ վանացս. Եւ երկու արտ ի Նարեկ, և մէկ ի Բախվանց:

Դարձեալ, աղաչեմ յիշել ի Քրիստոս զլերթահատոր հարազատքս մեր՝ զուրբակրօն աբեղայքս, որք վայելողք են այս տառիս, և սպասաւորք սուրբ տաճարիս՝ զՊօղոսենց Կիրակոսն, և զԳաւաշեցի Ստեփանոսն, զԿիրակոս և զՄկրտիչ մահդասիքն, զՍարգիս, և զԿիրակոս, զՀայրապետ, և զերկու Թումայն, և զԱռաքելն, և լի բերանով… աստուածողորմի ասել….

## 654

## ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 5521

Դրիչ՝ Մինասենց Թումայ
վայր՝ Աղթամար

433 ա …Զսուրբ գիրքս զայս, որ է գանձարան գանձուցն աստուծոյ արարի պատճառ փրկութեան հոգւոյս մեղուցելոյ ի յանհերելի տանջանացն և ի մխիթարութիւն անձին իմոյ ի նարդեան ժամանակիս. Եւ ստացայ զնիւթս սորա ի հալալ արդեանց իմոց ես՝ անպիտան ծառայս ծառայիցդ աստուծոյ Մինասենց-Թումայս՝ բազմավէր հոգիս, և իմով իսկ մեղսամած մատամբս գծագրեցի զսա մեծաւ աշխատութեամբ յաստուածախնամ կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ հըաշակաւոր և երկնանման գումբէԹայարկ սուրբ Խաչի տաճարիս, և Ամենափրկչիս, և սուրբ Աստուածածնիս, և սուրբ Սարգիս զաւրավարիս, ի հայրապետութեան տեառն Զաքարիայի, և ի Թուականութեան հայկազեան տոմարիս ՊՂԴ. (1445), Եւ նըւիրեցի զսա ընծայ և նըւէր ի նոյն գերահռչակ և յերկնանման տաճարիս՝ ի սուրբ խաչս Աղթա-
433 բ մարայ, որ է դուռն երկնից և ճանապարհ առ ‖ քայութեան, որպէս զի ուրախասցին սովաւ հանապազ մանկունք և սպասաւորք սուրբ Խաչի տաճարիս համեղաբան գանձիւքն և քաղցրեղանակ մեղեդաւքն և տաղիւքն, որ գըծագրեալ կայ ի սմա ի տաւնս տէրունականս և ի

* «Փագախ» բառը Փիրղալեմյանի ծանոթագրությամբ նշանակում է «բնակարանանասնոց»:

յիշատակս ամենայն սրբոց։ Զորս երգեալ են զսոսա սուրբ և աս-
տուածարան վարդապետքն եկեղեցոյ և ախոյանքն հաւատոյ՝ սուրբն
Գրիգոր Նարեկացին, և տէր Ներսէս Կըղայեցին, տէր Մխիթար Այրի-
վանեցին, և Խաչատուր Կեչառեցին, տէր Մկրտիչ տեսուչ բարին, և
Մաթէոս Գանձասարեցին, և այլք բազումք, որոց անուանքն գրեալ
են յիւրաքանչիւր վերնագիրս և ի ստորնագիրս և ի աընտառաջս գան-
ձուցն և տաղիցն, և գրին անուանք նոցա ի դպրութիւնն կենաց,
ամէն։ Իսկ զկնի սոցա եղեալ ոմն վարդապետ Գրիգոր անուն Ղըլա-
թեցի, ըստ նախնեացն Ծերենց կոչեցեալ, յոյժ հանճարեղ և բանի-
բուն և առատամիտ, ոչինչ նըւազ գոլով քան զյառաջ յիշեցեալ վար-
դապետսն, այլ գերազանց գտաւ քան զնոսին։ Սորա առեալ զառաջ-
434 ա նոց երգեալ գանձարանսն և ‖ յամենեցունցն զհամեղաբանսն և
զքաղցրեղանակսն հաւաքեալ՝ սրբագրեաց մեծաւ աշխատութեամբ և
ի յոան եհան։ Թէ պակաս բան կայր ի վանկսն՝ յաւելցոյց յինքենէ,
և թէ աւելի բան կայր, որ հատակոտոր բերէր զվանկսն՝ քերեալ ի
բաց եհան։ Եւ յաւել յինքենէ բազում գանձս և տաղս համեղաբանս
և քաղցրեղանակս տէրունական տաւնից և ամենայն սրբոց, ի վերայ
անուան իւրոյ գրծագրելով զաընտառաջս գանձիցն, եթող անջընջելի
յիշատակ ինքեան ի սուրբ եկեղեցի, որ և յետոյ մարտիրոսական
մահուամբ ել ի կենցաղոյս՝ սպանեալ յանաւրինաց։ Որոց տացէ
ամենեցուն՝ աստուածազանից արանցն երգաւղացն ըզբանք գանձա-
րանիս՝ առաջնոցն և վերջնոցս, պսակ լուսեղէն ի յարքայութեանն
երկնից, ամէն։

Որոց լուսազարդ և ուրախարար բանից ցանկացող եղէ ես՝ վեր-
ջինս ի ծնունդս եկեղեցոյ և առաջինս ի կարգս մեղաւորաց Մինա-
սենց Թումայս՝ սոսկանուն աբեղայս. ստացայ զնիւթ սորա ի հալալ
434 բ արդեանց ի ‖ մոց, և իմով իսկ մեղսամած մատամբս գըծագրեցի
զգանձարանս զայս, որ ունի հաւաքեալ ի ծոց իւր Ճ. և ԻԳ. (123)
գանձ՝ մեղեդովք և տաղիւք բազմաւք՝ ի զարդ ճոխութեան և ի
փառս պարծանաց կաթուղիկէ եկեղեցոյս սուրբ Խաչիս Աղթամարայ,
որպէս զի ուրախասցին սովաւ մանկունք և սպասաւորք սուրբ Խա-
չիս և քաղցրեղանակ երգաւքն, որ ի սմա՝ զուարճացեալ բերկրեսցին
ի տաւնս տէրունականս և ի յիշատակս ամենայն սրբոց, և անմոռաց
յիշմամբ յիշատակեսցեն զմեզ ի սուրբ և յերկնաբացիկ յաղաւթս
իւրեանց։ Վասն որոյ յերես անկեալ աղաչեմ զսրբութիւնդ ձեր՝ պա-
տուական հարք իմ և լերդահատոր հարազատք, ծառայք աստուծոյ և
սպասաւորք սուրբ Խաչիս, որք ի նարդեան ժամանակիս դուք վայե-
լողք էք այս տառիս և որք զկնի ելիցն մերոց յաշխարհէս հարդերձեալ
էք վայելել զգանձարանս զայս, և որք պատահիք սմա տեսութեամբ և
435 ա կամ աւրինակ դնելով զսա՝ լի բերանով և բոլորախօս ‖ լեզուաւ և
ուղիղ մտաւք աստուած-ողորմի ասասջիք ինձ՝ մեղուցելոյս Թումայի,
և ծնաւղացն իմոց Սիմէոնի և Արղուն-Մէլէքի, և քուերցն իմոց Ոս-
կի-Տիկնայ և Անղալատի, և որդոց նոցին՝ Հայրապետի սրրակրաւն
աբեղայի՝ լերդահատոր հարազատին իմոյ և Յոհանիսին, Քուրդամիրին

և Աւետիսին, և նոցունց զաւակացն, և այլ ամենայն արեան մերձաւորացն իմոց՝ կենդանեաց և հանգուցելոցն աստուած-ողորմի ասացէք։

Դարձեալ աղաչեմ զսրբութիւնդ ձեր, ո՜վ պատուական հարք իմ և եղբարք, յիշեցէք ի Քրիստոս և զերախտաւոր քեռին իմ և զուսուցիչն զԹումայ միայնակեացն՝ զհոգեոր հայրն իմ, որ բազում ջան և աշխատութիւն կրեալ է ի վերայ իմ, և զհարեղբայրն իմ զՎարդան, և զՆերսէս սարկաւագն զսիրասունունդ աշակերտն իմ, որ աւգնական եղև ինձ կոկելով զնիւթ սորա...։*

## 655

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

*Փիրղ. Նոտ., էջ 146, Նշխարք (№ 4515), էջ 158—159, ի գիւղն Խժիշկ*

Գրիչ՝ Կարապետ
Վայր՝ Վան

...Կատարեցի բազում աշխատանօք ի լաւ և յընտիր օրինակէ, զոր արարեալ է քաջ նահատակին և տիեզերալոյս վարդապետին Գրիգորի [Խլաթեցւոյ], որ էր ուսուցիչ մեր...։ Եւ գրեցաւ սա յերկիրս Վասպուրական, ի քաղաքս, որ կոչի Վան, ընդ հովանեաւ սրբոյն Ստեփաննոսի Նախավկային, և սրբոյն Սահակայ հայրապետի, և սրբոց առաքելոց Պետրոսի և Պօղոսի, և սրբոյն Վարդանայ զօրավարին, ի հայրապետութեան տէր Գրիգորի և մերոյ եպիսկոպոսի և առաջնորդի սուրբ ուխտիս Վարագայ տէր Յոհաննէսի, ի թուականութեանս Հայոց ՊՂԴ. (1445), ի դառնացեալ ժամանակիս, ի թագաւորութեան Ջհանշայի, որ ի յայսմ ամի գնաց բազում զօրօք յԱխլցխայ և բազում քրիստոնեայս դերի արար, զոր տեսաք աչօք մերովք զխիղճ և [illegible] սոցա։ Արդ, ի յայսմ դառն ժամանակիս ցանկացող եղև այսմ աստուածային և փարթամ գանձուցս երիցս երանեալ սրբազան կրօնաւորն Մկրտիչ, և ետ գրել զսա յիշատակ բարի հոգւոյ իւրոյ և ծնողաց իւրոց՝ հօրն Խութլու-Բէկին, և մօրն Խութլուին, և եղբարցն Յովանիսին և Կարապետին՝ հանգուցելոցն ի Քրիստոս։ Եւ արդ, ես անպտուղս ի բարեաց... սուտանուն էրէց Կարապետ տեսի զսէր Մկրտիչ կրօնաւորին, զոր ունէր առ հոգեորս...։

---

* Ձեռագիրն ամբողջությամբ վերցրած թուղթ է, բացի 417—422 և 432—436 թերթերից, որոնք կրկնագիր մագաղաթ են։

Նախկին գիրը պահպանվել է սկզբից և վերջից գրված մեկական թերթ պահպանակների և 436ր էջի վրա։

Ըստ երևույթին, այդ պատառիկները հնագույն (գրված Ժ. դարից ոչ ուշ) մի Ճաշոցի կամ Հարանց վարքի հատվածներ են։ Պահպանվել է նաև մի հիշատակագրություն՝ գրված բոլորձև երկաթագիր խոշոր տառերով.

«ՁՍՏԱՑՈՂ ՍՈՒՐԲ ԳՐՈՑՍ
ՁԽԱՉԻԿ ԲԱՐԵՄԻՏ ԿՐԱՒՆԱՒ
ՈՐ ԽԻ ՁԾՆԱՒՂՍՆ ԻՒՐ ՅԻՇԵՍՋ
ԻՔ Ի ՔՍ ՅՍ Ի ՏՐ ՄԵՐ, ԱՄԷՆ»։

## 656

### *Ժ Ա Մ Ա Գ Ի Ր Ք*

*Նախավկայի վանք, Ս. Տ. Ա.*

*Գրիչ՝* Կարապետ
*Վայր՝* Ոստան

188 ա—187 բ *... Գրեցաւ տետրակս ձեռամբ* Կարապետ *սուտանուն քահանայի, որ անուանս տիրիմ և գործովքս ատար յամենայն գործոց բարութեան, ի մայրաքաղաքս* Ոստան, *ի դուռն Քարի սուրբ Աստուածածնիս, ընդ հովանեաւ սորին և սուրբ* Ստեփանոս *Նախավկային, ի Հայոց թվ. ՊՂԴ. (1445), ի հայրապետութեան տէր* Զաքարիայի, *զոր աստուած ընդ երկայն աւուրս արասցէ։*

*Արդ, աղաչեմ զձեզ, ով դասք լուսերամից՝ մանկունք եկեղեցոյ, որք աւգտիք ի սմանէ ուսմամբ կամ աւրինակաւ՝ յիշեցէք յաստուածամերձ յաղաւթս ձեր զպատուական կրօնաւորն* զՅակոբ, *որ ստացաւ զսա ի հալալ աշխատանաց իւրոց, ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ ծընօղացն իւրոց՝ հօրն* Ստեփանոսին *և մօրն* Խութլուին, *և եղբօրն* Լուսաւազին, *որ նահատ[ակ]եցաւ յանաւրինաց վասն անուանըն Քրիստոսի, և միւս եղբաւրն* Աստուածատրին, *և այլ ամենայն մերձաւորացն և հանգուցելոցն ի Քրիստոս...։*

*Այլ և զբարի և զընտրեալն ի բազմաց՝ զպատուական փիլիսոփայն զտէր* Սիմէոն *զվարդապետն իւր յիշեցէք ի Քրիստոս աստուած, և լի բերանով աստուած–ողորմի ասացէք ամենեցուն, առհասարակ,* Յակոբ *կրօնաւորին և իւր ամենայն ազգականացն, ամէն։ Ընդ նոսին յիշեցէք ի Քրիստոս զմեղաւոր գծողս* զԿարապետ, *և զիմ ծնօղսն, և մի բերան մեզ աստուած-ողորմի ասացէք, և աստուած մեզ և ձեզ ողորմեսցի և մեղաց թողութիւն շնորհեսցէ, ամէն։*

*Անմեղադիր լերուք, զի ամէն մեղօք պաշարեալ է միտս ու հոգիս ի բանսարկուէն սատանայի, ոհ, ոհ։*

## 657

### *Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն*

*Ալիշան, «Հայկարան»*

Գրիչ
*Վայր՝* Բաղէշ

*Գրեալ ի* Բաղէշ, *ընդ հովանեաւ սուրբ* Կիրակոսի, *ի ղանութեան* Ջհանշահի *ամիրզին և յամիրութեան քաղաքիս մերում շեխ* Մահմուդին, *որ խեղագարեցաւ, և եկին ամենայն մեծամեծքն՝ եդին ի տեղի նորա զեղբօրորդին՝ զամիր* Շամշադին:

## 658

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

*«Թորոս Աղբար», Բ., էջ 306, կամախ, Թադէոս առաքեալի վանք*

*Գրիչ՝* Աստուածատուր
*վայր՝* Խլաթ

... *Յիշատակ* Հազարբէկին *և ամուսնոյն իւրոյ* Թուրուանդէին, *և ծնողաց իւրոց* Բուրթէլին *և* Քաֆուրին, Կիրակոսին *և* Խաթուն-Մէլէքին, *և ծնողացն* Ստեփաննոսին *և* Շող-Մէլիքին, *և եղբաւրն* Մխիթարին, *և... գրիչն* Աստուածատուր, *ի* Խլաթ *քաղաքի, ընդ հովանեաւ ԺԱ. խորանացս, յամի Գ. և ՂԴ. (1445) թուականի, յաշխարհտկալութեան նետողաց ազգի* Ջընխանշահ *ամիրզին՝ Թուրքմանին, և ի նոր հայրապետութեանս Հայոց՝ տեառն* Կիրակոսի էջմիածնի *կաթողիկոսի...։*

*Աստուած-ողորմի* Հազարբէկի *դստերն* Գոհարին *և քուրուըտոցն* Նազ-Խաթունին *և* Թան-Խաթունին*...։*

## 659

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրղ, Նոա., էջ. 147—148, Մեծոփավանք*

*Գրիչ՝* Յոնաննէս Մանգասարենց
*վայր՝* Արճէշ

... *Ցանկացող եղեալ [սմին] երջանիկ քահանայն և կրօնաւոր* [Յոնաննէս], *որդի բարեպաշտ և աստուածասէր տանուտիրոջ պարոն* Գուրգի-Մելիքին, *երիտասարդ հասակաւ և բարի բնութեամբ, ուստի շարժեալ ի սէր աստուածային գանձուցս, և ջանաց ստանալ զանուրիկ մեծութիւնս և զգանձս անկողոպտելիս ի վայելումն անձին իւրոյ, և յետ աւդեացս ելանելոյ՝ յիշատակ հոգւոյ իւրոյ, և ծնողաց իւրոց պարոն* Գորգի-Մէլիքին, *և մօր իւրոյ* Սալչուկին, *և եղբարց իւրոց պարոն* Գրիգորին *և* Ստեփաննոսին *և* Մինաս *խալիֆին,... և հօրեղբարց մերոց՝* Թովմայ *րաբունապետին. և ուսուցչին, իմոյ* Ամիր-Մէլիքին, *և որդւոց նորին* Ստեփաննոս *կրօնաւորին, և հանգուցելոցն ի Քրիստոս պարոն պապուն՝* Ստեփաննոսին, *և* Շամշին, Յոհաննէս *քահանային,* Արիստակէս *նահատակին, և ի զուարճութիւն ուրախութեանց մանկանց և որդւոց նոցին* Գրիգոր *քահանային,* Ծերուն *սարկաւագին,... և դեռաբոյս պատանեկաց՝* Յակոբին... Նասրատին... *և ամենայն արեան մերձաւորաց իւրեանց՝ կենդանեաց և հանգուցելոց, յիշատակ բարի և թողութիւն մեղաց լիցի սոտ և ի հանդերձեալն, ամէն։*

*Եւ ես՝ յետինս ի քահանայից և յերիցանց՝ սուտանունս ի կարգաւորաց* Յոհաննէս, *որ բազում աշխատութեամբ զտկարութիւն աչացս մո-*

ռացայ և զգիրս գրեցի,* որք հանդիպիք սմա օրինակելով... յիշեսջիք ի բարին Քրիստոս զմեզ և զհանգուցեալ ծնողս մեր զՄանկասար: Եւ դարձեալ, կրկին ի յիշումն աստուածաբնակ սուրբ ուխտիս Մեծոփայ սուրբ Աստուածածնի տաճարիս՝ զԹումայ մեծ րաբունապետ, և զՄկրտիչ վարդապետ, և զհանգուցեալքն ի Քրիստոս զՅոհաննէս եպիսկոպոս, զՄատթէոս կրօնաւորն, և զՂազար, զՅակոբ, զՄեսրոպ, զՆիկողայոս՝ աշակերտք սորին, ամէն, և զայլ ամենայն միաբանք սուրբ ուխտիս.**

Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի գաւառս Քաջբերունեաց, ի յաստուածապահ քաղաքս Արճէշ, ընդ հովանեաւ սուրբ եկեղեցւոյս, և ծաղկեցաւ ի սուրբ ուխտս Մեծոփայ, [ձեռամբ աստուածապատիւ... և հեղահոգի Մինաս կրօնաւորի]։ Ի հայրապետութեան տեառն Կիրակոսի սուրբ կաթողիկէ էջմիածնի Վաղարշապատու Նոր քաղաքիս սկսեալ եղև, և [ի] հայրապետութեան տեառն Գրիգորի աթոռակցի Լուսաւորչին մերոյ օրհնեալ եղև, ի յաշխարհակալութեան Ջհանշայ ղանին Թավրիզու:

Եւ գրեցաւ սա ի թուականութեանս Հայոց ՊՂԴ. (1445) ամին | | |

---

* Իր աչքերի տկարությունից գանգատվող Հովհաննես Մանկասարենցը (կամ Մանկասարի որդին) ԺԵ. դարի ամենանշանավոր, գրագետ ու վարժ գրիչներից է։ Վախճանվել է 80 տարեկան հասակում՝ 1505 թվականին, կամ դրանից մի-երկու տարի առաջ։

72 տարի շարունակ, 14 տարեկան պատանի հասակից մինչև իր մահը՝ նա զբաղվել է ձեռագրերի ընդօրինակության տաժանակիր ու չարքաշ աշխատանքով։ Իր բազմամյա գործունեության ընթացքում ընդօրինակել է ավելի քան 132 մեծ ու փոքր ձեռագիր։

Այդ արտակարգ բեղմնավոր, տոկուն ու համեստ մշակի կյանքի ու գործունեության մասին ուշագրավ տվյալներ է հաղորդում իր աշակերտներից մեկը՝ Զաքարիա գրիչը, 1505 թվականին ավարտելով իր ուսուցչի ծերությամբ ու մահով թերի մնացած ավետարանը և գրելով հիշատակարան ձեռագրի գրչության հանգամանքների մասին։

Լսենք Զաքարային.

«... Արդ, յանդ ելեալ աւարտեցաւ աստուածաբան սուրբ Աւետարանս ի մեծ թուականիս մեր ՋԾԴ. (1505), ի գաւառս Վասպուրական, ի քաղաքս Վան...։ Եւ արդ, գրեալ եղև Յոհան գլուխն ձեռամբ վարդապետին իմոյ տէր Յոհաննիսի Մանկասարենց քաջ քարտողին, որ ՀԲ. (72) ամի՝ ամառն և ձմեռն, գիշերն ու ցերեկ ի գրել եկաց։ Որ գրեալ եղև ձեռամբ նորա Խ. (40) Այսմաւուրք և Տարենգիրք, իսկ փոքր գիրք՝ Տեառ և Աղօթամատոյց, Շարակնոց և Սաղմոսարան, Մաշտոց և Գանձատետր՝ Ծ. (50)—Կ. (60) և այլ աւելի, և Աւետարանս ԼԲ. (32)։ Եւ զայս Յոհան գլուխս ի ծերութեան ժամանակիս, որ աչք չէր հայիլ և ձեռքն կու դողայր, բազում չարչարանօք հազիւ կարաց աւարտել, և այլ չկարաց գրիչ բռնել մինչ ի վախճան, որ հանգեաւ ի Քրիստոս ՁԶ. (86) ամաց։ Վասն որոյ աստուած-ողորմի ասացէք, ամէն։

Եւ արդ, ես Ջաֆարայ աշակերտ նորին գրեցի զՂուկաս գլուխն, և Կարապետ աշակերտ մեր գրեաց զՄաթէոս և զՄարկոս գլուխն...» (Երևան № 5250, էջ 291բ—292ա)։

Այս նույն ձեռագրում, Հովհաննի ավետարանի վերջում, Հ. Մանկասարենցը թողել է իր ամենավերջին հիշատակագրությունը. «Զմեղաւոր ծեր գրիչս Յով[հաննէս] յիշեցէք առ աստուած և աստուած զձեզ յիշէ» (էջ 290բ)։

** Ղ. Փիրղալեմյանը հայտնում է, որ «քսան և հինգ վարդապետաց անվանք եակային, բայց մի առ մի գրելն զանց արարի»։

## 660

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 6366**

Գրիչ՝ Մարգարէ
վայր՝ Աւագ Վանք

ա

239 բ ...Արդ, գրեցաւ տէրունական հրամանս ի գերունակ և ի հրա-
շափառ անապատս կոչեցեալ Աւագ վանք, ընդ հովանեաւ աստուածա-
մերձ սրբոց՝ սուրբ Աստուածածնի, և սուրբ Կարապետի, և սուրբ
Առաքելոց, ի յառաջնորդութիւն սուրբ ուխտիս ժրաջան, մաքրամիտ,
հիւրընկալ, նայ և Այցելուկ կոչեցեալ Մարտիրոս բաբունապետի, և
մգտեսի տէր Սարգսի Տիւրիկեցի հեզահոգի քաղցրեղանակ դասավարի,
և մտերիմ եղբաւր մերոյ մղտեսի Երեմիայի աբեղայի, և փակակալի
սուրբ ուխտիս Յակոբ աբեղայի՝ սրբասիրի և գեղբայր սիրողի, զի
եղբարք բազումք հաւաքեալ ի սուրբ ուխտս, զի աբեղայ և սարկա-
ւագ և գործաւորք միահամուռ ԼԳ. (33) միաբանք, նաև զՅոհաննէս
մղտեսին Դրիմեցի և զՎարդան տնտեսն, զի ցաւակցաբար աշխատի։
Յիշեսջիք և տէր Կիրակոս եպիսկոպոսն, նաև զարի նահատակն զԸռս-
տակէս վարդապետն, որ զգրչութեան դուռն եբաց մեզ, զոր տէր աս-
տուած հատուցանէ զտրիտուր նորին։ Նաև զանարժան հոգս՝ զՄար-
գարէ աբեղաս՝ զկրկնամեռիկս, նաև զծնաւղսն իմ զհանգուցեալսն
առ Քրիստոս, այլև զեղբարսն իմ։ Եւ գրիչս յերես անկեալ աղաչեմ
240 ա զամ || ենեսեան, որք հանդիպիք կարդալով կամ աւրինակելով, յի-
շեսջիք ի մաքրափայլ աղաւթս ձէր զվերոյգրեալսդ, նաև զանպիտան
գրիչս միով տէր-ողորմայիւ, զի ողորմածն աստուած սովոր է այլոց
աղաւթիւք՝ այլում ողորմիլ։ Զի դուք՝ յիշաւղքդ և մեք՝ յիշեալքս,
առհասարակ, ի միասին վայելեսցուք յամէնառատ պարգևողին սե-
զաննի։

Ողորմութեամբ ամենակալին աստուծոյ սկսա և կարողութեամբ նորին եղև զրաւ։

Դարձեալ աղաչեմ, զի խոշորութեան և սխալանաց ոչ մեղադրել, զի ժամանակն ձմեռն էր և միտքս շփոթեալ բազում իւիք, և զի կար մեր այս էր։ Եղև ի թվին ՊՂԴ. (1445), ի փառս Քրիստոսի աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յարաձգական յաւիտեանս, ամէն։

բ

Կազմող՝ Յովանէս

240 ա Յիշեսջիք ի Քրիստոս զբարէմիտ և զբարէգործ, քրտնաջան, աշխատասէր հողագործն, զիմաստուն և գհանճարեղ քրիստոնէն՝ զպարոն Յոհանէսն, որ ստացաւ զսուրբ աւետարանս ի հալալ արդեանց իւրոց՝ յիշատակ իւր, և ծնողաց իւրոց՝ հաւրն իւրոյ Յակոբին, որ

241 ա մականուն Ճատիկ կոչի, և մայրն իւրոյ ‖ Շնոֆոր տիկնա, և կենակ-
ցին իւրոյ՝ համեստ և հարկեոր տիկնոջն Տաւնա-Մելիքին, հայրն իւ-
րոյ Յովանիսին, և մայրն իւրոյ Խաթունին, և եղբայրն իւրոյ Մկրտչին,
և ամենայն արեան մերձաւորաց և զաւակաց սորա, որ տղա հասակաւ
փոխեցան առ Քրիստոս և սուգ անմխիթար թողին ծնաւղաց իւրեանց։

Սայ ստացաւ զսուրբ աւետարանս... և եդ զսա յիշատակ ի գե-
ղաքաղաքս Բագառին, ի դուռն սուրբ Աստուածածնին և սրբոյ Գէոր-
գեա, և մի ոք իշխեսցէ ձեռնամուխ լինելով՝ ծախելով, կամ գրաւե-
241 բ լով, կամ սեփհականելով, ‖ և եթէ ոք յանդգնի և զյիշատակս ջնջէ
կամ անխնամ պահէ՝ նայ ջնջի ի գրոյն կենաց. բայց ի կարդալոյ
կամ յաւրինակելոյ անխնայ եղիցի, և ով որ յաւժարութեամբ զյի-
շատակս կարդա, որ լսեն՝ լսէ և զձայն յերանաւետ փողոյն, ձեզ՝ յի-
շողացդ և մեզ՝ յիշեցելոցս, առհասարակ, ողորմեսցի յիւր միւսան-
գամ գալստեանն, ամէն։

Այլև զկազմող սուրբ աւետարանիս՝ զՅովանէս աբեղա և զհաւրեղ-
բայրն իմ զՄկրտիչ աբեղայ յիշեցէք ի տէր, և աստուած զձեզ յիշէ,
ամէն։

661

ԱՒԵՏԱՐԱՆ

Փիրգ. Նոտ., էջ 135, ի լեառն Սեպուհ, ի վանս Լուսաւորչի

Գրիչ՝ Յովաննէս

վայր՝ Ի լեառս Սեպհոյ

...Արդ, գրեցաւ և ոսկով զարդարեցաւ սուրբ աւետարանս ի թուաբերութեանս Հայոց ՊՂԴ. (1445), ձեռամբ սուտանուն աբեղայի Յովաննիսի, ի մէջ երկուցն գաւառաց՝ Եկեղեաց և Դարանաղեաց, առ դամբարանի սրբոյն Գրիգորի Լուսաւորչիս և սուրբ Փրկչիս, ի լեառս Սեպհոյ, յառաջնորդութեան սուրբ ուխտիս Բարսղի, և ի վարդապետութեան քաջ րաբունոյն Յովհաննէսի, և գրոց աշակերտաց նորին՝ տէր Աբրահամին, և Մարտիրոսին, և Աստուածատրին, և Աւետիքին, և զալեօք պատեալ ծերունին զտէր Թորոսն, և Յովհաննէս փակակալն, զՍարգիս Ապահունեցին, զԳրիգոր Համշէնցին, և զՀայրապետն, և զայլ միաբան սուրբ ուխտիս՝ զմեծ և զփոքր յիշեսջիք։

662

ՍԱՂՄՈՍ

Երևան 6108

Գրիչ՝ Գրիգոր

վայր՝ յանառիկ դղեակն Արղնւոյ

ա

200 բ ...Արդ, գըրեցաւ աստուածաքնար երգարանս գործիք աւրհնութեան
և քնար հոգւոյն աստուծոյ ճշմարտի մեծի Դաւթի թագաւորի և մար-

գարէի, զոր երգեն հոգւով մանկունք ուսումնասէրք ի դրունս սուրբ եկեղեցւոյ, որով հաշտեցի տէր ընդ աշխարհի, ձեռամբ անիմաստ և անարհեստ, անարժան և տարտամ ոգւոյ բազմամեղի Գրիգոր գրիչ սուտանուն կրօնաւորի, ի մեծ և յանառիկ դղեակն Արղնւոյ, առ դուրս վիմարդեան և շքեղաշուք խորանայարկ և կըմբեթաձեւ բարձր Աստուածածնի տաճարիս, և ընդ հովանեաւ սուրբ Նշխարացս, որ
201 ա ա[յ]ստ կան հաւաքեալ, ի հայրապետութեան տ[ե]առն Վաղարշապա-տու տէր Կիրակոսի, և ի թագաւորութեանն այլազգեաց մերոյ Նահանգիս Ջհանգիր ամիրզային՝ թոռինն Աւթման Բահադուռին, որ զսուրբ եկեղեցիս շինեաց ի գլուխս ամուր կլային Արղնոյ, և յառաջնորդութիւն սուրբ ուխտիս՝ հեզահոգի և սրբասէր եպիսկոպոսին տէր Յոհանէսի նորընծայ հայրապետի, որ մի ամ է աւրհնութեան նորա, ի թըւականիս Հայոց ՊՂԴ. (1445)։

բ

Ստացող՝ Ստեփանոս

201 բ [Գրեցաւ] հոգիայրուղ աստուածային գանձարանս ձե[ռամ]բ յոքնամեղ և անպիտան ծառայի Գրիգորի, ի խնդրոյ Ստեփանոս աբեղայէն. յիշատակ իւր և ծնաւղաց իւրոց՝ հաւր իւրոյ Մխիթարի, և մաւր իւրոյ Մինայի, և եղբաւր իւր սարկաւագ Պետրոսի, և մայրա-[քոյ]րոչ իւր Շնաւհվորի, և ամենայն արեան մերձաւորաց իւրոց ...։

663

ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

«Միաբանք և այցելուք Երուսաղէմի», էջ 28

Նուէրատուք՝ Առաքել Վարդապետ
և Արևշահ աղա
վայր՝ Արղնի

ա

Ես Առաքել վարդապետս և պարոն Աբևշահ խօշաղամ աղայս՝ տուաք զգիրքս այս ի սուրբ քաղաքն Երուսաղէմ, ի դուռն սուրբ Յակոբ կաթուղիկէի, յիշատակ մեզ և ծնօղաց մերոց և ամենայն արեան մերձաւորաց, ձեռամբ և վկայութեամբ տէր Աբրահամ եպիսկոպոսի Երուսաղէմի և վկայութեամբ տեր Յովհանէս եպիսկոպոսի Արղնու...։

բ

Ստացող՝ Աբրահամ եպիսկ. Երուսաղէմի
վայր՝ Դամասկոս

Ես նուաստ ոգիս տէր Աբրահամ Երուսաղիմա եպիսկոպոս, որ հանդիպեցայ ի Արղնին, և երետ նուէրք սուրբ Յակոբայ Երուսաղէմայ եկեղեցւոյն զգիրքս զայս և շուրջառ այլ պարոն Արևշահ,

յիշատակ իւր և ծնողաց իւրոց և ամենայն արեան մերձաւորաց իւրոց, ամէն...։

Գրեցաւ ի մեծ թուին Հայոց Մեծաց ՊՂԴ. (1445), մարտ ամսոյ ԻԳ. (23), ի փառս աստուծոյ հաւր, ամէն։ Ցաւուք աւագ շաբթու երեքշաբաթի աւրն, ի Դամասկոս քաղաք։

664

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5647

Յետ. ստացող՝ Ատոմ
վայր՝ Մար քաղաք

1 ա Զվերջին ստացող սուրբ աւետարանիս զմահդասի Ատոմ կրաւնաւորն յիշեցէք ի Քրիստոս, որ ըստացայ զսուրբ աւետարանս ի հալալ արդեանց իմոց՝ յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց Գուռջիբէկին և Խէրիք-Տիկնայ, և եղբարցն Ջանիբէկին և Վարոսին, և ամենայն արեան մերձաւորացն իմ, և ի վայելումն եղբաւրորդուն իմ Կիրակոսին: Ի թըւին Հայոց ՊՂԴ. (1445), ի Մար քաղաքին, ձեռամբ Մեսրոպայ քա՞ ըրաբունապետին։ Արդ, աղաչեմ զդասս սուրբ քահանայիցդ, որք հանդիպիք այսմ սքանչելագործ և մեռելյարոյց սուրբ աւետարանիս, յիշեցէք ի Քրիստոս և լի բերանով աստուած-ողորմի ասացէք Ատոմ կրօնաւորին, և ծնօղացն Գուռջի-Բէկին և Խէրիք-Տիկնեայ, և եղբարցն Ջանիբէկին և Վարոսին, և ինքն Քրիստոս, որ առատն է ի տուրս ողորմութեան՝ ողորմի ձեզ յիշողացդ և մեզ յիշեցելոցս , ամէն։

665

ՏՈՒՄԱՐԱՏԵՏՐ

Երևան 8973

Գրիչ՝ Աւգսէնդ
վայր՝ Կաֆայ

58 ա Եւ զստացաւղ սորա յիշեա՝ զերջանիկ րաբունապետն մեր զտէր Սարգիսն, որ է աթոռակալ Կաֆայիս և առաջնորդ վանիցս սըրոյն Անդոնի, որ ստացաւ զսա ի յարդեանց իւրոց և ետ գրել զսա | | |* և ծնողաց իւրոց, ի թվականութեանս Հայոց ՊՂԴ. (1445), ի յարքեպիսկոպոսութեանն սրբասիրի տէր Մաղաքիայի մայրաքաղաքիս Կաֆայի և ամենայն հիւսիւսական կողմանցս։

Եւ ես՝ անարհեստ դրիչս Աւգսէնդ** անարժան և բազմամեղ աբեղայս դրեցի զտումարատետրս զայս ի յանբարի և ի դառն ժամանակիս, ի մայրաքաղաքս ի Կաֆայս, առ ոտս սըրոյն Անդոնի, յիշատակ երջանիկ րաբունապետին մերոյ տէր Սարգսի, և որ զմեզ յիշէ ինքն յիշեալ լիցի ի Քրիստոսէ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։***

* Բերված է. ըստ երևույթին եղած պետք է լինի՝ «ի յիշատակ իւր»։

** Աւգսենտը իր ժամանակի ամենաշնորհալի ու ճարտար գրիչներից է, որը հատկապես հմուտ է տոմարական աղյուսակներ կազմելու և շատ մանր տառերով գրելու մեջ։

*** Տեղեկություն ունենք նաև այն մասին, որ Արմաշի վանքի ձեռագրերից № 207-ը եղել է 1445 թվականին ընդօրինակված մի Մաշտոց։ Գրիչն է եղել Ստեփանոս երէց, գրչության վայրը՝ Գռուսա, ստացողը՝ Մելքիսեթ եպիսկոպոս։

# 666

## Յ Ա Յ Ս Մ Ա Ւ Ո Ւ Ր Ք

Երևան 4866

Գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Բաղէշ

ա

Փառք... որ ետ կարողութիւն տկար և մեղուցեալ անձին Ստեփանոսի հասանել յաւարտ գրոցս, որ կոչի Յայսմաւուրք...։

543 բ Տեսեալ զանառիկ մեծութիւնս և զմեծագին մարգարիտս՝ զգանձս փարթամ և զերանաւէտ յիշատակս ոՖ ի կրօնաւորաց Մկրտիչ անուն և եղբայրն իւր Յովանէս, և ետուն գրել զսա բարի յիշատակ հոգւոց իւրեանց և ծնողացն և ամենայն ազգականացն։

Եւ արդ, ես... անարժան Ստեփանոս յանձն առի գրել զսուրբ գիրքս ի դառն ժամանակիս, զոր կանք ի վշտի ի ձեռն անաւրինաց և սատանայի։

Եւ գրեցաւ սա ընդ հովանեաւ սուրբ Սարգսի և սուրբ Գէորգեայ և սուրբ Ստեփանոսի, ի քաղաքս Բաղէշ, ի հայրապետութեան տեառն Կիրակոսի, և յամիրութիւն Շեխ-Մահմատին, որ յաթոռոյն աքսորեցին՝ զեղբօրորդին ի տեղն [եդ]ին՝ զփոքր ամիրէն զՇմբզդ[ին], և ի ղանութիւն Ջըհանշա ամիրզին։

Եւ յայսմ ամի եղև թանկութիւն մեծ, որ մին բեռն ցորեան եղև ի Կ. (60) թանկայ։ Եւ արարիչն աստուած նախախնամեաց զիւր հաւատացեալ քրիստոնեայքս։

Ի թվականիս Հայոց ՊՂԵ. (1446) գրեցաւ։

Արդ, աղաչեմք զհանդիպողսդ զամենեսեան՝ զքահանայքդ և զժողովուրդսդ, որք կարդայք կամ աւրինակէք, յիշեսջիք առաջի Քրիստոսի զստացող սուրբ գրոցս՝ զՄկրտիչ կրօնաւորն, և զեղբայրն իւր զՅովանէս, զհայրն իւր զՔուքն, և զմայրն զէլխաթունն, և զմիւս այլ եղբայր զՊարոնն, և զԿարապետն, և զմիւս այլ եղբայր զՎարդ-Մանուկն՝ զփոխեալն առ աստուած, և զքոյրն զխամօշ-խաթունն, և զեղբօրորդիքըն՝ զԴանարէկն, զԹումաբէկն և զՍիրունբէկն, և զքոյր նոցին զՀայխաթունն, և զմայր նոցին Արման-խաթուն, և զԿարապետ պղնձգործն, և զկողակիցն իւր զխոնձէն, որ աշխատեցան ի վերայ մեր, և զմեր հարսն զԹուրւանդէն, և զհաւրեղբայրն մեր զԹումայ մահդասին, և զմիւս հաւրեղբայրն զՊետրոս քահանայն, զհօրեղբօր որդիքն՝ զխաչա-

տուր կրօնաւորն և զԿարապետն, և զամենայն արեանառու մերձօրսն։
Եւ լի բերանով և արտասուալի հառաչմամբ հայցեցէք ի մարդասիրէն
զՔրիստոսէ զքաւութիւն մեղաց և զթողութիւն յանցանաց վերագրե-
լոցս ի սմա։
544 ա ... Դարձեալ յերես անկեալ աղաչեմ զամենեսեան՝ զքահանայսդ
և զժողովուրդսդ, յիշեսջիք առաջի Քրիստոսի զանարժան և զմեղա-
ւոր ծառայս զՍտեփանոս գրիչ, և ուղիղ սրտիւ և լիակատար բերանով
տստուած-ողորմի ասացէք ինձ, և ծնօղաց իմոց՝ Հէրապետ քահա-
նային և Նաս-խաթունին, և եղբօրն Սարգիս քահանային, և որդւոց
նորին, և ամենայն ազգականաց, և վարդապետաց իմոց, և բարի խրատ
տուողաց, և երախ[տ]աւորացն մեր, և ամենայն արեան մերձաւորա-
ցըն՝ կենդանեաց և հանգուցելոց, ամէն։

Բ

*Ստացող՝* Մկրտիչ Քուքենց

544 ա Եւ արդ, ես՝ ունայնս և թափուրս ամենայն հոգևոր բարէմաս-
նութեանց և հիւծեալս և մաշեալս վերջին աղքատութեամբ, մեղան-
չական և յանցաւոր ծառայս աստուծոյ Մկրտիչ անուամբ ևեթ աբե-
ղայ, տեղեաւ Աղթամարցի. ըստ նախնեացն Քուէենց կոչեցեալ... կա-
մաւք և խորհրդածութեամբ երից եղբարց իմոց՝ Շենճվոր պարոնին
և Կարապետին և Յովանիսէն, և ետու գրծագրել զսուրբ գիրքս զայս,
որ է պատմութիւն վարուց և սքանչելեաց և նահատակութեան ամե-
544 բ նայն սրբոց... զոր սուրբ հարքն հոգևոր Գրիգորիս Վկայասէրն, և
Ներսէս Շատաշնորհն, և նմանք նոցին հոգիընկալ և աստուածաբան
վարդապետքն եկեղեցոյ, յամենայն ազգաց պատմութեանց հաւաք-
եալ՝ ի մի տուփ գումարեցին և անուանեցին Յայսմաւուրք։ Իսկ ի
մերումս ժամանակի, որ էր թվական Հայկազեան տոմարիս ՊԾ. (1401),
երանաշնորհ վարդապետ Գրիգոր Խլաթեցին, ըստ նախնեացն Ծերենց
կոչեցեալ, ոչինչ նուազ գտեալ քան զառաջին հոգիընկալ վարդապետ-
սըն, այլ առաւելեալ քան զնոսին, սա յաւել ի վերայ առաջնոց դրե-
լոցն յոլով բանս շահաւետս և աւգտակարս յամենայն պատմագրաց
և վկայաբանութիւնս յինքենէ նորոց վկայից սրբոց, որք եղեն ի մե-
րումս ժամանակի, և հարստացոյց ըզ[գի՛ր]քս, յետոյ և ինքն սրով
կատարեցաւ ի ձեռաց անաւրինաց՝ անիծեալ ազգին Ռոզկանից, ի
վանքն Ցիպնայ՝ ի Պ. և ՀԴ. (1425) թվականին, որոյ յիշատակն
աւրհնութեամբ եղիցի։
Արդ, ես՝ վերջինս ի ծնունդս եկեղեցոյ Մկրտիչ անուամբ միայն
կրաւնաւորս, տեսի զհոգևոր փարթամութիւն սուրբ գրոցս և ցանգացայ
սմա, և ետու գրծագրել զսա ի հալալ արդեանց իմոց և տըւի զսա ընծայ
և նըւէր ի գերահռչակ ուխտս, որ է յանուն սուրբ Վարդան զօրավարին,
[որ է յերկիրն Ռըշտունեաց, հանդէպ գեղին Գաւաշից], ի հայրապետու-
թեան տեառն Զաքարիայի, յիշատակ բարի հոգոյ իմոյ և ծնօղաց
իմոց և եղբարցն։ Վասն որոյ աղաչեմ զամենեսեան սիրովն Քրիստոսի,
որք հանդիպիք սմա տեսութեամբ կամ կարդալով և կամ աւրինակ



24—38

դլնելով, լի բերանով և ուղիղ մտաւք և բոլորախաւսք լեզուաւ աստուած ողորմի ասացէք ինձ՝ մեղաւոր աբեղայիս Մկրտչի, և աստուածասէր ծնաւղացն իմոց Քուքին և էլխաթունին, և եղբարցն իմոց Շնօֆվոր պարոնին, և Կարապետին, և Յովանիսէն, և տարաժամ մահուամբ վախճանեալ եղբարցն իմոց՝ Վարդ-Մանուկին, և [Ստե]փաննոս և Յովաննէս սարկաւաղացն։*

## 667

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 8771

Գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Բաղէշ մայրաքաղաք

301 ա ...Ցանկացող եղև սուրբ աւետարանիս ըրբասնեալ և պատուական կրաւնաւոր աբեղայս Մկրտիչ, և ետ գրել զսա յիշատակ իւր, և ծնաւղաց իւրոց, և ամենայն արեան մերձաւորացն։

Արդ, աւարտեցաւ սա ձեռամբ անիմաստ և ախմար յարուեստ գրչութեան Մկրտիչ քահանայի և գրչի, ի թուականութեան Հայոց ի ՊՂԵ. (1446), ի մայրաքաղաքս ի Բաղէշ, ընդ հովանեաւ Հինգ խորանիս, ի հայրապետութեան տեառն տէր Կարապետին:

301 բ Արդ, յերես անկեալ աղաչեմ զսրբասնեալ դասս քահանայից, որք հանդիպիք այսմ աստուածաբան աւետարանիս կարդալով կամ աւրինակելով՝ մեղաց թողութիւն խնդրեցէք ստացողաց սորա, և ինձ՝ մեղապարտ գրչիս Մկրտչի, և իմ ծնողացն Խաչատուր քահանայի և Եղիսաբեթի, և խոշորութեան և սղալանաց անմեղադիր լերուք, զի կար մեր այս չափ էր...։

Բ

Ստացող՝ Մկրտիչ

301 բ Ես՝ Մկրտիչ քահանայս ետու զաւետարանս սուրբ քառասնից Գաւառու վանիցն, ձեռամբ և վկայութեամբ քահանայից և սանուտերաց Դաւիթ եպիսկոպոսի, և Դաւիթ և Մկրտիչ և Յոհանէս կրօնաւորացն, և Տէրուն քահանայի, և տանուտերաց ձեռօք։

Որ հակառակի, կամ ի դրանէս հանէ, կամ ծախէ՝ զմասն զՅուդային առնու, ամէն.**

---

* Ձեռագրի հաջորդ՝ 545 և 546 թերթերի վրա կան հիշատակագրություններ (ըստ երևույթին ԺԷ. դարի), որոնցից արժանի է հիշատակության հետևյալը՝ «Աստուած-ողորմի ասացէք ըռէս Նաւռուզին և եղբօրն՝ ըռէս Յովանիս[ին], որ վերակացու է Գաւաշ գիւղաքաղաքին...» (էջ 546 ա)։

** Ձեռագրի 302 բ էջի ԺԷ. դարի գրչությամբ հիշատակագրության մեջ հիշվում են մի շարք խոջաներ, որոնք «Վանայ քաղաքի քահանայից սաւրիզգիմ զամենայն հարճն վերացուցին»։

## 668

### ԱՒԵՏԱՐԱՆ

*ԼՑՎ 108, սյուն. 396—398, Փիրղ. Նօտ., էջ 152—153, Ուշտունեաց Բելու գիւղ*

*Գրիչ՝* Թումայ Մինասենց
*վայր՝* Աղթամար

*...Իսկ ես՝ ունայնս...և անարժան ծառայս ծառայից աստուծոյ* Մինասենց Թումայս *անուամբ ևեթ աբեղայս՝ լուայ զփափագ և զսէր և ետու գծագրել զաստուածախօս սուրբ աւետարանս քու երորդոյ իմոյ՝* Հայրապետի *սրբակրօն աբեղայի, յաստուածախնամ կղզիս* Աղթամար *կոչեցեալ, ընդ հովանեաւ երկնանման և գումբէթաձև սուրբ Խաչի տաճարիս, և Ամենափրկչիս, և սուրբ Սարգիս զօրավարիս, ի հայրապետութեան տեառն* Զաքարիայի, *և թուականութեան հայկազեան տումարիս ՊՂԵ. (1446)։ Եւ ընծայեաց զսա նուէր և ընծայ աստուածաբնակ սուրբ տաճարիս, որ է շինեալ յանուն սրբոյն Ցակոբայ հայրապետին, սուրբ Աստուածածնին, և սուրբ Ցոհաննէս աւետարանչին, առաջի* Կապուտկողան *բերդին, և է հռչակաւոր վանք և հրեշտակաբնակ կրօնաստան։*

*Ցայսմ ամի էառ ամիրզա* Ջհանշէն զԲաղդատ, *որ է* Բաբելոն, *և էր թիւն ՊՂԵ. (1446)։*

## 669

### ՃԱՇՈՑ

*Փիրղ. Նօտ., էջ 154, Բելու գիւղ*

*Գրիչ՝* Յովսէփ

*...Արդ, գրեցաւ սա ի թուին ՊՂԵ. (1446), ի դառնաբեր ժամանակիս...։ Եւ հրաման արարեալ [ղանն* Ջհանշահ*] ժողովեաց զամենայն թորգոմացիս յարևելից, և բազում զօրօք գնաց ի վերայ* Բաղդատայ, *և կռիւ եղեալ, և ոչինչ կարաց առնել, բայց ի զօրականացն կոտորեցաւ ԲՌ. (2000) այր ու ԳՃ. (300) պարոն։ Եւ գիտութիւն եղև մեզ, զի յաստուծոյ էր... զոր ասաց տէրն, թէ որ առնու սուր՝ սրով անկանի։*

*Ցիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր զմեղուցեալ գրիչս* Յովսէփ *սարկաւագ...։*

## 670

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրղ. Նօտ., էջ 154—155, Բելու գիւղ*

*Գրիչ՝* Մարգարէ
*վայր՝* Ըռըշտունեաց եկրիր, Բերդաձոր վանք

*...Արգ ես՝* Մարգարէս... *շնորհիւ տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի ի յարքունական երկիրս* Ըռշտունեաց, *ի*

վանքն, որ Բերդաձոր կոչի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, ի թուականիս Հայոց ՊՂԵ. (1446).

Եւ արդ ես՝ ունայնս ի բարեաց... Առաքել անուամբ և եթ աբեղայ՝ ցանկացող եղէ այս աստուածախօս տառիս ... և ընծայեցի զսա նուէր ի յանուանի և ի գերահռչակ ուխտս սուրբ Յակոբ, որ է յերկիրս Ոըշտունեաց, առաջի Կապուտկողան բերդին ... յառաջնորդութեան սուրբ ուխտիս Սիմէոն վարդապետին, որոյ տացէ Քրիստոս պարգև բարի ըստ վաստակոց իւրոց, զի մեծ երախտաւոր է մեզ և տեղւոյս ....

## 671

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Փիրղ. Նօտ., էջ 153—154, հատուց կցցի

Գրիչ՝ Վարդան
վայր՝ Վան

... Աւարտեցաւ սուրբ գիրքս այս յամի ՊՂԵ. ի թուականութեանս Հայոց (1446), ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի Վարդան երիցու, ի խնդրոյ Վարդան կրօնաւորի... և գրեցաւ սուրբ գիրքս ի քաղաքս Վան, ընդ հովանեաւ սուրբ առաքելոցս Պետրոսի և Պօղոսի, և տիրամօր սուրբ Աստուածածնին, և սուրբ Վարդան քաջ զօրավարին, և սուրբ հայրապետին Իսահակայ. ի կաթուղիկոսութեան տեառն Կիրակոսի և տէր Զաքարիայի, և մերոյս առաջնորդի սուրբ ուխտիս Վարագայ՝ Յոհաննէս եպիսկոպոսի և Զաքարիա վարդապետի. ի թագաւորութեան Ջհանշայի, որ ի յայսմ ամի էառ զանառիկ քաղաքն զԲաղդատն: Եւ յայսմ ամի եղև վախճան տիեզերալոյս և մեծ բաբունապե[տին | | | *

* Ցավոք, հիշատակարանի շարունակությունը, ուր, անշուշտ, եղել է նաև մահացած «մեծ բաբունապե[տի]» անունը՝ կորած է։ Այդ կորուստը, սակայն, անփոխարինելի չէ. կան հիմնավոր տվյալներ այն մասին, որ վախճանված այդ բաբունապետը եղել է Թովմա Մեծոփեցին։ Այդ մասին որոշակի տվյալ է հաղորդում Կիրակոս բանասերը իր «Պատմութիւն մեծի բաբունապետին Թումայի» աշխատության մեջ. (տես Գ. Ցովսեփյանի «Թովմա Մեծոփեցու կյանքը» աշխատությունը, էջ 1, 6, 11, ինչպես և նրա ուսումնասիրությունը՝ էջ ԻԵ.) Ըստ նրա Թովման մահացել է 1446 թվականի մայիսի 15-ին, Մասեաց ստորոտի Արկուռի գյուղում։

Գավիթ Բաղիշեցին ևս իր «Տարեգրութեան» մեջ այդ առթիվ գրում է. «Եւ եկեալ վարդապետն Թումայ միւսանգամ ի Մեծոփ, և սրբագրեաց զՍաղմոսն և զԱղօթամատոյց, և Կ. (60) ամ կացեալ անդ, և թուին ՊՂԵ. (1446) վախճանեցաւ» (տես Ղ. Փիրղալեմյանի «Նօտարք Հայոց», էջ 148)։

Ելնելով վերոհիշյալից առաջարկում ենք հիշատակարանի վերջին պարբերությունը լրացնել այսպես.

«Եւ յայսմ (1446)ամի եղև վախճան տիեզերալոյս և մեծ բաբունապե[տին Թովմայի Մեծոփեցւոյ]»։

Ըստ այդմ էլ հաջորդ անթվական հիշատակարանները, որոնցից առաջին երկուսը (№№ 672—673) գրել է ինքը՝ Թովմա Մեծոփեցին, իսկ մյուս չորսի մեջ (№№ 674—677) հիշատակվում է նա որպես կենդանի անձնավորություն՝ տեղադրեցինք 1446-ի թվաշարքում, նկատի ունենալով, որ այդ տարեթվից հետո նրանք չէին կարող գրված լինել։

672

## ԺՈՂՈՎԱԾՈՒ ՔԵՐԱԿԱՆԱԿԱՆ ՆԻՒԹԵՐԻ

Երևան 7117*

Խմբագրող՝ Թովմա Մեծոփեցի

ա

345 բ Արդ, յերես անկեալ աղաչեմ զքրիստոսակիր եղբարքդ և զբաղձալի ուսումնասէր մանկունքդ եկեղեցոյ, որք հանդիպիք նորընծայ աստուածային պարգևաց գրոյս, յիշեսջիք ի բարին Քրիստոս զճգնաւորն զԿիրակոսն՝ կենդանաթաղ գերեզմանին Գրիգորի Լուսաւորչին Վիրապայ, որ երեր զգիրս զայս ի Հայս ի Կաֆա քաղաքէն։ Եւ ես՝ մեղապարտս ի մանկունս եկեղեցոյ սուտանուն վարդապետս Թովմա՝ առաջնորդ սուրբ ուխտիս Մեծոփայ, վերստին սրբագրեցի զսա։

Եւ ետու գրել զսա հոգևոր որդոյ իմոյ Յովանէս սարկաւագի Արճիշեցոյ: Որք աւգտիք ի սմանէ սակս մասին ինչ պատահելով՝ ուղիղ սրտիւ աստուած-ողորմի ասացէք մեզ և ծնաւղաց մերոց, և աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։

Բայց դուք ընկալարուք զսա իբրև զտախտակն Մովսիսի և զաւետարանն Քրիստոսի. և մի ոք պախարակեսցէ զսա, զի ի վաղուց ժամանակաց նախատանս կրէաք յազգաց քրիստոնէից և այսօր ետ զսա աստուծոյ ի ձեռս մեր. և որ ոչ ընդունի զսա՝ պատասխանի ինքն տացէ Քրիստոսի աստուծոյ մերոյ։

բ

Գրիչ՝ Յովանէս Արճիշեցի

ա Զանպիտան և զսուտանուն գրիչ զՅովանէս՝ յիշեցէք ի Քրիստոս, և զծնողսն իմ ըստ մարմնոյ զՄկրտիչ քահանայ, որ ստացաւ զսայ ի վայելումն անձին իւրոյ։ Զոր տէր աստուածն մեր տացէ վայելել նմա զսայ ընդ երկայն աւուրբք, և զմայրն իմ յիշեցէք ի Քրիստոս, որ անչափ աշխատեցան վասն իմ։

673

## ԱՂՕԹԱՄԱՏՈՅՑ

Երևան 5212, ՀԱ.1927, էջ 38—39

Խմբագրող՝ Թովմա Մեծոփեցի

...Արդ, ես՝ մեղապարտս ի մանկունս եկեղեցւոյ՝ նուաստ վարդապետս Թովմայ՝ ի յերկրէ Քաջբերունեաց, ի յուխտէ սուրբ Աս-

* № 7117 ձեռագրում է գտնվում աղվանից այբուբենը, որ 1937 թվականին հայտնաբերեց անվանի հայագետ պրոֆ. Իլիա Աբուլաձեն և հմուտ ուսումնասիրությամբ հրատարակեց պրոֆ. Ա. Շանիձեն (տես *А. Шанидзе,* Новооткрытый алфавит кавказских албанцев и его значение для науки. և *И. Абуладзе*, к открытию алфавита кавказских албанцев, Тбилиси, 1938)։

տուածածնին, որ այժմ Մեծոփայ վանք վերաձայնի, սրբագրեցի զԱղօթամատոյցս յընտիր յընտիր աւրինակաց յաստուածաբան վարդապետացն և հոգիընկալ մերոյ ազգիս Թարգմանչացն, հրամանաւ սուրբ և երջանիկ վարժապետացն մերոց և համշիրակ հարազատ հոգևոր եղբարցն։ Եւ բաժանեցի յիններորդ աստիճան զաղօթս հասարակաց՝ դիւրտհաս և դիւրագիւտ ամենայն իմաստուն մտաց, և թողաք բարի յիշատակ զինուորեալ եկեղեցւոյս մեր Հայաստանեայց, ի փառս անմահ Թագաւորին Քրիստոսի և ի լուսաւորութիւն պայծառութեան հոգևոր որդոցդ աստուծոյ՝ գրոց աշակերտեալ անձանց և քահանայական դասուց միանձանց, ամէն։

Արդ, յերեսս անկեալ պաղատիմ աղաչանաւք և արտասուալից դիմօք, կողկողագին պաղատանաւք քրիստոսակիր մանկանց Սիոնի, որք գաղափարէք կամ ուսանել կամիք, և կամ սակս մասին սմոյ պատահիք, յաւժարութեամբ, առանց երկբայութեան և տարակուսի, ընդօրինակէք և մեզ ի սուրբ յաղաւթս ձեր յիշիցէք, և բազմամեղ և թարախալից հոգւոյ և մարմնոյ իմոյ ի տեառնէ աստուծոյ թողութիւն մեղաց խնդրեցէք։

Արդ, ես յետինս ի կարգաւորաց և անզեղջս ի մարդկան ազանց գրեցի զսա ձեռամբ իմով՝ ես Թումայ վարդապետս, յիշատակ հոգւոյ իմոյ և ծնողացն և ազգականացն, ամէն։ Բայց աղաչեմ զիմաստուն գաղափարողսդ զնկարագիր բանիցն մի այլափոխէք, զի բաւական է, որ ինչ փոխեալ եղև ի բազում աւրինակաց։*

## 674

## ԱՂՕԹԱԳԻՐՔ

Երևան 744

Գրիչ՝ Մկրտիչ

255 բ ...Արդ, ես ունայնս ի բարեաց և լցեալս ի չարեաց սուտա‖նուն վարդապետս ցանկացեալ եղէ աստուածային գանձիս և անգին մարգարտիս։ Եւ մեծաւ տենչմամբ և եռափափակ սիրով խնդրեցի ի վեհագոյն պետէն իմմէ և ի բարունապետէն Թումայի, որ փայլէ ի

---

* Թ. Մեծոփեցու նույն այս հիշատակարանի համառոտ մի փոփոխակը գտնվում է Երևանի № 6057 («Գիրք աղօթից») ձեռագրի 217 բ—218 ա էջերում։ Ստորև բերում ենք այն ամբողջությամբ.

«Արդ, ես՝ մեղապարտս ի ծնունդս եկեղեցւոյ Թովմայ անուն պիտակ վարդապետ, ի Քաջբերունեաց գաւառէ, ի սուրբ ուխտէն Մեծոփայ, ի կարգէ աշակերտաց մեծ վարժապետացն Սարգսի, և Վարդանայ, և Գրիգորի Տաթևացոյ, սրբագրեցի զգիրս հասարակաց աղօթից, և յիններորդ մասն բաժանեցի, և ետու ի ձեռս մանկանց եկեղեցւոյ։ Վասն որոյ յերեսս անկեալ պաղատիմ քրիստոսակիր եղբարցդ և ճշմարիտ ուղղագիր գրչացդ, որք ընդաւրինակէք և կամ ուսանիջիք՝ զնկարագիր բանիս այլ մի այլայլէք, աղաչեմ, և զսակաւ յիշատակարանս գրեսջիք, զի յամենեցունց ճանաչեալ լինի այս աւրինակ, զի և դուք գրեսջիք ի գիրն կենաց։ Եւ զմեզ անմոռաց յիշեսջիք յաղաւթս ձեր՝ հանդերձ հոգևոր և մարմնաւոր ծնողօք և հարազատօք, և թողութիւն մեղաց շնորհեցէք, զի և ինքն Յիսուս Քրիստոս ձեզ շնորհեսցէ զանճառ արքայութիւն, ամէն»։

յաւուրս մեր իբրև արեգակն ի մէջաւրէի յազգս Հայոց և յերկիրս Քաջբերունի, ի հրաշափառ սուրբ ուխտս Մեծոփայ: Որ և սա նորոգեաց ղաղօթնիս, որ էր ծեքեալ և եղծեալ ի սղալագիր գրչաց և անմիտ արանց։ Զոր հոգ յանձին տարեալ, ըստ իւրում* իմաստութեամբ և աւեալ շնորհացն, և յաւժընդակութեամբ հոգւոյն սրբոյ կատարեաց՝ զսղալն ուղղելով, և զաւելորդն բառնալով, և զպակասն լնլով, և եթող զանձ անկողոպտելի և յիշատակ բարի ի սուրբ եկեղեցի, յորոյ յիշատակն աւրհնութեամբ եղիցի։

256 ա Զոր և ես ան ‖ պիտանս, բազում անգամ աղաչեցի, զի մատամբ իւրով գրեսցէ, և վասն բնածին բարուցն իւր, զոր պարգևեալ էր հոգին աստուած, ձեռն ի գործ արկեալ և վասն անկյարմար նիւթոյն ոչ յաջողեցաւ, եւ գրել ձեռնասուն աշակերտին իւրոյ հոմանուն Թումայի։**

## 675

## ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՑ

«Արձագանք», 1888, № 8, էջ 75

Գրիչ՝ Գորգ

ա

Արդ, յերեսս անկեալ աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սուրբ գրոյս կարդալով կամ աւրինակելով, յիշեցէք յերկնաթռիչ յաղաւթս ձեր զիս՝ զփարթամացեալս մեղաւք և զծնողսն իմ, և սխալանաց և ամենայն պակասութեան անմեղադիր լերուք, զի կար մեր այս էր, և զահոյքն թափուր էին ի թագաւորէ....։

գ

...Գրեցաւ աստուածային գանձարանս, որ կոչի Հարցմունք Գրիգորի վեհիմաստ հռետորի քաջ իմաստասիրի և վարդապետի Հայոց, մանաւանդ ախոյանի ուղղադաւանիցն և ընդդիմի հարկանող չարափառացն դասուց, առ դուրս սուրբ Աստուածածնիս և Նախավկայիս Քրիստոսի սուրբ Ստեփան[ոս]ի, ձեռամբ բազմամեղ անձին Գորգի, ի վայելումն մանկանց Սիոնի...։ Յիշեցէք ի մեղսաքաւիչ յաղաւթս ձեր ստացող սորա [զԲարդողիմէոս աբեղայ, և զքեռին սորայ զԱստուածատուր հէրպետն սուրբ Առաքելոյս, և զծնաւղք սորա՝ զԹուրթէլ, և զմայրն Սըթլայնալ, և զեղբայրն զԲարունակ, և զքոյրն զԱստնխութլուն, և զիւր որդիքն զԿարապետն և զՀայրապետ սարկաւագն...]։***

Այլ արդ, անարդս ի սեռս մարդկային ազգի՝ անպիտանս և անարժանս ի մանկունս եկեղեցւոյ ոչ թէ վասն գրչութեան արհեստից

* Բնագրում՝ «որում» փխ. «իւրում»։

** Սույն հիշատակարանը գաղափար օրինակի գրչինն է, № 744 ձեռագրում այն արտագրված է 1638 թվականին, Յովհաննէս գրչի կողմից։

*** Փակագծերի մեջ առնված հատվածը ավելացված է այլ ձեռագրով։

և կամ յարագութեան մտաց և յորդորումն մատանց բուռն հարաք ի հանճարիմաստ և ի բազմայեղ մատեանս, այլ վասն սիրոյ և հրամանաց գերապայծ[առ] և երանաշնորհ և պանծալի րաբունապետիս մերոյ Թումայի քաջ հռետորի, զի բազում անգամ թղթով և պատգամաւ առաքէր. եւ մէք հարկեցաք՝ ըստ տգէտ և ըստ փանտքի անզօրութեան մերում աւարտեցաք։ Այլ և համշիրաք եղբայրս մեր Գրիգոր, և սա ես առաւել խնդրէր, վասն զի Գ. (Ծ) ոտո յայլ ոք եւ և ոչ առին յանձն ...։ Եւ մեք վասն եղբայրական գթոյ սորա և սրբասէր և մաքուր անձին ե բաղձանաց սրաին կատարեցաք զհայցելիս սորա ...։

## 676

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿԷԻՑ ԹՂԹՈՑ, ՍԱՐԳՍԻ ՇՆՈՐՀԱԼԻՈՑ

Կիպրոս կղզի, Նիկոսիա, Մ. Տ. Մ.

Գրիչ՝ Ստեփաննոս

[Գրեցաւ] յանապատիս, որ կոչի Զորոյբերդ, ընդ հովանեաւ սուրբ մաւրս Կոթուղիկէի և սուրբ Աստուածածնի և սուրբ վկային Մինայի... ստացաւ Սաեփանոս քահանայ...։

Յիշեցէք Շաննշահին, և քուերցն, և ամենայն ազգականացն մերոց ... Նաև զերջանիկ վարդապետն՝ զԹումա Մեծոփեցին, և զայլ վարդապետքն, որ յորդորեցին զմեզ ե աւգնական եղեն և ուղարկեցին յԵրուսաղէմ, այլ և զԿարապետ վարդապետն՝ զխոստովանահայրն, ... ե զերջանիկ հոգևոր հայրն մեր՝ զտէր Սարգիս եպիսկոպոսն Կոռիկոսու,... և զՂազար վարդապետն, և զՍարգիս կրաւնաւոր քահանայ, և զՅովհաննէս, և զԱւշին դպիր՝ որ կրկին աշխատեցան ի յուղորդելն և ի ծաղկելն ... և զխոճա Խտրշէն, որ յորդորեաց և օգնական եղև զարդարելոյն ...։

## 677

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Փիրդ. Նոտ., էջ 153, Վան, Էրէրին գիւղ

Գրիչ՝ Խալիֆայ

Վայր՝ Արճէշ

Փառք ... որ ետ կարողութիւն տկար Խալիֆայ քահանային հասանել յաւարտ [գրոյս] ...։ Արդ, գրեցաւ ի թուականիս Հայոց ՊՂԵ. (1446), ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և Գէորգեայ զօրավարին, և սուրբ Յակոբ հայրապետին, ի քաղաքս Արճէշ կոչեցեալ, ի հայրապետութեան տեառն Կիրակոսի և յառաջնորդութեան քաջ րաբունապետացն Թումայ վարդապետի և Կարապետ վարդապետի, որոց յիշատակ նոցին օրհնութեամբ եղիցի ...։ Զստացող սուրբ գրոցս՝ զԱբրահամ կրօնաւորն, և զհօրեղբայրն իւր զՎարդան վարդապետն, և զԵղիա սարկաւագն յիշեցէք ի աէր։

## 678

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

*Փիրղ. Նօա., էջ 148—151, Երզնկայի ս. Կիրակոսի վանք*

Գրիչ՝ Սարգիս
վայր՝ Երզնկայ

ա

*... Եւ ետ զսա* [Ներսէս *երէցն*] *ի վանքն* Նոր-Գեղկայ, *ի դուռն սուրբ Կիրակոսի, յիշատակ անջինջ հոգւոյ իւրոյ...։ Այլ և աղաչեմ յիշել ի տէր զերջանիկ վարդապետն՝ զքաղցրաձայն փիլիսոփայն* զՅովհաննէս՝ *զխարազանազգեաց ճգնաւորն՝ զառաջնորդ վանացս սուրբ Կիրակոսի, որ կամակից և պատճառ եղև գրոցս գրելոյ և յորդորող այսմ հոգևոր գործոյ, և* զՅովհաննէս *աբեղայն՝ զեղբօրորդին իւր, և* զՅովհաննէս *աբեղայն՝ զհոգևոր սիրեցեալ որդին իւր, և զայլ ամենայն աբեղայքն և զմիաբանք վանացս։ Դարձեալ, աղաչեմ յիշել ի տէր զգրողք գրոցս* զՄինաս *սարկաւագն, որ զառաջքն գրեաց ԺԶ. (16) տետր, և* զԵրեմիայ *աբեղայն, որ Ժ. (10) տետր գրեաց, և զտէր* Խաչատուր *վարպետն, որ Ը. (8) տետր գրեաց, և* զՅոհաննէս *վարդապետն, որ Ա. (1) տետր գրեաց, և զիւր աշակերտքն՝* զԱստուածատուր *աբեղայն, որ Զ. (6) տետր գրեաց, և* զԱւետիք *աբեղայն, որ Դ. (4) տետր գրեաց։ Եւ ես՝ բազմամեղ և անիմաստ* Սարգիս, *որ զԴ. (4) տետրակ՝ ի վերջք գրոցս գրեցի և զցանկն ի յառաջքն, նաև* զՄարկոս *աբեղայն, որ Դ. (4) տետր գրեաց, և* Ներսէս *աբեղայն, որ Ա. (1) տետր գրեաց։ Եւ այսոր պատճառն՝ մին վասն ժամանակիս, և մին, զի օրինակն հատեալ եղև, և այլք ոմանք զնոյն գիրքս գրէին, և մին վասն ջերմ սիրոյն, զոր ունէր* Ներսէս *քահանայն։ Այլ և աղաչեմ յիշել ի տէր աստուած զտէր* Խաչատուրն, *որ ետ զօրինակն* Մինաս *սարկաւագին, գրեց զԴ. (4) ամսոյն, և զայլն տէր* Գրիգոր Կարպեցին *ետ ....։*

*Եւ զի գրեցաւ սա ի ՊՂԵ. (1446) ամի Թուականիս Արեթականի, ի դառն և յանրաբի ժամանակիս, որ վասն ծովացեալ մեղաց իմոց խստացաւ սիրտ իշխանին* Երզնկա *քաղաքիս... և արար խորհուրդ ընդ դանուշմանսն, զի քակեսցեն զեկեղեցիսն՝ զքաղաքիս և զգեղորէից, նաև զվանորայս։ Եւ ինքն էլ բազում զօրօք և գնաց ի վերայ* Կամխայ *բերդին, և բան տուեալ էր մօլնանուն, թէ յորժամ զբերդն առնու՝ առհասարակ զԲ. (2) երկրիս զեկեղեցիքն քակեսցեն...։ Իսկ միածին որդին աստուած ոչ արար անտես զգնալքս պատուական և սուրբ արեամբն իւրով, այլ գթացեալ փրկեաց զեկեղեցիս քրիստոնէից։ Մինչ զի ակներև տեսեալ էր իշխանն զսուրբն Սարգիս սպիտակ երիվարօք և այլ սուրբք ընդ նմա, որ փութացուցանէին զնա երթալ ի բերդն՝ զի առցէ։ Եւ նա եկեալ մերձ ի բերդն ի գիշերի և կապեաց իւրովի զպարանն ի պարանոցն իւր, որք քարշեցին զնա ի վեր և արկին ի բանտ։ Եւ զօրքն եկեալ փախստական ի քաղաքս՝ ըն-*

դունեցան զորդին նորա իւրեանց պարոն, և դարձեալ կրկին արարին զառաջին խորհուրդն քակելոյ զեկեղեցիսն։

Եւ յաւուրս յայնոսիկ, իբրև յետ ամսոյ միոյ, եղբայր իշխանին Շեխ-Հասանայ եկն յօտար երկրէ և եմուտ ի քաղաքս Ի. (20) արամբ, և տեսեալ զկապուտն, որ ի ղլուխն քրիստոնէից և զնեղութիւնս, ելեալ այն Ի. (20) արամբն, և գնացեալ ի դուռն պալատին, և կալեալ զորդի իշխանին՝ ինքնին տիրեաց քաղաքիս։ Եւ հրաման արար, զի քրիստոնեայքն զկապուտն ի գլխոյ իւրեանց ձգեսցեն և համարձակ զօրէնս իւրեանց կատարեսցեն։

Եւ յետ աւուրց ինչ Կամխայ բերդի պարոնն եհան զՇեխ-Հասան և արձակեաց, և մօլնանին այս քաղաքիս դարձեալ թուղթ յուղարկեցին ի ծածուկ առ նա, զի եկեսցէ ի քաղաքս, և նոքա կոտորեսցեն զդուռն և առցեն ի ներս, և սպանցեն զեղբայր նորա, և զառաջին խորհուրդն կատարեսցեն։ Իսկ եղբայր նորա Մահմուտ պարոնն իմացեալ զայս, և ըմբռնեաց զամենեսեան՝ զգլխաւոր մօլնան կախեաց և զայլ բազումս չարաչար տանջեաց, զինչս և զապրանք նոցա էառ, և յայլ երկիր վտարեաց։

Եւ յետ սակաւ աւուրց ելեալ Շեխ-Հասանն ի Կամխայ՝ երթայր յերկիրն իւր՝ ի Դերջան. և եղբայր նորա իմացեալ առաքեաց զօրս և կալաւ զնա և եդ ի բանտ երկաթի կապանօք. և խաղաղացաւ նոցա չար խորհուրդ...։Կ կատարեցաւ բանն Գաւթի, թէ՝ Գուբն, զոր փորեցին և պեղեցին՝ ինքեանք անկան ի խորխորատն, զոր գործեցին։

...Գործեցաւ այս ի յեղանակէն աշնան, մինչև ի յեղանակն գարնան. իսկ ի գալ եղանակին ամարան եկն ի վերայ քաղաքիս եղբօրորդի Մահմուա պարոնին... Ճիհանշիրն բազում և շատ զօրօք, և խսարեաց զքաղաքս ամսոյ Իէ. (27)-էն մինչև յօգոստոս Ժ. (10)։ Եւ քար և քանդ արար զերկիրս Եկեղեաց, և գեղորայսն զամէն այրեց, և ելեալ յերկրէս յայլ շրջակայ գաւառսն՝ զամենայն աւերէ։ Իսկ մարդիկ երկրիս յօտար երկիր վտարեցան, մինչ զի անբնակ եղև երկիրս ի մարդկանէ, և դեռ յայս ալեաց միջի կամք իբրև զնաւ բեկեալ, և թէ զինչ լինելոց է յառաջիկայն՝ աստուծոյ է գիտելի։

Արդ, մի ոք իշխեսցէ հանել զսուրբ մատեանս...։ Իսկ եկեղեցպան և այլ աբեղայքդ սուրբ Կիրակոսի վանացդ՝ խնամ տարէք գրոցս, զի ի ժամանակի փախստեան կամ խռովութեան զգիրքս ի քաղաք տարէք և պահեցէք, և ի ժամանակի խաղաղութեան [բերէք ի վանս] և ընթերցէք, և մի ախեալ և փակեալ պահէք, զի գիրք փակեալ կուռք են...։

Բ

Ո՜վ դառն ժամանակիս, զի զօրք բազում պաշարեալ են զքաղաքըն Եզնկայ։

Ո՜վ եղբայր, անմեղադիր լեր խոշորութեան և սխալանաց գրոյս, մին՝ զի անարհեստ էի ի գործ իբրև, և մին՝ զի ի խսար էաք և ի տրտմութիւն, զի ամենայն գեղորայս Եզնկոյ և զվանորայսն, նաև զմիաբան-

քըն այրեցին հրով, այլ և զվաստակն և այգիքն և զամենայն ինչ՝ զոր կերան և առին, զոր առ ոտն կոխեցին, և տարակուսեալ կաք․

գ

Ո՜վ եղբարք, անմեղադիր լերուք խոշորութեան և սխալանաց գրոյս, զի յաւ՜ է ի փախ կաք... և մարդիկ երկրիս ամենեքեան յօտար երկիր վտարեցան, և երկիրս մնաց անբնակ։

Զստացող գրոյս զՆերսէս քահանայն յիշեցէք ի բարին... Նաև զհեղահոգի նկարող սորա՝ զՍամուէլ վարդապետն, ամէն։

## 679

### ՃԱՇՈՑ

Կ. Պոլիս, Անտոնյան վնք. 6, Մ.Տ.Մ.

Ծաղկող և կազմող՝ Գրիգոր եպիսկոպոս Հասընքէֆոյ
վայր՝ Արապկիր

ա

Արդ, գրեցաւ... ձեռամբ գրչի Մինաս սարկաւագի, ի յերկիրն Արապկերոյ, ի մեծ հռչակաւոր ուխտն Փրկչին, զոր տէր ի կերպարանըս երևեալ եղին եղջերաւորի Ապլակիտոսի, և խաչս առ նա նմանի յեղջեւրսն, և եղեալ ձայն ի խաչէն առ Ապլակիտոս և ասէ՝ Զի՞ հալածես զիս։ Եւ նա... մկրտեցաւ ամենայն տամբ իւրով և անուանեցաւ Ստաթէոս, և շինեաց զտեղին վանս հռչակաւոր և անուանեաց Փրկչի վանք...։

Աւարտեաց սուրբ գիրքս ... ի թուականութեանս Հայոց տումարի ՊՂԵ. (1446) ամի, ի հայրապետութեան Կիւլիկեցւոյ տէր Կարապետի, և ի թագաւորութեան Եգիպտոսի սուլթան Տաճիրի, ազգին մահմեդականի։

Արդ, ես Գրիգոր եպիսկոպոս Հասընքէֆոյ* ետու գրել զգիրքս քըւերորդւոյն իմոյ Մինաս սարկաւագին, և ծաղկեցի և կազմեցի ձեռամբ իմով, և ետու տէր Կարապետ կաթողիկոսին։

բ

Ստացող՝ Կարապետ կաթողիկոս

Փառք... տէր Կարապետ կաթողիկոս ամենայն Հայոց... կրկին նորոգեալ զաթոռ մայրաքաղաքիս Կիւլիկոյ.. և պատրիարգ առաքելաշնորհ սուրբ աթոռոյս՝ հաստատեալ ի յաստուածարնակ սուրբ ուխտըս տէր Պօղոսի, որ կայ հարաւակողմն քաղաքիս Սըսոյ, ընդ հովանեաւ Վանկոյ սուրբ նշանիս...։ Ստացաւ զսուրբ մատեանս... յիշատակ [իւր], և եղբաւրն պարոն Առաքելին, և եղբաւրորդոյն տէր Գրիգորին: [Այնուհետև նկարագրված է, որ գտել է Լուսաւորչի կորած աջը, հաստատել Սսոյ աթոռը, ուխտ է գնացել Երուսաղէմ, որտեղ Հայոց վանքն ազատել է պարտքից. գնացել է նաև Եգիպտոս]:

* Մեքենագրված է «Հարսընքէֆոյ»։

ՊՂԶ 1447

680

ՇԱՐԱԿՆՈՑ

ՔՑԲ 37, էջ 30

Գրիչ՝ Մաքէոս
վայր՝ Այրիվանք

... Գրեցաւ եղանակաւոր տառս Շարականաց ի Թուաբերութեանս Հայոց ՊՂԶ. (1447), ի դառն և ի չար ժամանակի, յորում նեղիմք յանաւրինաց և յանիրաւ պահանջողաց, ի հայրապետութեան տեառն Գրիգորի՝ ի յաթոռ սուրբ էջմիածնի Վաղարշապատ Այրարադեան նահանգի, ի խանութեան Ջահանշանի։

Արդ, ես... Մաթէոս գծեցի զմագաղաթս և գրեցի զսա ձեռամբ իմով... և ետու զսա ձեռնասնունդ աշակերտի մերոյ Յովանէս սրբասնունդ կրաւնաւորի...։ Եւ ես Յովհաննէս աբեղայս ետու ծաղկել զսա ոսկենճաճանջ երանկաւք և ազգի ազգի գունաւք և պատկերաւք...։

Արդ, գրեցաւ սա ի սուրբ գերահռչակ... սուրբ ուխտս Այրիվանքս, ի սկիզբն և մայրն ամենայն վանօրայից, ընդ հովանեաւ սքանչելագործ տիգին, և աբեամբ ներկեալ անմահին Ցիսուսի սուրբ գեղարդեանն, և այլ բազմութեան սրբոց..., ի լաւ և յընդիր աւրինակէ առաջին իմաստնոց և վարժապետացն Սիսոյ, զոր էր գրեալ ձեռամբ Յովհաննէս եպիսկոպոսի Անոյ, մականուն Ոսկեփոր վերաձայնելս...։

681

ՏՕՆԱԿԱՆ

Թաւրիզ, Մասնաւորաց, 56, ԱՑԹ, էջ 122--123

Գրիչ՝ Մաթէոս
վայր՝ Ագուլիս

527բ—529բ ... Զոր տեսեալ զայս ամենայն վայելչութիւնս հրաշից երիցս երանեալ, հաւատարիմ, հեզհոգի, հանճարամիտ, հոգով աղքատասէր, նաև աստուածասէր քահանայապետն Քրիստոսի և արհիական մեծ եպիսկոպոսն Գողթան վիճակիս տէր Ստեփաննոս գովելին, բորբոքեալ ի սէրն աստուծոյ, զի բազում ժամանակաց ջերմ հուսով և եռանդնափափագ սիրով ցանկացաւղ եղեալ այսմ աստուածային սուրբ գրոցս, որ կոչի ամենալի Տաւնական։ Զոր և սա ունի յինքեան լիակատար զպատմութիւն և ըզգովասանութիւն տաւնից տընաւրինականացն Քրիստոսի աստուծոյ մերոյ՝ զծննդեանն և զյարութեանն և որ ըստ

կարգին, այլ և գլխշատակ սուրբ և փառաւորեալ աստուածածնին և զաստուածաբնակ սուրբ առաքելոցն և զաստուածառաք սուրբ մարգարէիցն, և զհոգիացեալ սուրբ հայրապետացն, և զարեամբ շաղախ նտհատակեալ սուրբ մարտիրոսացն, և զուղղափառ սուրբ թագաւորացն, և ըզճգնազգեաց սուրբ միանձնացելոցն, և զվսեմական սուրբ վարդապետացն, և զարիացեալ սուրբ կուսանացն, այլ և զպատուէր քարոզութեանն յաւուրս պահոց, զոր գրեցին սուրբ վարդապետքն, զի հանապազ ընթեռնուն սուրբ քահանայք ի լսելիս աւրհնեալ ժողովրդեան, զի լսելով զայս ամենայն խրատք պատուիրանացս հաստատեսցին ի հաւատս ուղղափառս, զոր ունին ի սկզբանէ։ Եւ յիշեսցեն առաջի Քրիստոսի յաղօթսն իւրեանց զստացող սուրբ գրոցս զտէր Ստեփաննոս արհեպիսկոպոսն, և զծնաւղսն իւր ի Քրիստոս հանգուցեալ՝ զհայրն Աղպուղա, և զերջանիկ մայրն իւր Խուանդ-Խաթուն, և զամենայն արեան մերձաւորս իւր՝ զկենդանիս և զհանգուցեալս։ Նա և զերիցս երանեալ երջանիկ և քաջ հաւտապետն նոյն ասացեալ Գողթան աթոռոյս՝ արհեպիսկոպոս զքեռին իւր զտէր Տէրունական՝ զառ ի Քրիստոս հանգուցեալն, հանդերձ ծնաւղաւքն իւրովք, եղիցին յիշատակք նոցա աւրհնութեամբ...։

Եւ արդ, ես՝ ունայնս ի գործոց բարեաց և փցունս ի գրչաց Մաթէոս սուտանուն քահանայ, որ անուամբ եմ կոչեցեալ, բա[յ]ց հոգւովս եմ ես խաւարեալ, եղէ անարժանս ես թախանձեալ ի նոյն վերասացեալ տէր Ստեփաննոսէն, որ և բազում սիրով հրաւիրեաց զմեզ առ ի գրել զսուրբ Տաւնականս։ Իսկ մեք ոչ կարացաք ընդդիմանալ մեծի հրամանաց նորա, վասն զի տեսաք զեռափափագ սէր նորա, որ առ հոգեորսն ...և գրեցաք զսուրբ Տաւնականս զայս ըստ իմում կարի, դրոշմամբ մեղսամած մատամբ անձինս կործանելոյս՝ բազում և պէս պէս աշխատանաւք, զի մեծաւ չարչարմամբ և անժուժելի տքնութեամբ հասուցաք զսուրբ Տաւնականս առ ի յաւարտ կատարման, զոր միայն տէրն իսկ գիտէ զդիտումն մտաց մերոց, եթէ վասն ոյր ուրուք մտածման գծագրեցաք զսուրբ դիրքս զայս։

...Գրեցաւ սուրբ Տօնականս այս ի գեղաքաղաքս Ագուլիս գովելի Գողթան վիճակիս, ի նոյն իւրոյ աթոռիս, ընդ հովանեաւ առաքելայարկ խորանիս, աստուածաբնակ տաճարիս Քրիստափորի մեծ նահատակիս և Թումայի առաքելոյ սքանչելագործ հրաշալի աջիս, առ ոտս երջանիկ նոյն վերասացեալ տէր Ստեփաննոսիս, ի թուականութեանս Հայոց ՊՂԶ. (1447), և ի հայրապետութեան մեծի աթոռոյ աստուածայարկ սուրբ էջմիածնին՝ երիցս երանեալ տեառն Գրիգորի խարազն ճգնաւորի, նաև երկրորդ լուսաւորչի, զոր տէր աստուած անսասան պահեսցէ և անզրթելի ի յայսմ աշխարհի...։

Նա և ստացւող սուրբ Տաւնականիս տէր Ստեփաննոս Գողթան վիճակիս, նախնեաւն իւրով՝ տէր Տէրունականաւ, և ամենայն ազգայնօքն իւրովք, ողորմութեամբ քո Քրիստոս, մասնակից լիցին ամե-

*նայն գերերջանիկ սրբոցն, որք հաւաքեալ կան աստ ի հրաշափառ ամենայն սուրբ Տօնականիս...։**

## 682

## ԱՒԵՏԱՐԱՆ

*ՄՏՎ 181 (543), հա. Ա. սյուն. 687—688*

*Գրիչ՝* Գալուստ
*վայր՝ ի* Ձորս Քեղոյ, Աղջոց վանք

258 ա *...Որում բաղձացայ ես յետինս* Գալուստ *եղկելի, վշտաւք և մեղաւք զանազանեալ անձամբ գաղափարեցի զսուրբ աւետարանս ի ստուգաբան և յընտիր աւրինակէ, որ ունի ղրանս սեփական և ստորակէտ և զտնհատ՝ յստակ և անթերի, ի յայս վերջին գառն և յանբարի ժամանակի։*

*Գրեցաւ սուրբ աւետարանս ի թուականիս Հայոց ՊՂԶ. (1447)**, ի հայրապետութեան տեառն* Գրիգորի, *և ի թագաւորութեան Վրաց* Գաւ[ր]գէ, *և ի զաւնութեան* Ջահանշահի՝ *որդոյ* Ուսուփին, *ի գաւառս* Արարադեան, *ի* Ձորս Քեղոյ, *ի վանքս* Աղջոց, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Կաթուղիկէիս, և սուրբ Ստեփանոս Նախատակիս, և սուրբ Աջոյն, և Թորի սուրբ Նշանիս, և Արամունից սուրբ Խաչիս, և Թեատ սուրբ Գրիգորիս, և այլ բազմահաւաք սրբոցս, որ աստ կան։ Գրեցաւ ձեռամբ անիմաստ և անարուեստ փծուն գծողի* Գալստի՝ *անուամբ միայն աբեղայի, և ձեռնտուութեամբ եղբաւրս իմոյ* Մխիթար *աբեղայի...։*

## 683

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 8875*

*Գրիչ՝* Յովանէս
*վայր՝* Տփխիս մայրաքաղաք

286 ա *Շառաւիղն աւրհնութեան և սեռն բարենշան, աստուածասէր և բարեպաշտ և երկիւղածն յաստուծոյ* Ներսէս *ցանկացող եղեալ այսմ կենասունակ և մեռսաքաւիչ տառիս և աստուածախաւս մատենիս։ Զի յետ ստանալոյ բազում զգեստուց և սպասուց եկեղեցւոյ՝ յաւել և*

---

** Գրքի բոլոր ճառերից հետո գրիչը թողել է համառոտ հիշատակագրություններ (ընդամենը 125 հատ), որոնցից մի քանիսը հրատարակել է Հ. Աճառյանն իր «Ցուցակ հայերէն ձեռագրաց Թաւրիզի» աշխատության 121—122 էջերում։*

*Այդ հիշատակագրությունները ոչ մի նոր բան չեն ավելացնում գլխավոր հիշատակարանի տվյալներին։*

*** Բնագրում՝ ՊԼԶ., սակայն հրատարակիչը իրավամբ ուղղել է, նկատի առնելով, որ Ղ-ի ծայրը քերված է, և որ հիշատակված անձինք ապրել են ոչ թե ՊԼԶ. (1387), այլ ՊՂԶ. (1447) թվականին։*

զսա ի գանձս աստուածայինս, ի մտի ունելով զբան մարգարէին, որ
ասէ՝ Երանի որ ունիցի զաւակ ի Սիոն և յընդանի յԵրուսաղէմ,
286 բ ստացաւ զսուրբ աւետարանս յիշատակ հոգւոյ իւրոյ, և ծնաւղաց ‖
իւրոց, և ամենայն արեան մերձաւորաց իւրոց։

Արդ, որք հանդիպիք սմա տեսութեամբ, ընթերցմամբ կամ աւ-
րինակելով, յիշեցջիք սրտի մտաւք առաջի Քրիստոսի զվերոյգրեալ
ստացաւղ սուրբ աւետարանիս զՆերսէս, և զհայրն իւր զԿարապետ քա-
հանայ, և զմայրն զԴաւլաթ, և զկենակիցն իւր զԱսլմէլիք, և զեղբարսն
զՅովսէփ քահանայ և զՅուսիկն, և զեղբարորդին իւր զՍուլթանշէն, և
զհաւրեղբայրն նորին զտէր Յովհաննէս, և զորդին զտէր Մխիթար, և
մօրքվերորդին զԿարապետ, և զպապն իւր զտէր Մաթէոս, և զքոյրն
զՇնահավորն, և զքվերորդին զԱմիր-Մէլիքն, և զամենայն արեան մեր-
ձաւորսն՝ զկենդանիսն և զհանգուցեալսն։ Եւ որք յիշէք բարի յիշ-
մամբ և աներկբայ հաւատով՝ յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ
մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

287 ա Ընդ նոսին, որք վերոյ գրեցան, յիշեսջիք և զիս՝ զՅովանէս մե-
ղապարտ գրիչս և զծնաւղսն իմ, որ զսուրբ աւետարանս գրեցի և աւար-
տեցի ի մայրաքաղաքս Տփխիս, ընդ հովանեաւ կամակատար սուրբ
Աստուածածնիս, ի թվիս Հայոց ՊՂԶ. (1447).

684

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

**Երևան 2130**

Ստացող՝ Յովանէս Կաֆայեցի

ա

425 բ Ի թվ. ՊՂԶ. (1447)....

Արդ, գրեցաւ առաքելական և մարգարէական, աւետարա-
նական և վարդապետական, աստուածաբուխ հոգիալից տառս այս ձե-
ռամբ Տէրունական[ի] և Յոհաննէս կրօնաւորի Սանահ[ն]եցոյ, ի խնդրոյ
սրբասէր և հեզահոգի գրոց հետևողի [Յովանիսի եպիսկոպոսի Կա՞]ֆա-
յեցոյ, ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ ծնողաց իւրոց։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք այսմ հոգելից բու-
րաստանիս կամ կարդալով կամ աւրինակելով, վասն սիրոյն Քրիս-
տոսի յիշեսջիք յաղաւթս ձեր զՅովանէս եպիսկոպոս Կաֆայեցիս, և
զպապքն իմ զԳալուստ երէցն և զխաւճայ Ղազարն, և զհայրն իմ
զպարոն Գէորգն, և զմայրն իմ զՇիրին-Մէլիք, և զհաւրեղբայրն իմ
զտէր Դանիէլ աբեղայն, և զեղբայրքն իմ զՆիկողայոսն և զԿարապետն
և զՄկրտիչն, և զամենայն մերձաւորքն և զազգականքն իմ. և որ
սրտի մտօք յիշէ զմեզ և ողորմի ասէ՝ տէրն մեր Յիսուս Քրիստոս
իւրն ողորմեսցի աստ և ի հանդերձեալս, ամէն, եղիցի, եղիցի։

Դարձեալ, աղաչեմ զամենեսեան յիշեսջիք յաղաւթս ձեր զՀէշու-
աեցի Մխիթար էրէցն, որ զգիրքս կապեց և շատ զահմաթ քաշեց,
սրտի մտօք ողորմի ասէք։

Բ

Գրիչ՝ Տէրունական

425 ա Ո՜վ, սուրբ վարժապետք, որք հանդիպիք այսմ հոգելից դրախ-
տիս, յիշեսջիք զսակաւ աշխատողս՝ զՏէրունական տրեղայս։*

685

ԱԻԵՏԱՐԱՆ

«Թորոս Աղբար», Բ., էջ 433, Տիգրանակերտի ս. Սարգիս եկեղեցի

Գրիչ
վայր՝ Արծկէ

Գրեալ ի քաղաքն Արծկէ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի, ի հայրապետութեան տեառն Կիրակոսի ընդհանուր Հայոց կաթողիկոսի, ի թագաւորութեան Ջհանշանի՝ որդւոյ Ղարա-Եուսուֆի, ի թվականի մերում Պ. և ՂՋ. (1447) ամի, յորում ժամանակի յոյժ հարկապահանջութեամբ տառապի ազգս Հայոց...։

686

ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 4436

Գրիչ՝ Մինասենց Թումայ
վայր՝ Աղթամար

138 ա ...Արդ, այսմ աստուածեղէն և երկնապարգև գանձիս և լու-
սափայլ և մաքուր մարգարտիս ցանկացաւղ եղև ոՃն սրբասէր քա-
հանայ՝ պատուական ե աստուածային ձրիւքն բարգաւաճեալ, որոյ
անունն Մովսէս ճանաչի, ի գեօղաքաղաքէն Ուրանից... յիշատակ
բարի հոգոյ իւրոյ, և ծնօղացն իւրոց՝ հաւրն իւրոյ Թումայ քահանա-
138 բ յին և մաւրն Դուռմէլիքին, և եղբաւրն || իւրոյ Գրիգորին, և կենա-
կցացն իւրեանց Նիկարին և Շնօնվորին, և զաւակացն իւրեանց՝ կեն-
դանեացն և հանգուցելոցն ի Քրիստոս՝ Յովանիսէն և Աստուածատրուն,
Մելքեսէթին և Սանմէլին, և քըւերցն Գօճարին և Սիֆաթին, և այլ ամե-
նայն արեան մերձաւորաց նոցին...։
Եւ արդ, ես՝ ... Մինասենց Թումայս, անուամբ և եթ աբեղայ՝ եղ-
կելի ոգիս, տեսի զփափագ և զսէր Մովսէս քահանային, զոր ունէր առ
հոգեորսն, ե իմով ծերացեալ անձամբս և տկարացեալ մարՃնովս յանձն
առի գրծագրել զսա իմով իսկ մեղսամած մատամբս, և ամենակարող
զաւրութեամբն աստուծոյ կատարեցի զաստուածախօս կըտակս զայս
139 ա յաստուածապահ կըղզիս Աղթամար, ընդ հովա || նեաւ գերահռչակ և

* Ձեռագրի բոլոր 425 թերթերը կրկնագիր մագաղաթ են, նախկին գրերը ջնջված են շատ խնամքով, հազիվ որոշ թերթերի վրա նկատվում են նրանց թույլ հետքերը, ըստ այդմ թերթերի մի մասի գիրը ուղղագիծ—թեքական երկաթագիր է, իսկ մյուս մասինը՝ շատ մանր երկաթագիր։

երկնանման սուրբ Խաչի տաճարիս, և սուրբ Փրկչիս, և սուրբ Աստուածածնին, և սուրբ Սարգիս զաւրավարիս, ի հայրապետութեան տեառն Զաքարիայի, և ի թվականութեան Հայկազեան տոմարիս ի յութհարիւր և ինըսուն և վեց (1447)...։*

140 բ ... Աստուած-սղորմի ասացէք և ինձ՝ մեղուցելոյս Թումայի սոսկանուն աբեղայի՝ գըծագրողի սորին, և ծնաւղացն իմոց՝ Սիմէոնին և Արղունին, և քուերցն իմոց՝ Ոսկի-Տիկնէն և Անղալատին, և որդոց նոցին՝ Հայրապետ աբեղային և Յոհանիսէն և Աւետիսին, և երախտաւոր քեռոյն իմոյ՝ ըսնուցողին և ուսուցողին զիս՝ Թումայ միայնակեցին, և այլ ամենայն արեան մերձաւորացն մերոց...։

687

ՃԱՇՈՑ

ԲՑՎ 416

Գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Աղթամար

Փառք... որ ետ կարողութիւն ... մեղսամած անձինս հասանել յաւարտ սորա...։ Եւ արդ, գրեցաւ սուրբ տաոս և աստուածախաւս սուրբ կտակս յաստուածախնամ սուրբ կղզիս Աղթամար, ի հայրապետութեան տեառն Զաքարիայի կաթողիկոսի, ի մեծ թուականիս Հայոց ՊՂԶ. (1447), ձեռամբ... Ստեփանոս աբեղայի, յիշատակ ինձ և ծնաւղաց իմոց Գուլազիզին և Մըչանին...։

688

ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 4922

Գրիչ՝ Իսրայէլ
վայր՝ յերկիրս Մոկաց, ի գեւղս Փոսավանք

361 բ ... Կատարեցաւ սուրբ աւետարանս յերկիրս Մոկաց, ի գեւղս, որ Փասավանք կոչի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սուրբ Գրիգորին և Փրկչին, եթէ լսեալ էիք ի պատմութենէ սորայ, զոր Գ. (3) խնձոր է բերեալ ի դրախտէն Ադամա կրաւնաւորի միոյ։

362 ա Այլ և գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ Իսրայէլ քահանայի ...յընտիր և ի ստո[յ]գ աւրինակէ Կիլիկեցւոց, կենօք տառապանօք և բազում պանդխտութեամբ, ի մեծ թուիս Հայոց ՊՂԶ. (1447), ի կաթողիկոսութեանն հայկազան սեռի տեառն Զաքարիաի Աղթամարցոյ, զոր տէր աստուած պահեսցէ անսասանելի զաթոռ հայրապետական և

* Այս՝ 139 ա էջի շարունակության և հաջորդ՝ 139 բ—140 ա էջերի վրա գրիչը աստվածաբանական տարտամ դատողություններ է անում և կրկին անգամ հիշատակում տացողի արդեն հիշատակված ազգականներին՝ մեկ առ մեկ։ Այդ ընդարձակ մասը դուրս ենք թողնում։

զԹագաւորական, զի յիշելով զտնուանս նոցա սասանել սաքրին և ոչ ևս երբէին Թշնամիք ճշմարտուԹեանն.

Եւ արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի վայելումն մանկանց սուրբ եկեղեցւոյ։

Զոր տեսեալ զայսպիսի գանձս աստուածային լուսով զարդարեալ՝ ցանկացաւ աստուածասէր և հեզայհոգի տանուտէրն Թովմայ և

362 բ Բ. (2) եղբայրն իւր՝ Գրիգորն և Ղազարն, ‖ ի դեղջէն Աշնայ. և ետ գրել զսա ի հալալ և յարդար վաստակոց իւրոց, յիշատակ հոգւոյ իւրոյ. և ծնա[ւ]ղացն՝ հաւրն Սանփանին* և մօրն Շնոհորին, և եղբարցն Գրիգորին, և կենակցին Փաշին, և որդւոյն Հալիֆին, Ղազարոսին, և կենակցին իւրոյ Սուլտանին, և քուերացն Մարգարտին և Արուսին և Նարընջին, և եղբաւրն Առաքելին, որ յառաջ փոխեցաւ ի Քրիստոս, իբրև զծաղիկ անԹառամ...։

363 բ Գարձեալ, կրկին մաղԹանօք աղաչեմ ես՝ հողացեալս ի գերեզմանի, անարժանս ի գաս կրօնաւորաց Իսրայէլ՝ զամենայն ընԹերցողքդ սուրբ աւետարանիս, զի յիշման արժանի առնէք զանարժան գրիչս զԻսրայէլ, և զհայրն իմ զԱմիրշահըն, և զմայրն իմ զՇնոհորն, և զեղբարքն իմ զՍանակն և զՅովնանն, և զքուերքն իմ՝ զփոխեցեալքն ի Քրիստոս՝ զՄարգարիտն և զԽէրէքն և զՄրջանն, և զանդրանիկ եղբայրն իմ զՍանակն, զոր յառաջ փոխեցաւ ի Քրիստոս։ Պահեա տէր աստուած զվերջինս յամենայն չարէ, ամէն։

Այլ և զամենայն արեան մերձաւորս իմ, և զերախտաւորսն, և զուսուցիչքն իմ՝ զԹովմայ քահանայն և զԹադէոսն և զԱռաքելն, այլ և զերախտաւորք վարդապետքն իմ՝ զտէր Մարգարէն և զտէր Վարդան մաղդասին, և ասացէք բոլոր հաւատով զաստուած-ողորմին, և ասացողացդ աստուած ողորմեսցէ, ամէն։

Այլ և յիշեցէք ի Քրիստոս աստուած զԳաշտի Պետրոսն, որ ասէր՝ տէր Իսրայէլ, զիս յաւետարան գրէ, քեզ վարձք է...։**

689

## Գ Ա Ն Ձ Ա Ր Ա Ն

Երևան 6360

Գրիչ՝ Իսրայէլ

350 ա | | | նելով յիշեցէք ի մաքրափայլ յաղաւԹս ձեր ըստացող սուրբ գանձարանիս զԿարապետ քահանայն, և զծնաւղսն իւր զՀարա-

---

* Հիշատակարանի շարունակության մեջ ստացողի հայրը կոչվում է՝ Սեփանոս։

** Այս էջի ստորին լուսանցքում կա մի ծաղկագիր տող՝ «□ ԺՇՃՒՆԼՑՐ։ □ ԺՇՃՒՆԼՑՐ»։ Նույնպիսի մի ծաղկագիր գրված է նաև 339 բ էջի սկզբում, այսպես՝ «□ Գ. եղբարցն։ ԳՏԼԳՇՏ | ԺՇՃՒՆԼՑՐ | ՁՒԵՒՏԼ □»։

Այգ նշանը (□) իր տարատեսակներով՝ «Աւետարան» բառի գաղափարագիրն է։

Ծաղկագիր առաջին տողը եղբայրագիր ծաղկագրով կարդացվում է «Աւետարանս Թոմային» (2 անգամ)։

Երկրորդը՝ նույն ծաղկագրով՝ «Աւետարանս Գ. (3) եղբարցն՝ Գրիգոր, Թոմային է, Ղազարի»։

պետն և զՀարունն, և զեղբարքն զՎարդան և զԳրիգորն, և զդեռաբոյս զաւակն իւր զՀարապետն:

Գարձեալ, կրկին աղաչեմ և պաղատեմ զդասս կարդացողաց և լսողաց՝ յիշեցէք զըստացող գրոցս զԴաւիթ կրաւնաւորն, և զծնաւղսն իւր զՎարդան քահանայն և զՆազխաթուն, և զեղբարքն զԽէրապետն, և զՅակոբ սարկաւագն, և զՄատթէոս քահանայն, և զորդին իւր զԹադէոս, և զքուերքն զԹանկ-խաթուն, և զորդին իւր զՊետրոսն, և զմիւս քոյրն զՀաւռոփսեմն, և զհօրեղբարքն իմ զՍտեփաննոս քահանայն, և զորդին իւր զՅովաննէս քահանայն, և զՅոհաննէս սարկաւագն, զդըստերքն իւր զՄրլքանն, և զորդին իւր զՅովսէփ, և զմիւս քոյրն զԽաթունն, և զհաւրեղբարբն զՄարգարէն, և զորդին իւր զսարկաւագ Թովմէն…:

350 բ … Յիշեցէք ի Քրիստոս աստուած զեղկելի Իսրայէլ գրիչս,* և զիմ ծնողսն, և զամենայն արեան մերձաւորսն, ամէն, և զվարպետըն իմ զՄարգարէն և զՎարդան Մաքին, ամէն….

Բ

351 ա Յիշեսցէ բարէգութն աստուած և ողորմութիւն տացէ Շուշանին, և մխիթարէ յերկնային յարքայութիւնն զհոգի և զմարմին Խաթունշին՝ լուսով պայծառ է քան զարփին, դասաւորեալ ընդ կուսանին Հռիփսիմեայ և Գայինին զԽաթունշէն՝ զդուստրն Շուշանին՝ զաբեղ մեռաւ Մոկաց յերկրին, սուք մեծ արար իւր ծնաւղացն՝ պարոն Թումին և Շուշան[ին]. տացէ զերկնից արքայութիւն, ամէն, տէր, և պահեայ զորդիք սոցին՝ զՂարիպշէն և զիւրեանքն, պահեա տէր, յամէն չարէն։

Այլ և յիշեցէք զԽանթունշէն, և զՇամամ՝ քոյրն իւր, ամէն, և զհաւրեղբարքն՝ Զաքարէն, զՅակոբշէն, և զՄխիթարն, զՇապուհն, յամէն,**

690

ԱԻԵՏԱՐԱՆ

Ն. Ջուղա 559, Մ.Տ.Մ. և Ս.Տ.Ա.

Գրիչ՝ Վարդան
վայր՝ Մոկաց երկիր, Գինէկանց գիւղ

293 բ … Այլ և արդ, գրեցաւ սուրբ աւետարանս աստուածախաւս ձեռամբ անարժան և ախմար գրչի Վարդանի: Եւ իմ անընդել գոլով յարուեստ գրչութեան… գրեցի անարժան ձեռաւք իմովք յընտիր և ի ստոյգ աւրինակէ կենաւք տառապանաւք և բազում պանդխտութեամբ

* Նախորդ հիշատակարանի հեղինակ Իսրայէլ գրիչն է։ Նկատի ունենալով այդ՝ անթվական այս հիշատակարանը տեղադրում ենք նրան առընթեր՝ 1447-ի թվաշարքում։

** Այս երկրորդ հիշատակարանը, ամենայն հավանականությամբ, նույնպես գրել է Իսրայէլ գրիչը, սակայն ավելի խոշոր տառերով և, հավանաբար, առաջին հիշատակարանից տարիներ հետո։

և ազգի ազգի տրտմութեամբ, զոր վասն ծովացեալ մեղաց իմոց ժամանեն ինձ փորձութիւնք յամ յամէ և ոչ տային ինձ հանգչել։ Եւ է ի մեծ թուականիս Հայոց ՊՂԶ. (1447), ի հայրապետութեան հայկազեան տոհմի տեառն Զաքարայի, ընդ հովանեաւ սուրբ տաճարիս Գէորգեա և ամենայաղթ սուրբ Նշանիս, ի յիշատակ հոգւոյ Սարգիս մաղգասոյ, և եղբաւրն Փիլիպպոսի, և ծնաւղացն Թագաւորին և Ազիզին, և որդւոյ իւրոյ Աւետիս սարկաւագին՝ տարաժամ փոխեցելոյն առ Քրիստոս, և սուք ետ ծնաւղացն իւրոց, և եղբաւրորդւոյն Մկ[րտ]չի, և քուերն Դովլաթ-Խաթունի...։

Դարձեալ աղաչեմ զձեզ, յիշեցէք ... զՅովաննէս եպիսկոպոսն և Զաքարիայ վարդապետն, որք են առաջնորդք և հովիւ երկնահանգէտ սուրբ ուխտին Վարագայ։ Ընդ նոսին և զիս՝ զփծուն գրիչս զՎարդան անարժան աբեղայս, ...և զծնաւղսն իմ զՍամուէլ քահանայն, և զմայրն իմ զՄինայ, և զայլ ամենայն արեան մերձաւորսն և զերանուաւորսն, ամէն, և զիմ սիրելի եղբայրն զՅակոբ քահանայն։

Այլ և գրեցաւ աւետարանս ի յերկիրս Մոկաց, ի գեաւղս Գինէկանց, ընդ հովանեաւ սուրբ Նշանիս և սուրբ Գէորգեա...։

Եւ արդ, ես՝ ամենամեղ ծառայ ծառայիցդ Յիսուսի Քրիստոսի Սարգիս մահդասի, վկայութեամբն աստուծոյ, և տէր Յովաննէս եպիսկոպոսին, և Զաքարիայ վարդապետին, Թումա քահանային և Խոսրովին ետու զսուրբ աւետարանս իմ քըւերորդւոյն՝ Կարապետ քահանային, որդւոյ Յովանէս իրիցուն, որ հանապազ կարդայ և աստուած-ողորմի ասէ։ Եւ մի ոք իշխեսցէ ընդ նմա աղաղակ և կամ դաւի առնել. և թէ ոք յանդգնի և դաւի առնէ՝ նա զմասն զՅուդային առնէ և զայլ խաչահանուացն, ամէն։ Այլ տէր աստուած վայելել տացէ զսա Կարապետ քահանային, ամէն։

Այլ և յիշեցէք յաղաւթս ձեր և զծնողքն Կարապետ քահանային զՅովանէս քահանայ և զԱզիզ-Խաթուն, և զմեծ պապն զՍտեփանոս քահանայ, և զՈսկին, զՄովսէս քահանայ, և զորդեակն իւր զՄելքիսէթ քահանայ...։ Յիշեցէք... զմահդասի տէր Զաքարէն, զհայրն իւր Նորվալի, և զմայրն Խանում, դուստր և որդին իւր, որ բազում աշխա[տե]ցաւ ի Ջուղայի մինչ ի Հսպահան, յիշեցէք, ողորմի ասացէք, աստուած զձեզ յիշէ աւրն դատաստանի։

691

ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 6365

Գրիչ՝ Մարգարէ

վայր՝ յերկիրս Ըռըշաունեաց, ի վանքս Բերդաձոր

362 բ ...Ուստի և տեսեալ զսորայս անճառ փրկագործութեան խորհուրդ կին ոմն աստուածասէր և ուղիղ հաւատով Շայխութլու* կոչե-

* 20 ա էջի վրա, չոգած դիրքով, նկարված է ձեռագրի ստացող Շայխութլուն, նրա ձախ կողմում կանգնած է պատանի որդին՝ Յովսեփը, որը, համաձայն նկարի, վերևում

ցեալ, ի վաղուց հետէ ցանկացաւ այսմ աստուածախաւս սուրբ աւետարանիս, և ետ գրել զսա յիշատակ հոգւոյ իւրոյ և ծնաւղացն՝ հաւրն Մարտիրոսի և մաւրն Սադգաթի, և որդւոցն Յովսէփին և Մելիքսէթին, և դստերաց իւրոց Համուշ-խաթունին և Մարգարտին և Ուլուն-խաթունին, և քըւերն իւրոյ Հաթուն-Մէլեքին,* և ամենայն արեան մերձաւորաց իւրոց, և փեսային իւրոյ Մուրադին:**



Նկ. 25. Ձեռագրի ստացող Շայխութլուի և նրա վաղամեռիկ որդի Յովսեփի պատկերները

... Ընդ նոսին և զիս՝ զանյիշելիս զՄարգարէ մեղաւք մեռեալ գերիս, և զհայրն իմ զՅոնանէսն, և զմայրն իմ զՈսկին, և զեղբարքն
363 բ իմ զՅովանէսն || և զՄխիթարն, և զամենայն արեան մերձաւորքն իմ ազատեսցէ Քրիստոս աստուած յաններելի տանջանացն, և տացէ ամենայն Քրիստոնէից և ինձ՝ մեղաւորիս և իմոցն ամենայնի տեսանել զինքն՝ զՔրիստոս հայրական փառաւք ի նորոգել զտիեզերս, ամէն:

եղող կարմրագեղ մակագրության՝ արդեն մահացել էր: Մակագրության մեջ գրված է՝ «Ցիշեցէք ի Քրիստոս Շայխուբլուն, եւ զորդի նորին, որ փոխեցաւ առ աստուած» (տես նկ. 25):

* Այս բառից հետո կարմիր թանաքով ավելացված են մի քանի այլ անուններ, այդ հավելումից հնարավոր է կարդալ այսքանը՝ «Հալիմ-խաթունին և զաւակացն (*) | | | զարիա-խաթունին, Համ | | | -խաթունին»:

** Շարունակության մեջ, ևս հինգ անգամ, ձանձրալի կրկնաբանությամբ, գրիչը աղաչում է դարձյալ ու դարձյալ հիշել ձեռագրի ստացող Շայխութլուին ու նրա ազգականներին: Վերը չհիշատակված ազգականներից են «դտէքըն իւր զԱւեսխոն և զորդին զԱստուածասուրն» (էջ 363 ա):

Այդ ընդարձակ մասը դուրս ենք թողնում:

Քրիստոս աստուած, ի քո յահեղ դատաստանին դասակից արա և պսակակից ընդ սրբոց առաքելոցն և ընդ մարգարէիցն... զաւրի-նակ տըւողն զՍիոն եպիսկոպոսն, և զծնաւղսն իւր զՊետրոսն և զՇարմէլէքն, և զամենայն արեան մերձաւորքն իւր, ամէն, ամէն։

Արդ, աւարտեցաւ սուրբ աւետարանս ի յերկիրս Շորշաունեաց, ի վանքս, որ Թերգաձոր կոչի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, ի յառաջնորդութիւն սուրբ ուխտիս տէր Սիոնի, և Աստուածատուր քա-հանայի՝ հաւր վանիցս, և այլ եղբարցս, որ աստ են հաւաքեալ, զի յոյժ կամակից եղեն մեզ, զոր Քրիստոս աստուած դասակից արասցէ զոսա ընդ դասուց հրեշտակացն... ընդ նոսին և զՍարգիս տնտեսն, ամէն։

Ի Թվականիս Հայոց կատարեցաւ ՊՂԶ. (1447)։ Աղաչեմ զձեզ, զի վասն խոշորութեան գրիս անմեղադիր լերուք, զի աչքս [պ]ա[կա-սե]ալ է ի լուսոյ, զի կայր | | |, և Քրիստոսի | | | զաւրՏ.]Թիւն և փառք յաւիտեանս, ամէն։

Բ

20ա Յիշեցէք ի Քրիստոս զՇայխութլուն, և զորդին իւր զՅովսէփ, և զԹոռն զՇըրսամկէս, և զկազմող Գրիգորն, և աստուած-ողորմի ասա-ցէք, և Քրիստոս աստուած ձեզ և մեզ ողորմեսցի, ամէն։

Գ

29բ Աւգնեա տէր Յիսուս տկար մատինս և յաջողեա զգործ անյի-շելոյս մեղաւորի, ամէն։*

692

ԱՒԵՏԱՐԱ՛Ն

Երևան 4971

Գրիչ՝ Մարգարէ

ա

256ա Զտառապողս, զանհամեմատս ի գունդս մեղաւորաց զՄարգարէ** գրիչ, և զհայրն իմ զՅոհանէս, և զմայրն իմ զՈսկի, և զեղբարքն զՅովանէս և զՄխիթար՝ աղաչեմ յիշել ի տէր աստուած, և ասացէք՝ Քրիստոս աստուած ողորմի սոցա, ամէն, ես առաւել [ստացողի գրոցս] Յոհանէս քահանային, և ծնողաց իւրոց, և զաւակացն, և Կա-րապետ մահգասոյն, և ամենայն արեան մերձաւորացն իւրոց, ամէն, և լսողաց և կարդացողաց, ամէն։

Բ

99ա Յիշեցէք զԹուխթանգ, և զաւակսն իւր՝ զՅովանէսն, զՅովսէփն,

* Գրված է Մաթէոսի ավետարանչի նկարի ներքևում։

** Նախորդ հիշատակարանի գրիչն է, ուստի և անթվական այս հիշատակարանը տե-ղադրում ենք նրան տալինիչ՝ 1447-ի թվաշարքում։

զՄարգարիտն և զԳոնարն, և զամենայն արեան մերձաւորքն իւր... ես առաւել զՄոչան՝ զմայրն Թուխթանկի...:*

693

## ՃԱՇՈՑ

Փիրղ. Նոտ., էջ 156—157, Սերաստիոյ ս. Մինաս եկեղեցի

Գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Դերձկի վանք

...Արդ, գրեցաւ սա ի Թուիս Հայոց ՊՂԶ. (1447), ի դառնաբեր ժամանակիս վասն ծովացեալ մեղաց մերոց, ձեռամբ Մկրտիչ սարկաւագին... ընդ հովանեաւ սուրբ Թէոդորոսի զինաւորին, զոր այժմ Դերձկի կոչի, և այլ բազմահաւաք նշխարաց...: Եւ Սիմէոն հայրապետի, որ ետ գրել զգիրքս ի վայելումն մաքուր անձին իւրոյ, յիշեցէք զվանիցս միաբանքն՝ զՍիմէոն աբեղայն և զսարկաւագներն և զգործաւորն՝ զՍարգիս պապն:

694

## ԱՒԵՏԱՐԱՆ

Փիրղ. Նոտ., էջ 157, Արապկիրի ս. Աստուածածին եկեղեցի

Գրիչ՝ Հայրապետ
վայր՝ Ծառիկու վանք

...Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի Թուականիս Հայոց ՊՂԶ. (1447), ի հայրապետութեան տեառն Կարապետի, և եպիսկոպոսութեան տէր Գրիգորի՝ եղբօրորդի Նորին, ի վանս Ծառիկու, ընդ հովանեաւ սուրբ Աննայի, ձեռնատուութեամբ Սիմէոն քահանայի և քուերորդւոյ իւրոյ Կիրակոս դպրի...: Զգծագրող սորա զՀայրապետ բանին աշակերտեալ, ընդ Նմին և զտացող սուրբ աւետարանիս Աւլիմէլիքն, և զծնողսն իւր՝ Ազիզպէկն և Ըռանախաթուն...:

695

## ԳԱՆՁԱՐԱՆ

Ն. Ջուղա 463, Մ.Տ.Մ. և Ս.Տ.Մ.

Գրիչ՝ Ներսէս

373 բ ...Գրեցաւ Գանձատետրս ի Թվին Հայոց ՊՂԶ. (1447), յունիս ամսոյ ի ԺԹ. (19), ձեռամբ բազմամեղ, անարուեստ և անիմաստ փծուն գրչի Ներսէս սուտանուն կրօնաւորի ... ի գեաւղս, որ կոչ[ի] Ումբուքիլիսա,** ընդ հովանեաւ սուրբ հրեշտակապետացն Գաբրիէլի և Միքայէլի, և սուրբ Եւտոկսայ և հարազատաց որդոց իւր սուրբ Նա-

* Այս հեշատակարանը գրված է, անշուշտ, ձեռագրի գրչությունից տասնամյակներ հետո, հավանաբար ԺԵ. դարի վերջերին կամ ԺԶ. դարում։
** Ձեռագրում՝ «Կոչում բուքիլիսայ»։

հատակաց, ի Հաճարկատար սուրբ Աստուածածնին, և սուրբ Գրիգորի Լուսաւորչի, և այլ բազում սրբութեանցս, որ ի յայս սահմանք կան, զոր ոչ գիտեմք յանուանէ կոչել...։

... Ցիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր... զանպիտանացեալ հոգի զՆերսէս սուտ ան[ուն] կարգաւորս, որ անունս կայ և գործս ոչ ունի, այլ և զհոգևոր հայրն մեր և զուսուցիչ զԳրիգոր վարպետն. Ցիշեցէք ի Քրիստոս աստուած զմարմնաւոր ծընաւղսն մեր՝ զհայրն իմ զՅետ-կարն, և զմայրն իմ զՄարթայ, և զեղբայր իմ զՅոհանէս, և զքոյրն իմ զԹուրվանդայ...:

Այլ և յիշեցէք ի Քրիստոս զսպասաւորս մեր իրիցկինս, որ շատ աշխատեցաւ ի լվանալ, ի կերակրել, ի ծառայութիւն, և զծնողսն իւր և զեղբարքն, և աստուած զձեզ յիշէ։ Այլ և յիշեցէք ի Քրիստոս զԹզԹիս կոկաւղքն՝ զԿոստանդ սարկաւագն և որ զԱսիլն(*)...:

Այլ և աւարտեցաւ Գանձտետրս ի կաթողիկոսութեան տեառն տէր Կարապետի և մեր սրբասնեալ առաջելաշնորհ եպիսկոպոս տէր Սիմէոնի:

Այլ և հոգևոր հարք և եղբարք մի մեղադրէք խոշորութեան և սխալանաց գրիս, զկար մեր այս էր, և ի բազում սբաղմանց մէջ կայեաք և խիստ նեղ տեղ.

Այլ և արդ, աղաչեմ յերես անգեալ ղամենեսանդ, ով ոք հանդիպիք տեսանելով կամ կարդալով կամ աւրինակելով, նա յիշեցէք ի տէր և զիս՝ զանարժան գրագիրս և զՆերսէս սուտանուն քահանայս զԵրևանցի, և զծնաւղքն իմ, և զուսուցիչքն՝ զկենդանիքն և զննջեցեալքն.

Այլ և զմիեղէն եղբարքս ի դուռն սուրբ Լուսաւորչին՝ զԱստուածատուր հայրապետն, և զնորաբոյս բողբոջն զԱնանի աբեղան, և զՍտեփաննոս ճաբեղան, և զմիւս Անանիա ճաբեղան, և միաբանքն, զսարկաւագանին և զտնտես, և որ զսպասաւորութիւն կանեն սուրբ տաճարին, նա Քրիստոս աստուած զիւր սուրբ արքայութիւնն մեզ և ձեզ պատրաստէ աստ և ի հանդերձելումն...։

Այլ և զիս զանարժան և զանպիտան զԱնանիա սուտանուն աբեղաս՝ զծաղկաւղս սորին. և զուսուցիչն իմ. և զհոգևոր հայրն զտէր Սիմէոն արի եպիսկոպոս, որ բազում աշխատութեամբ վարժեցուց զիս յարուեստ ծաղկաւղութեան, ով քահանայք, յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր, այլ և անմեղադիր լերուք ծաղկիս, զի առաջին ծաղիկս այս էր, ասաս9իք մեզ ողորմի...։

696

## ՄԱՍՈՒՆՔ ՀԻՆ ԿՏԱԿԱՐԱՆԻ

Երևան 141

Լրացնող և կազմող՝ Աբրահամ

327 բ ...Շնորհիւ և օգնականութեամբ տեառն աստուծոյ մերո ես՝ սուտանունս Աբրահամ աբեղայս ձեռնարկեցի և սակաւ գծով և կազ-

մեցի զմատեանս հին կտակարա[նա]ցս, զոր սկսեալ է Նախամարգարէն Մովսէս ի յիսկզբանց արարածոցն տեառն աստուծոյ՝ զարարածս ստեղծանելոյն մինչև ի կատարումն երկրորդ օրէնք, որ է գիրք հինգ փերթ, այսինքն՝ Ա. Ծնունդքն, Բ. Ելքն, Գ. Ղևտականքն, Դ. որ է Թիւքն, Ե. Երկրորդ օրէնք։

Արդ, աղաչեմ զհանդիպողսդ սմա յիշման արժանի առնել զիս՝ ղանարժանս, նայ և հայրն իմ զՅովանէս մղասին, և զամենայն ազգայտոհմս մեր՝ զկենդանիս և զհանգուցեալս, և որ յիշէքդ սրտի մտօք և աստուած-ողորմի ասէք մեզ՝ նոյն ինքն Քրիստոս աստուած ձեզ և մեզ տացէ զիւր անսպառ բարիսն, և նմա փառք յաւ[իտեանս]։

Ի թվկ. Հայոց. ՊՂԶ. (1447), և ի յամսեան յունիսի Ը. (8),*

---

* Աբրահամ աբեղան ձեռագրի միայն լրացնողն ու կազմողն է, իսկ ձեռագիրը հիմնականում գրել է Մխիթար անունով մեկը (հավանաբար Մխիթար Կերմանեցին), ԺԴ. դարում։ Վերջինս թողել է մի երկու հիշատակագրություն, որոնցից ընդարձակը բերում ենք ստորև.

«Բայց ես նուաստ և թարմատար գրողս Մխիթար սուտանուն երէց զիմ զմոխրակոյտ երեսս ի գետինն եմ դրել և արտասուելով աղաչեմ զտէր և զսուրբ հայրքդ և զեղբարսդ և զորդեակքդ, զի ողորմեսջիքդ մեզ և խնդրէք մեզաց թողութիւն, այսպէս ասելով՝ Քրիստոս աստուած, թող զՄխիթարս զյանցանսն, ամէն» (էջ 158ա)։

301 բ էջի ստորին լուսանցքում, ձեռագրում գործածված թանաքով, բայց, ըստ երևույթին, այլ ձեռքով, գրված է «Գրիգոր Անեցի» անունը։ Անկարող ենք պարզել, թե այդ Անեցին ինչ առնչություն ունի ձեռագրի հետ։





## 697

### Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*«Արցախ», էջ 268—269, Մ. Տ. Մ, Գանձակ, Արլան գիւղ*

*Վաճառող՝* Մուրադշայ
*վայր՝* Թմոք

*Յանուն Յիսուսի Քրիստոսի ես* Մուրադշէս *ծախեցի զիմ հայրենի աւետարանս քեզ՝* Խաչատուր *իրիցիդ՝ որդոյ* Յոհանիսի, *ի գաւառէն Եղիշէ առաքելոյն, ի յաթոռոյն* Ջրվշկայ, *վկայութեամբ մեր եպիսկոպոսիս տէր* Թումի *և սպասաւորի սուրբ ուխտին* Հախրաայ, *և* Թմոքայ *քահանայիցս՝* Մկրտիչ *իրիցոյ և* Առաքել *իրիցոյ, ի Թվ. ՊՂԷ. (1448), ի տրէ ամսոյ ի ԻԵ. (25), և աստուած շնորհաւոր առնէ, ամէն։*

## 698

### Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*Երևան 5196*

*Գրիչ՝* Յովանէս
*վայր՝* Արծկէ"

294 բ *...Յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր՝ քահանայք և ժողովուրդք և լի բերանով և ուղիղ սրտիւ աստուած-ողորմի ասացէք ստացաւղի սորա* Թուրւանդայ-խաթունի, *և առն իւրոյ* Իսրայէլին, *և ծնաւղաց նորին* Առաքելին *և* Մլախին, *և դստերաց նորա* Նարին-խաթունի *և* Բուրսայ-խաթունի, *և* Թուրւանդի *քու[ր]ոջն՝* Սաղդաթ-խաթունի. *և Քրիստոս աստուած, որ առատն է ի տուրս բարեաց՝ տացէ մեզ և նոցա զարքայութիւնն իւր, ամէն։*

295 ա *Եւ ես՝ յետինս բանասիրաց և տրուպս կարգաւորաց* Յովանէս *սուտանուն՝ տեսի զփափագ և զսէր, զոր ունէր հետ սուրբ աւետարանիս հոգևոր մայրս մեր* Թուրւանդայ, *և յանձն առեալ սկիզբն արարի սուրբ աւետարանիս ի թվականութեանս մեր Պ. և Ղէ. (1448) ամին, յաւուր չորեքշաբթի՝ յարութեան զատկին։ Որ և ի մեւս աւուրն սուգ տրտմութեան և դառնակսկիծ աղէտ եհաս ինձ և ծերացեալ ծնաւղի իմոյ։ Վասն զի հրաման եհաս յարարչէն փոխիլ առ տէր լերգահատոր եղբաւր իմոյ հարազատ* Ներսէսի՝ *Ի. (20) ամեայ, լի շնորհաւք ծարկաւագ, լըցեալ աստուածային իմաստութեամբն,*

խոնարհ և հեզ բարուք, քաղցրատես և սիրուն յաչս ամենեցուն, եւս
առաւել արարչին իւրոյ, նման սրբոյն Ստեփանոսի Նախասարկաւա-
գին, վասն որոյ ոչ արժան համարեցաւ զայնպիսի պաւական եղ-
295 բ բայր ինձ՝ մեղաւորիս, այլ փոխեաց աստի՝ ի || դառն և ի մեղսա-
սէր աշխարհէս, ուր ինքն կամեցաւ։ Բայց զի Թէպէտ և նորա հան-
գիստ էր և ընդ հրեշտակս ցընծութիւն այնպիսի անմեղութեամբ
մահն, այլ ծնաւղին իւրոյ և ինձ՝ անչափ տրտմութիւն և դառն կըս-
կիծ։ Վասն որոյ յոյժ տրտմութեամբ և արտասւալից աչաւք գրեցի
զսուրբ աւետարանս ի հայրապետութեան տեառն Գրիգորի ընդհա-
նիւր Հայոց կաթուղիկոսի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի տա-
ճարի և սրբոյն Ստեփանոս կաթուղիկ[էի]։

Գարձեալ, կրկին [ան]գամ յերես անկեալ աղաչեմ զձեզ, յիշեցէք
ի բարին Քրիստոս զվերոյասացեալ ստացւող աւետարանիս զԹուր-
ւանդայ-խաթունն, և զծնաւղսն իւր զԹաղաչար և զՍարախ-Մելիք, և
զեղբայրն իւր զՍաղդադին, և զքոյրն զՍաղդաթ։ Եւս առաւել յիշեցէք
ի Քրիստոս զԽսրայիլն, և լի բերանով աստուած-ողորմի ասացէք
296 ա ծնաւղաց նորին Առաքելին և Մլախին, և զաւակաց նորին Նար || ին-
խաթունին և Բուրսայ-խաթունին, և դուք և մեք մասն բարեաց ընկալցուք
ի Քրիստոս աստուծոյ մերոյ, ամէն։

Գարձեալ, աղաչեմ յիշել առ Քրիստոս զմեղուցեալ գրիչ[ս],
և զծնաւղսն իմ զՅակոբ քահանայ և զՍալչուկ-խաթունն, և զեղբայրն
իմ զԳրիգոր՝ սրբասնեալ կրաւնաւոր, և մեղաց Թողութիւն խնդրէցէք,
և Քրիստոս աստուած յիշողացն ողորմեսցի, ամէն։

699

ԳԱՆՁԱՐԱՆ

Փիրղ. Նոտ., էջ 156, Նշխարք (№ 4515), էջ 163, Բաղէշ

Գրիչ՝ Խաչատուր
վայր՝ Վան

... Ի Թուականիս Հայոց ՊՂԷ. (1448) գրեցաւ սուրբ Գանձարա-
նըս ի քաղաքիս Վան, ընդ հովանեաւ սուրբ առաքելոց Պետրոսի և
Պօղոսի, ի հայրապետութեան տեառն Ըստակէսի, և մերոյ առաջնոր-
դիս սուրբ ուխտիս Վարագայ տէր Յովհաննէս եպիսկոպոսի և Մար-
գարայ վարդապետի, ձեռամբ Խաչատուր երիցու...։

Յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զստացող սորա զտէր Աս-
տուածատուրն, որ յանօրինաց նահատակեցաւ, ընդ նմին աստուա-
ծասէր տանուտէրն զԱղազարն, [հայրն] զԳրիգորն, զմայրն Շնահոր,
զկենակիցն Շախփաշայ... որ ետ երկու գրիւ ցորէն և Թափեաց զգան-
ձարանս ի գերութենէ, և ետ ի դուռն սուրբ Աստուածածնին, որ է
յԱրարքն՝ անջինջ յիշատակ։

## 700

### ԱԻԵՏԱՐԱՆ

ԼՑՎ 170, այուՆ. 400

Ստացող՝ Առաքել
վայր՝ Ոշատւնիք, Բերդաձորի վանք

...[Գրեցաւ] ի յարքունական երկիրս Ըռըշատւնեաց, ի վանքս, որ Բերդաձոր կոչի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, ի թուականիս Հայոց ՊՂԷ. (1448)։ Ես՝ Առաքէլ աբեղայս ետու գծագրել մեծա[ւ] փափաքմամբ ի հալալ արդեանց մերոց և ընծայեցի զսա նըւէր սուրբ Յակոբայ տաճարիս և գերահռչակ կրաւնաստանիս, յիշատակ բարի հոգւոյ իմոյ, և ծնօղացն իմոց՝ Խաչատրուն և Թանգ-Մելիքին, և քեռեացն իմոց Յովհանիսի և Թումայի՝ սրբակրաւն աբեղայիցն, յառաջնորդութեան սուրբ ուխտիս Սիմէօն վարդապետին։ Որոց տացէ Քրիստոս պարգև բարի ըստ վաստակոց իւրոց, զի մեծ երախտաւոր է մեզ և տեղոյս։

## 701

### ԱԻԵՏԱՐԱՆ

«Արարատ», 1905 Թ., էջ 731—732, Գիւմուշխանէի ս. Փրկչի վանք

Գրիչ՝ Հայրապետ

... Սուրբ աւետարանիս եռափափաք սիրով ստացող եղեալ սրբասէր քահանայն Սիմէօն, և հանդիպետլ իմոյ նուաստութեանս Հայրապետ պիտակ անուն, մռացեալ զտկարութիւն հոգւոյ իմոյ, վասն աստուածասէր փափաքմանն Սիմէօն քահանային... սկսայ... զի իմոյ ձեռամբս զթուղթն նշայեցի և սկսեցի և գրեցի և ծաղկեցի և կազմեցի այս։ Եւ յիշեսջիք ի Քրիստոս զստացող սուրբ աւետարանիս զՍիմոն քահանայն և զամենայն արեան մերձաւորս, նաև զանդրանիկ որդին իւր Աստուածատուր քահանայն և զԿիրակոս դպիրն, նաև զյոգնամեղ կցողս Հայրապետ աշակերտեալ բանի, և զհայրն իմ զՄաաքէոս քահանայն, և զամենայն ազգատոհմս իմ, և զուսուցիչս և զամենայն երախտաւորս իմ...։

Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի թուականիս Հայոց ՊՂԷ. (1448), ի հայրապետութեան տեառն Կարապետի, եպիսկոպոսութեան եղբաւրորդոյն իւրոյ տէր Գրիգորիսի, առ ոտս սոցա աւարտեցաւ։ Տէր աստուած պահեսցէ զսոսա ընդ երկայն աւուրս, ընդ հովանեաւ Ծաւիկու* սուրբ Աստուածածնիս, և միաբանից սուրբ ուխտիս՝ Աստուածատուր կուսակրաւն տրեղային, և Սիմէօն քահանային, և Գրիգոր տնտեսին, և Նուրբեկի միայնակեցին, և Իշխան միայնակեցին, դեռաբոյս սարկաւագացն՝ Կիրակոսին, և Վասիլին, և Սիօնին, և Կիրակոսին, և Սիրերին, և Պապուկին...։

---

* «Ծառիկու» բառը տպված է «ընդ հովանեաւ»-ից առաջ։

## 702

### ՄԱՇՏՈՑ

Սեբաստիոյ ս. Նշան 84, ՀԱ, 1926, սյուն. 338

Գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Սեբաստիա

424 ա Յիշատակ է ի դուռն սուրբ Աստուածածնին (Սեբաստիոյ), որ կոչի Շուկի ժամ։* Զունի ոք իշխանութիւն մերոց թէ յաւտարաց հանելոյ զսա ի դրանէ սուրբ Աստուածածնին։ Եթէ ոք յանդգնի՝ զընդդիմակն կրեսցէ, իսկ հնազանդեալքն՝ աւրհնին յաստուծոյ և յամենայն սրբոց նորա։ Արդ, գրեցաւ Մաշթոցս այս ձեռամբ Մկրտիչ կրաւնաւորիս, ի թվ. ՊՂԷ. (1448)։

## 703

### ԼՈՒԾՄՈՒՆՔ ԱՐՏԱՔՆՈՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՑ

Երուսաղէմ 1584

Գրիչ՝ Յովհաննէս
վայր՝ Կաֆա

Ի հայրապետութեան տեառն Գրիգորի, յեպիսկոպոսութեան տէր Մաղաքիայի, յաշխարհս Հոռմոց, ի Կաֆա, առ ոտս սուրբ Մինասայ արագահասին, ձեռամբ Յովհաննէս կրօնաւորի։**

* Շուկի (Շուկայի) ժամի (եկեղեցու) անունը պարզվում է ձեռագրի հետագա ստացողներից Մահտեսի Տանիկի 1568 թվականին շարագրած հիշատակագրությունից, ուր գրված է «ի դուռն սուրբ Աստուածածնի, որ կոչի Սեբաստիոյ քաղաքի Շուկի ժամ»։

** Գ. Սրվանձտյանի «Թորոս Աղբար» Բ. հատորից (էջ 387) տեղեկություն ենք ստանում նաև մի Մաշտոցի մասին՝ «գրեալ ի Ձմռկածագ, ի վանքն Կարմիր, յամի ՊՂԷ. (1448)», իսկ Մկրտիչ Արծրունյանի «Ստորագրութիւն Երուսաղէմի» աշխատության մեջ (էջ 319—320) հրատարակված է 1448 թվականից կազմողի մի հիշատակագրություն. «Կազմեցաւ Ցայսմաւուրքս Հեռնակողման վանացն սուրբ Յովհաննէս Մկրտչի, ձեռամբ Յովհաննէս աբեղայի, ի թիւ Հայոց ՊՂԷ. (1448)»։





## 704

### *ՅԱՅ ՍՄԱԽՈԽՐՔ*

*Երևան 2379 (Ա), 2748 (Բ), 9004 (Գ)**

Յիշատակարան գրոցս պատմագրաբար, զոր շինեալ է քաջ քարտուղարն, առաքելական եպիսկոպոսն և աստուածաբան վարդապետն տէր Աստուածատուր՝ քուերորդի բարունապետին Յակոբայ Ովսանանց։

*Փառք ամենասուրբ երրորդութեանն հաւր և որդոյ և սուրբ հոգոյն։*

*Ամենեցուն ճարտարապետն աստուած յառաջ քան զլինելն ժամանակաց ընդրեաց ի մարդկանէ զորս ինքն կամեցաւ, և յիւրաքանչիւր ժամանակի նոյն և մի հոգի աստուծոյ յայտնէ ներգործութեամբ զնիւթս պատշաճաւոր և տնօրինէ նախագիտութեամբ նահապետս և մարգարէս, հովիւս և հովւապետս, տեսուչս և վերակացուս, իշխան և դատաւոր. և յարաձգականս յաւիտենիւ ոչ դադարէ ի ներգործելոյ, որպէս ասաց ճշմարտութիւնն, թէ՝ Ես ընդ ձեզ եմ մինչ ի կատարած աշխարհի։ Ըստ այսմ սարասի ի վախճան ժամանակի և ի կէտ սուզական, որ ամենայն ծաղիկ թառամեալ էր և ամենայն տերեւ ցամաքեալ, յայտնեաց մեզ աստուած ծաղիկ անթառամ, որոյ անուշահոտութիւնն ելից զտիեզերս ամենայն՝ զտէրն տիեզերալուր՝ զտէր* Մկրտիչն *մականուն* Նաղաշ *կոչեցեալ, որ և եղև երկրորդ լուսաւորիչ ամենայն* Միջագետաց *և պարծանք պարծանաց ամենայն քրիստոնէից.*

*Եւ էր սա բնական ի նահանկէն* Բաղիշու, *ի* Պոռ *կոչեցեալ գեղջէն, որդի մեծատան և աստուածարեալ քահանայի* Առաքելոյ *և մաւր բարէպաշտի։ Էին և սմա եղբարք երկու՝* Յովաննէս *քահանայ, որ*

*1 Ի. «պատմագրական» 3 Ա. «Ովսաննա», Բ. «Ովսանց» 7 Բ. «և ի» 13 Ա. Գ. «յաշխարհիս» 18 Բ. «պարծանաց» չիք 20 Բ. Գ .«դեղջէ»*

**Այս հիշատակարանը, որի մեջ շարադրված է ԺԵ. դարի նշանավոր բանաստեղծ Մկրտիչ Նաղաշի ընդարձակ կենսագրությունը՝ բնագրով մեզ չի հասել, այլ պահպանվել է հետագա ընդօրինակություններով։ Մատենադարանի ձեռագրերից այդ հիշատակարան-կենսագրականն ունեն հետևյալ ժողովածուները՝*

*Ա.—№ 2379, էջ 244 ա—262 բ (ԺԷ. դար)*

*Բ.—№ 2748, էջ 354 բ—357 բ (1624 թ.)*

*Գ.—№ 9004, էջ 1 ա—5 բ (1678 թ.)։*

*Բնագիրը կազմելիս օգտագործել ենք այդ ձեռագրերը՝ առաջնություն տալով № 2379 (Ա) ձեռագրի բնագրին, որն ամենալրիվն է։*

*Կենսագրականը, միայն մի ձեռագրի (№ 9004) հիման վրա, հրատարակել է Կ. Կոստանյանցը՝ «Արարատ» ամսագրի 1898 թ. հունվարյան համարում (էջ 23, 44—48)։*

տղա հասակաւ փոխեցաւ առ Քրիստոս և միւսն՝ Աբգար անուն, որ եղև երևելի, մեծ և փառաւոր և պատուեալ յամենեցունց, որ և զտուն հաւր իւրոյ առաւել քան զառաջինն բարեկարգեաց՝ երկրորդ հայր Աբրահամ լեալ՝ կերակրելով զըաղումս։ Եւ բազմերջանիկս տէր Մկըրտիչս ի տղայութենէ սիրէր զվարս կրօնաւորական՝ սիրէր զկրաւնաւորս և զվանականս, և սիրող լեալ արուեստից և ուսման և հանապազ նմին հետևէր։ Եւ էր տուեալ նմա շնորհք ի վերուստ, մինչ զի զամենայն դիւրաւ ուսանէր և զամենայն դժուարին արուեստ միանգամ տեսանելով նա գերագոյն քան զօրինակն ներգործէր։ Եւ զուսումն աստուածաշունչ գրոց, զոր ինչ սա ի միում ժամու, այլ ոք զաւուրս Ժ. (10), բազում աշխատութեամբ ոչ կարէին ի միտ առնուլ, և ամենեցուն հիանալի էր ի վեր քան զտեսութիւն մտաց, մինչ գրեթէ ոչ ոք երևեցաւ յայսմ ժամանակի այսպիսի տիրական շնորհի. զարդարեալ՝ առաքելաշնորհ և աստուածուսոյց։ Մինչ հընգետասան գոլով ամաց եղև կատարեալ ուսմամբ և արուեստիւ, իմաստութեամբ և վարդապետութեամբ, քաջ քարտուղար, անհամեմատ նկարիչ և ամենայն արհեստից ճարտարապետ, մինչ զի զամենայն արուեստ, զոր ինչ և կամէր, կարողութեամբն աստուծոյ անսղալ առնէր, մինչ զի հռչակեցաւ համբաւ շնորհաց նորայ և իմաստութեան ընդ ամենայն երկիր։

Եւ զի ոչ ունէր սէր աշխարհի, բռնադատեալ եղև ի ծնողացն, եմուտ ի կարգ աշխարհի, ոչ փոխելով զբարս իւր, այլ հանապազ ընդ կրաւնաւորս լինէր։ Եւ զի նախագիտութիւնն աստուծոյ տնաւրինեալ էր զսա լինել փեսայ երկնաւոր հարսին՝ եկեղեցոյն Միջագետաց, զի սովաւ ուրախանալոց էր հարսն Քրիստոսի, և ցնծալով մանկանց Սիոնի, և բարձրանալ խաչին Քրիստոսի, և ուրախանալ սովաւ տարտամ և տխուր ազգս հայկազեան, որ եղև իսկ։ Զի մին որդի ծնանելով եղև մեռանել ամուսնոյն իւրոյ, զոր և ինքն զնոյն խնդրէր յաստուծոյ՝ ազատ լինել։ Եւ առաջնորդութեամբ աստուած սուրբ հոգոյն ելեալ ի բնական նահանգէն, եկեալ բնակի յեևելի և յականաւոր ապաստանի՝ ի քաղաքն յԱմիթ շահաստան։ Եւ ողորմութիւն տեառն էր ընդ նմայ, և յաջողեալ էր ի գործս սորա, զի յամենայնի հոգին աստուած էր Թելադիր և գործակից սմա։ Զի յօրէ յօրմէ հետէ եմուտ սա ի Միջագետս՝ շարժեաց հոգին աստուած զսիրտ ամենայն մարդոյ ի սիրել զսա և զամենեցուն լեզու՝ գովել և բարեբանել և բարեհամբաւել։

Եւ երաց սմա աստուած զդուռն ողորմութեան, զի ամենայն ոք, որ տեսանէր զսա՝ կամէր և զհոգին ևս տալ յաւժարութեամբ և զուարթութեամբ և առատ սրտիւ. եւ ոչ եթէ միայն յազգս քրիստո-

Ա. «հասակօ» 5—6 Բ. «սիրէր զկրաւնաւորս» չիք 16 Բ. Գ. «նկարօղ» 17 Բ. «և» չիք 19 Բ. Գ. «սորա» Բ. «և իմաստութեան» չիք 20. Գ. «զսէր» 22—23 Բ. «գիտէր» փխ. «տնաւրինեալ էր» 27 Բ. «ծնաւ» ի. «կնոջն» 28 Բ. «աստուած» չիք 29 Բ. «երկրէն» 30 Ա. «և յապաստանի» 30 Բ. «ի մայրաքաղաքն՝ յԱմիթ շահաստանի» 31 ի. «ի գործս սորա, զի յօրէն...» 39 Գ. «ազգս»։

*նէից, այլև Թուրք, և Թաթ, և Թաթար, և Քուրթ, և Արապ, և Ջհուտ, և ամենայն ազինք, ընդ տեսանելն զպատիւ և զպարգևս պատրաստէին՝ ձիս և ջորիս և խլայս մեծագինս՝ անասելի և անպատմելի։ Եւ ոչ եթէ միայն իւր դէմն և յիւր վիճակն, այլ և յամենայն աշխարհաց գային՝ յԱրևելից և յԱրևմտից, և պարգևատու լինէին և պարգևս բերէին ոսկի, արծաթ, ականս պատուականս, կտաւս մեծագինս, մինչ զի բազում ոմանք Ռ. (1000) և ԲՌ. (2000) թանկայ պարգևս բերէին։ Զի տարածեցաւ համբաւ սորայ ընդ ամենայն աշխարհս, մինչև եհաս առ թագաւորն* Պարսից *և առ տէրն* Եգիպտոսի, *և էանց զՄեծ ծովն՝ մինչև ի պապն* Հռոմայ *և ի* Կոստանդնուպոլիս, *մինչ զի վարշամակս ոսկեթելս և մեծագին պարգևս առաքէին։*

*Եւ ես առաւել սիրեցևալ եղև ի յաչս պարոնաց պարոնին շահ* Աւթման-Բէկին, *որ տիրէր ի* Խառանայ *մինչև ի ծովն* Պոնտոսի, *որ է* Տրապիզոն: *Զի այնպէս քաղցրացոյց աստուած զսիրտ բռնաւորին ընդդէմ սմայ, զի զամենայն քրիստոնեայք, որ ընդ իւրոյ իշխանութեանն էր՝ ետ ի ձեռն սորայ և մեծապէս պարգևաւք և տրօք մեծարեաց և փառաւորեաց թագաւորական սգեստիւք և արքունական երիվարաւք, մինչ զի զոր զգեցեալն էր արքայն՝ զայն զգեցուցանէր. և զսէրն զոր սիրէր և զպտրգևսն ոչ ոք կարէ ընդ գրով արկանել, մինչ գրեթէ և ոչ ոք ի մարդկանէ՝ ի թագաւորացն քրիստոնէիցն այսպիսի պարգևաւք ճոխացոյց զոք ի հայրապետաց սրբոց։ Եւ զչափ սիրոյն ի պարգեացն գիտացիր, զի յարաժամ հազար և ԲՌ. (2000) թանկայ ի պարգևս տայր։ Եւ ի գնալն առ նա՝ ընդ առաջ ելանէր, և համբուրէր, և ի վերայ իւրոյ թագաւորական խալիչային նստուցանէր, և զբան սորայ ընդունէր իբրև զծառայի աստուծոյ, զի սիրող էր բանին։ Զի հրաման տայր բերել յիւրոց առաջնորդացն և զգիշերն ի բուն տայր խաւսել յաստուածաշունչ գրոց։ Եւ սա աստուածատուր շնորհաւքն և աստուածուսոյց վարդապետութեամբն զամենեսեան յամաւթ առնէր, և զթագաւորն հաւանացուցանէր և առնէր պարգևս ի թագաւորէն և աւըրստօրէ աստուած զսա ի բանս իւր զաւրացուցանէր և հոգի աստուծոյ էր ի վերայ սորա։*

*Եւ յետ* յԱւթման-Բէկին, *սուլթան* Համզա, *զոր ինչ ականատես եղև հօրէն իւրմէ, այլ առաւել պատուով ընդունեցաւ զսա՝ հայր ինքեան աւանդելով փոխանակ հօր իւրոյ։ Եւ մեծաւ պատուով փառաւորէր զսա քան զամենայն մեծամեծս իւր, մինչ բազմաց ասել թէ և ինքն քրիստոնեայ է, զի այս չափ սիրէր և պատուէր զեպիսկոպոսն։*

---

*1 Գ. «քուրդ» 2 Ա. «զպատիւ» չիք 3 Գ. «խիլայս» 4 Բ. Գ. «յիւր», Բ. «թէմն» 11 Ա. «ոսկեթել» Ա. Գ. «առաքէին» բառից հետո ունեն՝ «աւրհնեալ է աստուած». 12 Բ. Գ. «Եւ» չիք 13 Ա. «Հառանայ» 16 Բ. «էր» չիք 17 Բ. Գ. «զգեստիւք» 18 Բ. Գ. «զնոյն» 23 Ա. «յառաջ» 26 Գ. «քանզի» 27—28 Բ. «շնորհիւն» 29—30 Բ. «ի նմանէ» փխ. «ի թագաւորէն» Ա. «զաւրացուցանէ», Բ. Գ. «զօրացուցանէր զսա ի բանս իւր» 32 Բ. Գ. «Օթման-պէկին փառաւոր սուլթանն որդի նմին սուլթան Համզայ (Գ. Համզայն)» 33 Գ. «զսա» չիք 36 Բ. Գ. «սիրէ և պատուէ» 36—37 Բ. «զհայրապետն»։*

*Եւ ձեռնագրեցաւ սա յաստիճան եպիսկոպոսութեան ի տէր* Կոստանդեայ *կաթուղիկոսէ* Վահկեցոյ, *որ էր ի մեծ թուականիս Հայոց ՊՀԹ. (1430)։ Մեծարեաց զսա և կաթուղիկոսն զանազան պատուով և պարգևաւք, և հաստատեաց արքեպիսկոպոս ի վերայ ԻԴ. (24) գաւագանի։ Եւ ամենեքեան սիրով հնազանդեցան և ընկալան զսա իբրև զառաքեալ աստուծոյ, և եղև բանս սորա արդիւնաւոր ընդ ամենայն երկիր։ Եւ եղև յաւուրս սորայ ցնծային եկեղեցիք Հայաստանեաց, և բարձրանայր եղջիւր քահանայից, և պայծառանայր հաւատս քրիստոսական, և ուրախանային ամենայն հաւատացեալք։ Զի յայտնեցաւ հովիւ քաջ և արժանաժառանգ վիճակին պայադատ, որ գիտէ հովուել զբանաւոր գառինքն յարօտ անմահորար և ի ջուր կենդանի՝ բազմադիմի և յորդառատ վտակաւք, որ տուեալ է սմայ առատապէս ի շնորհացն հոգոյն։*

*Զի աւրէն [է] պատմագրաց յաւելեալ ի ճառս գովեստից, այլ մեք զնոյն շարագրեցաք, զոր ականատես եղաք և յայտնի է ամենայն երկիր տեսողաց, այլ մի ըստ միոջէ գրել ձանձրութիւն է լսողաց, այլ համարեա՝ թէ զամենայն տեսակ աստուածային շնորհաց։ զոր յամենայն մարդիկ՝ ի սա միայն տեսանիւր լի և անթերի՝ ընկերասէր, աւտարասէր, աղքատասէր, խաղաղարար, խոնարհ և համբերող, ողորմած, առատասիրտ, մեծապարգև, զի յայսմ ժամանակի ոչ ոք էառ իբրև զսա և ոչ երետ իբրև զսա, որպէս ասաց տէրն՝ Զրի առէք և ձրի տուք։*

*Զի սա միայն գտաւ արկանել զքանքարն ի սեղանաւորս և բազում բարեաց պատճառ եղև կարողութեամբն աստուծոյ։ Նախ, զի եկեղեցիս խախտեալ ոչ ոք իշխէր քար մի ամբացուցանել, և սա զամենայն եկեղեցիս խախտեալ և զհնացեալ և զհողաշէնս՝նոր նորոգեաց կամարակապ և զմբեթաձև, և բազում նորաշէնս, որպէս զբարձր Աստուածածինն՝ ի գլուխ բարձր բերդին* Արղնոյ:

*Եւ երկրորդ, զի յաւելեաց յեկեղեցիս բազում շուրջառ մեծագին, գիրք, աւետարան, և սկիհ պատուական և զարմանալի, և հանապազ զնոյն բանս հոգայր։*

*Երրորդ, զի ոչ իշխէին համարձակ պաշտել յեկեղեցիս. և յաւուրս սորա համարձակ պաշտէին. առաւել պաշտէին քան յանապատս և ի վանորայս։*

*Չորրորդ, զի հալածէին զքահանայս և հարկապահանջութեամբ տանջէին առաւել քան զաշխարհականս. և սա, կարողութեամբն աստուծոյ, զամենեսեան ազատ արար ի թագաւորական հարկէն։*

*Հինգերորդ, զի եկեղեցիք* Միջագետաց *ի ներքոյ դիմոսական հարկի կային, և եպիսկոպոսք՝ մաքսապետք, զի զամենայն, զոր ինչ*

---

1 Բ. «արքեպիսկոպոսութեան» 6 Բ. Գ. «րան» 7 Գ. «Եւ յաւուրս սորա ցնծային եկեղեցիք», Ա. Բ. «ցնծայր»12—13 Բ. Գ. «շնորհաց» 16 Բ. «երկրի» փխ. «երկիր տեսողաց» 18 Գ. «մարդիկք», Բ. «մարգիկն» 19 Ա. «խաղաղերար», Բ չիք 20 Գ. «և առատասիրտ», 21 Բ. «առ» 25 Բ. «յեկեղեցիս» 29—30 Գ. «շուրջառս մեծագինս» 30 Գ. «սկիհն» 33 Բ. Գ. «քան զոր» 36—37 Բ. Գ. «Քրիստոսի» փխ. «աստուծոյ» 39 Ա. «հարկէ», Բ. «հարկին»։

առնուին ի քրիստոնէից՝ ի մաքսատային, և ոչ կտրէին մէկ հաց տալ աստուծոյ կամ աղքատի, և սա, շնորհիւ զօրութեամբն Քրիստոսի, երարձ զմաքսն յեկեղեցեաց և ինքն ևս առնոյր ի պարոնացն Ժ. (10) և Ի. (20) հազարով և բաշխէր եկեղեցեաց, աղքատաց և կարաւտելոց։

Վեցերորդ, զի վասն սորա ազգ կարգաւորաց առաւել սիրեցեալ եղեն ի պարոնաց քան զառաջնորդս իւրեանց։

Եւթներորդ, զի ոչ ոք իշխէր փիլոնով կամ վեղարով շրջել. և յաւուրս սորա յամենայն ուրեք համարձակ զգենուին և քահանայական կարգաւք շրջէին՝ երևելի փառաւք։

Ութերորդ, զի անուամբ սորա բազմաց ազատութիւն լինէր ի դատաստանաց և ի տուգանաց և ի բռնաւորաց, մինչ զի ի ճանապարհի ըմբռնէին զբազումս. և յորժամ ասէին, թէ մենք տէր Նաղաշի մարդն ենք՝ ազատ առնէին։

Իններորդ, զի բազում գերիս ազատեաց յանօրինաց, զորս գնելով, և զորս խնդրեաց ի պարոնաց, և զորս յափշտակելով ի ճանապարհին։ Առաքէր ի ծառայից իւրոց արս զօրեղս և սրտապինդս, և խլէին զգերիս յանաւրինաց և բերէին ի Նորաշէն վանս իւր ապաստանի՝ ի բարձր Աստուածածինն, պահելով ժամանակս ինչ, մինչև գային տեարք ծառայիցն, և տայր նոցա հանդերձս և նաֆաղայս, և ուղևորէր ի տեղիս իւրեանց։

Տասներորդ, զի զամենեցուն պակասութիւնն և զնեղութիւնն և զվիշտն՝ ինքեան համարէր. և ամենեցուն աւգնական լինէր՝ կերակրով, պարգևս տալով, և կարեկից լինելով, և մխիթարելով բանիւք և արդեամբք։

Մետասաներորդ, զի դրունք եկեղեցոյ հանապազ փակեալ կային և ոչ գոյր յեպիսկոպոսարանն սեղանատեղ, և սա, կարողութեամբն Քրիստոսի; այսպիսի սեղանատեղ սահմանեաց, մինչ զի յամենայն ազգաց գային՝ ուտէին, ըմպէին և առեալ տանէին անխնայ և անարգել՝ առատապէս, մինչ զի պարոնայք զարմանային, թէ ուստի՞ կարէ պատրաստել ինչ, որ բաւական լիցի այսչափ ուտելոյ, տանելոյ և պարգևելոյ, ոմն ասելով թէ քէմիայ ունի,* բազումք ասէին թէ գանձ է գտեալ. և փող մի չունէր, այլ շնորհիւն աստուածոյ գայր նմա գանձ անպարապելի, որ յամէն աւր Ճ. (100) թանկայ և ԲՃ. (200) մուսխ էր նորա, սակաւն Ծ. (50) և Կ. (60) [թանկայ] լինէր ամէնն ի շինուածն սուրբ կաթուղիկէին սրբոյն Թորոսի, քեզ օրինակ, որ բանակն Մովսէսի յաբիկունն դատարկ լինէր ի մանանայէն և ի լուսա-

2 Բ. Գ. «աստուծոյ տալ», Բ. Գ. «աստուծոյ» փխ. «Քրիստոսի» 7 Ա. «վեղարով» 11 Ա. «ի դանաւորաց» (*) 11—12 Ա. «ճանապարհի» 12 Ա. «Նզաշի» 13 Բ. «մարդիկ եմք» 14 Ա. «անօրինաց» 10 Ա. Բ. «զօրեղ և սրտապինդ» 19 Բ. «տային» 20 Ա. «ուղաւորէր» 21 Բ. «պակասութիւն և զնեղութիւն» 22 Գ. «յինքեան» 23 ԱԲ. «բանիւ» 25 Գ. «եկեղեցեաց» 27 Բ. «սեղան» 28 Բ. Գ. «ըմպէին» 34 Ա. «մուսհ», իմա «ծախս» Բ. «մուտն» 34 Ա. «ամէն», Բ. «և տայր» փխ. «ամէնն» 35 Գ. «Թէոդորոսի» 36 Ա. «դարտակ» Ա. «ի մանայէն» Ա. Գ. «և» չիք

* Այսինքն՝ ձեռք է ձգել քիմիա քարը, որի օգնությամբ, հավատում էին, թե հնարավոր է անազնիվ մետաղներից ոսկի և արծաթ ստանալ

նալ առաւօտուն լին էր ամենայն բարութեամբ, նոյնպէս և աստուած լցուցանէր զաէրս մեր հոգևոր ամենայն բարութեամբ, զի քան զմեծամեծ թագաւորս առաւելի բաշխէր ձիս, ջորիս, հանդերձս, ոսկի, արծաթ, ցորեան՝ մեծատուր պարգևաւք։ Եւ որքան առաւել բաշխէր՝ առաւել տայր նմա Քրիստոս՝ նա, որ ասաց՝ Տուք և տացի ձեզ, և սա ճշմարիտ հաւատայր, զի անսուտ է խոստումն, վասն որոյ առնոյր ըստ հաւատոյն։

Երկոտասաներորդ, զի յայսմ ժամանակի սա միայն կատարեաց զհրաման տեառն իւրոյ, որ ասաց՝ Բարի արարէք ատելեաց ձերոց, և սա զամենայն ժամանակս կենաց իւրոց սիրեաց զթշնամիսն և բարի արար ատելեաց, և ամենայն չարի փոխարէն՝ բարի հատուցանէր, վասն որոյ արդարադատն աստուած զամենայն թշնամի սորին անդընդասույզ կորոյս։

Երեքտասաներորդ, զի յաւուրս սորա եղև աւգտութիւն մեզ, զի զմեռեալս քրիստոնէից ի քարշ տանէին Հայք, և Ասորիք, և Նեստորականք, և Ջհուտք. և թէ ՃՌ. (100,000) դեկան տային՝ ճարակ չկայր. և ի գալն նորա, ընթացեալ մօտ ի սուլթանն, և ընդ բազում պարգևացն, զոր ընկալաւ՝ խնդրեաց և զայն, և առեալ հրաման բարձրացուցանել զմեռեալս քրիստոնէից, և այս սովորութիւն եղև։

Դարձեալ, ի ՊՁ. (1431) թուին նստի յաթոռ հայրապետական ի յԱմիթ շահաստանի; և ի [Պ]ՁԲ. (1433) թուին շինէ զբարձր Աստուածածինն ի յԱրղնու բերդն, ի ՊՁԸ. (1439) թուին սկսանի վերանորոգել զամենագով և զամենահրաշն զամենեցուն զարմանալին՝ զհրաշափառ Կաթուղիկէն, որ յԱմիթ շահաստանի, յանուն սրբոյն Թէոդորոսի զինաւորին։ Եւ թէ որչափ աշխատանք կրեաց ի նմա անասելի, մինչ գրեթէ հողանիւթ մարմին ոչ կարէր տանել այնպիսի երկարախոնջ, ցայգացանկ և գիշերատանջ չարչարանաց, որ իբրև զկենդանի նահատակ զԴ. (4) ամ մարտիրոսական արիւն եհեղ ի շինումն սուրբ եկեղեցոյն և աւարտեալ կատարեաց գմբեթայարկ յօրինուածով, անասելի և անպատմելի գեղեցկութեամբ, զի գլուխ գմբեթին բարձր էր քան զմնարայիցն և Ը. ու Ժ. (18) անկիւնիւ ճոխացեալ, և Ը. ու Ժ. (18) լուսամուտս ի գմբեթին, և բարձրութիւն լուսամտին՝ ի չափ մարդոյ, և ով ոք կարէ ընդ գրով արկանել զզանազան յաւրինուածս գմբեթին վայելչութեան։

Զոր տեսեալ քրիստոսատեաց ազգն մահմետականք, և ի խոր խոցեցան, և ձայն ետուն միմեանց որդիքն հագարայ, և հոչակ հարեալ համբաւեցին և ամբաստան եղեն առ սուլտանն Եգիպտոսի, և առ թագաւորն Պարսից, և առ սուլթանն Հոռոմաց տանն, եթէ այսպիսի դեղեցիկ յօրինուածով բարձրացաւ եղեղեցին քրիստոնէից։ Զոր

---

3 Բ. Գ. «աւելի» 8 Ա. «սա» չիք 9 Ա. «իւր» չիք 11 Գ. «ատելեաց իւրոց», Ա. «մատուցանէր» 13 Բ. «արար» փխ «կորոյս» 14 Բ. «դիւրութիւն» 15 Բ. «քարշէին» 16 Գ. «Ջահուկք» փխ. «Ջհուտք», Բ. «ճար» 22 Գ. «յԱրզնւոյ» 25 Ա. «յորչափ», Բ. «աշխատանս», Բ. «ի նմանէ» 29 Բ. «շինուածով», 29—30 Ա. Բ. «անասնելի» 31 Բ. «զմնիրայիցն», Գ. «անկիւնով», Գ. «ութուժ.» (18) 32, Ա. «լուսնամուտս» 36 Գ. «Զոր տեսեալ և ի խոր խոցեցան»։

լուեալ նոցա վառեցան չար նախանձու և իսկոյն իսկ դեսպան և հրովարտակս առաքեցին առ սուլթան Համզէն՝ քակել զամենագով սուրբ Կաթուղիկէն։ Եւ անտանելի սուգ հասաւ Հայոց ազգին, և ամենեքեան ի խոր խոցեցան, և յամենայն աչաց աղիողորմ արտասուս հեգոյր· Եւ ետուն կաշառս գանձս բազումս, և ոչ կարացին ազատել, զի զամենահրաշ և զամենագով գհրաշալի գմրէթն քակեցին հաւասար աններացն, և ամենայն քրիստոնեայք ի սուգ մտին։ Ո՜հ, ոհ, ոհ, ով կարէ պատմել զանտանելի սուգն և զաղիողորմ կսկիծն, զձայնս հառաչանաց և զողբս տարակուսանացն, և զկականաւոր աղաղակն, և զաղետալի մորմոքումն, զի ամենայն սիրտ ի տրտմութեան էր և ամենայն աչք յորտասուս, ամենայն բերան յաղաղակ և ամենայն լեզու յաւաղումն։ Եւ առաւել ևս արի այցելուն և քաջ հովուապետն տէր Մկրտիչ՝ շինօղ սուրբ Կաթուղիկէին։ Եւ ի սաստիկ խոցոյն և ի գառն կսկծանացն տարաշխարհիկ եղև, և գնացեալ էանց ի ծովն Պոնտոսի և եհաս ի Կաֆայ և յՍտամպօլ, և գցայգ և զցերեկ խոցեալ սըրտիւ առ աստուած աղաղակէր՝ այցելու լինել սուրբ Կաթուղիկէին յառաջ քան զելանելն ի մարմնոյն, զի մի մտցէ խոցով ի գերեզմանն։

Այլ ողորմածն աստուած՝ այն, որ կատարիչն է խնդրուածոց և լսօղ աղօթից, տեսեալ զջերմեռանդ սէր նորա, որ առ աստուած և առ սուրբ Կաթուղիկէն, և լուաւ աստուած աղաչանաց նմին և կատարեաց աստուած զխնդրուածս նորա։ Սատակեաց աստուած զայնոսիկ, որք քակեցին զգմբեթն և յարոյց այլ թագաւոր Միջագետաց՝ զՋեանգիր իմիրզայն։ Եւ տեսչութեամբն աստուծոյ նա խնդիր արար, և գիր և դեսպան առաքեաց Ջեանգիրն,և ամենայն մեծամեծքն, և զատէստանն, և տանուտերարքն քրիստոնէից, և ամենայն քահանայքն՝ ժողովրգովք միաբան գիր գրեցին հետ պարոնաց թղթին՝ Բ. (2) և Գ. (3) անգամ, և մեծաւ ջանիւ առաքեցին ի Կաֆայն, և բերին զամենեցուն զտենչալին զարհիական գլուխն զտէր Մկրտիչն՝ մեծաւ պատուով։ Եւ միաբան ընդ առաջ ելին Բ. աւուր ճանապարհ, և ընկալան մեծաւ պատուով՝ ուրախութեամբ և ցնծութեամբ, զի յօրէն, յորմէ* հետէ ելեալ էր սա ի Միջագետաց՝ ամենայն եկեղեցիք ի տրտմութեան կային, որպէս զմայր որգեմեռ ի տարակուսանս կային, և ամենայն քրիստոնեայք ի տրտմութեան։ Վասն որոյ ի գալն սորա ցնծացան ամենայն քրիստոնեայք, և բերկրեցան ամենայն եկեղեցիք, և զուարճացան մանկունք Սիոնի։ Եւ սա՝ արիացեալ ի հոգոյն սրբոյ և առեալ հրաման ի պարոնէն և ԳՌ. (3000) թանկայ պարոնացն ետ և մեծամեծացն, և վերստին նորոգեաց, շնորհօքն Քրիստոսի և ողորմութեամբ նմին։

3 Գ. «հասեալ ազգին Հայոց», Բ. «ազգիս Հայոց» 4 Ա, «յաչաց» 4—5 Գ. «հեղուին» 6 Բ. «կմբէթ» 7 Գ. «ամենեքեան» 8 Ա. Գ. «զձայն» 9 Ա. «հառաչաց» 14 Ա. «կսկծանաց» 15 Բ. «Կաֆայն» 18 Բ. «գերեզման» 22 Բ. «որ» 25 Բ. «զատաւորքն» փխ. «զատէստանն» 27 Բ. Գ. «գիր» չիք 35 Ա. Բ. «քրիստոնեայքն» 37 Ա. Բ. «մեծամեծացն ետ», Բ. «ետ» չիք, 39 Բ. «նորին»։

* Սույն էջի 13-րդ տողի «Մկրտիչ» բառից սկսած մինչ այստեղ՝ բացակայում է Ա. ձեռագրից՝ մի թերթի կորուստի պատճառով։

Եւ բնակիչք քաղաքին՝ քահանայք և ժողովուրդք, միաբան աւգնական եղեն՝ աշխատելով, դրամ տալով, կերակուր բերելով, մշակ տալով, աղքատք և մեծատունք միամիտ քաջութեամբ և բոլոր հաւատով ջանացին, և ի Ժ. (10) աւրն կատարեցին զգուպայն ի շինելոյ.

Եւ առաջիկայք ժողովրդեանն և երեւելի տանուտէրք էին՝ Շանրմանն Թիլկուրանցի, և ոսկերիչ Սատաղէն, որ էր երեսփոխան և հրամանատար, և Ալեքսիանոս ոսկերիչ, և Յերկեն Դանիէլն, Աբրահամն, և Սիմէոն դարբինն, որ ինքեանք տային ինչս բազումս և կերակուրս, և զամենեսեան յորդորէին ի գործառութիւն սուրբ կաթուղիկէին։ Եւ կատարեցաւ սուրբ կաթուղիկէն ի ՊՂԶ. (1447) թուին, յաւգոստոս ամսոյ ի Զ. (6), յաւուր երկուշաբթի, ձեռամբ վարպետ Նեքամատին:

Եւ յորժամ ետես արհիական գլուխն եկեղեցոյ և աստուածաբան վարդապետն տէր Մկրտիչ զսուրբ կաթուղիկէն կատարեալ՝ մեծաւ ուրախութեամբ զոհացաւ զաստուծոյ, և մոխրաթաւալ երեսաւք աւրհնէր զամենազաւրն աստուած, և ցնծայր և պարէր ի գաւիթս եկեղեցոյ, որպէս երկնաւոր փեսայ ի մաքուր առագաստին, և զարդարեաց զեկեղեցին ամենայն կահիւք և զարդիւք։ Եւ բերեալ ի Տրապիզոնու զմեծ սկիհն՝ զանազան յաւրինուածով, ոսկեզօծ և յոյժ պատուական, որ ոչ ուրեք գտանի այնպիսի փառաւոր սկիհ փարթամ և գերաշխարհիկ՝ Ճ. և Ձ. (180) մաղալ քուլիճայ արծաթ՝ ոսկեղաւծ և մինաքարի։ Եւ ի Կաֆայն գնացեալ և ինքն շինեալ նորաձև նաշխ խաչաձև, ետ գործել շուրջառս մեծագինս բազմախաչեան։ Եւ զհրաշալի և զչքնաղազարդ զպատուական սուրբ Նշանն Քրիստոսի բերեալ ի Կաֆայէն, որ ունի մասն ի խաչափայտէն Քրիստոսի և բուն սուրբ Նշանին՝ ի լուսափայլ ականց, և ի սիրտս խաչին՝ զՔրիստոս բևեռեալ յոսկոյ ձուլածոյ։

Եւ թէ ուստի՞ իցէ հրաշալիս այս՝ պատուական սուրբ Նշանս. զսա պապն Հռոմայ պարգևեաց մեծ վարդապետին Սարգսի Կաֆայեցւոյն, յորժամ գնաց ի Հռոմ: Եւ ի գնալն տէր Մկրտչին ի Կաֆայն, մեծ վարդապետն Սարգիս ընկալաւ մեծաւ պատուով, և ընդ բազում մեծարանացն և պատուոյն՝ պարգևեաց տէր Մկրտչին զսուրբ և զհրաշալի զպատուական սուրբ Նշանն։ Զոր ընկալեալ մեծաւ ուրախութեամբ, և բերեալ մեծ պարգևք տանս Հայոց՝ ի սեփհական յաթոռն իւր՝ և յԱմիթ մայրաքաղաքն, ի սուրբ կաթուղիկէն, զոր ինքն շինեալ էր։ Եւ եհաս յաւուր տաւնի սուրբ Նշանին Վարագայ, և զօրն զայն տօն մեծ կարգեաց յանուն սուրբ Նշանին, և սահմանեաց ամ յամէ

---

3—4 Բ. «սրտիւ» փխ. «հաւատով» 4—5 Ա. Բ. «զկուպայն ի շինելոյն» 7 Բ. Գ. «Թուլկուրանցի» 8 Գ. «Երկայն», Բ. «Երկեան» 10 Ա. «ի գործութիւն» Ա. այսեղ և այլ ուրեք՝ «կաթաւղիկէին» 12 Գ. «օրն», Բ. «ուսթայ» 13 Գ. «Նէքամատին», Բ. «Քամատին» 18 Բ. Գ. «զերկնաւոր» 20 Գ. «օրինուածով», Ա. «յոժ» 22 Գ. «մզղալ», Բ. «մինաքարի» 24—25 Գ. «պատուական» 26 Բ. «խաչէն», Գ. «Նշանն», Ա. «լուսափայլ», փխ «ի լուսափայլ» 29—30 Ա. «Կաֆեցոյն» 33 Բ. «ընկալաւ» 34 Գ. «աթոռն»։

յամենայն տարի, զնոյն օր մեծ տօնախմբութեամբ ուրախութիւն առնել բազմութեամբ հաւատացելոց, ուխտ մեծ կատարել զաւր գալստեան սուրբ Նշանին ի փառս Քրիստոսի աստուծոյ մերոյ։* Եւ զսուրբ և զհրաշալի սուրբ Նշանն և զպատուական սկիհն և զհանդիսաւոր շուրջառն ամենավայելուչ, և զայլ զեղեցիկ շուրջառն, և զայս հրաշալի Յայսմաւուրքս, որ ետ յիշատակ բարի ի սուրբ Կաթուղիկէն, և զՏարեգիրքն՝ յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնաւղացն իւրոց՝ Առաքել քահանային և Հռիւս-խաթունին, և եղբարց իւրոց Յովաննէս քահանային և պարոն Աբգարին,** Ներսեսին և Ստեփաննոսին, որք ի Քրիստոս են հանգուցեալ. ի յիշատակութիւն հոգոց նոցա և ի վայելումն աստուածապարգև զաւակին իւրոյ տէր Մեսրոպին, որոյ տէր աստուած վայելել տացէ երկար կենաւք և պարագայց ամաւք. ամէն և եղիցի։

Վասն որոյ աղերսեմք զձեզ ի հոգի և ի մարմին, որք հանդիպիք ի սուրբ Կաթուղիկէն, և սուրբ գրոցս, և սուրբ Նշանին, և հրաշալի սկոյն, և վայելչագեղ շուրջառին, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զարժանին յիշման զտէր Մկրտիչ արքեպիսկոպոս և աստուածաբան վարդապետն՝ զշինաւղ սուրբ Կաթուղիկէին, և զծնաւղսն նորին՝ զԱռաքել քահանայն և զՀռիւս-խաթունն, և զեղբարսն իւր զՅովաննէս քահանայ, և զպարոն Աբգար, և զՆերսէս, և Ստեփաննոս, և զծաղկեալ զաւակն իւր և զաւագ որդին՝ զտէր Մեսրաւպ, և զամենայն երաշխաւորսն իւր, և առաւել զտէր Յոհաննէս եպիսկոպոս բարձր Աստուածածնին, և զմղասի Յոհաննէսն և զծնողն իւր, որ Ի. (20) տարի ծառայութիւն արար տէր Մկրտչին, և շատ աշխատեցաւ ի սուրբ Կաթուղիկէն և ի բարձր Աստուածածինն, և զեկեղեցպանն, որ կայ հանապազ ի սպասաւորութիւն ի սուրբ Կաթուղիկէն և ի շինելն աւգնական եղև։ Եւս առաւել յիշեցէք ի Քրիստոս զՂարա-Սադաղէն և զմղտսի Զմրութն, որ աւգնական եղեն ի գիր և ի թուղթ Յայսմաւուրացս։

Այլ և զքաղաքի քահանայքս, որ եղեն յաւուրս սորա՝ զհանգուցեալքն ի Քրիստոս զԴաւիթ երէց, զՄարգարէ, զԱստուածատուր, զԹումայ երէց, զՅիսէ երէց, զՄիքայէլ , զԱռաքել երէց, որոյ տէր աստուած ողորմեսցի նոցա և իւր սուրբ տեսոյն և սուրբ արքայութեան արժան առնէ, ամէն։ Նաև զՂազար քահանայ՝ աւագերէց սուրբ Կաթուղիկէի սուրբ Թորոսու, որ բազում աշխատութեամբ չարչարեցաւ ի շինումն

---

1 Բ. Գ. «ուրախութիւն» 6 Գ. «երետ» փխ. «որ ետ», Գ. «զՏարեգիրքն ևս»։

* Բ. ձեռագրում Հիշատակարան-վարքն ավարտվում է այստեղ։

** Գ. ձեռագիրը սրանից հետո ունի միայն մի պարբերություն՝ որով և ավարտվում է հիշատակարանը։ Ահա այդ պարբերությունը. «որք ի Քրիստոս են հանգուցեալ, որոց յիշատակն օրհնութեամբ եղիցի. վասնորոյ սրտահառաչ տենչմամբ աղաչեմ զհանդիպօղքդ, որք հանդիպիք ի սուրբ Կաթուղիկէն և սուրբ գրոյս և սուրբ Նշանին և հրաշալի սկոյն և վայելչատես շուրջառին, յիշեցէք ի մաքրափայլ աղօթս ձեր զարժանին յիշման զտէր Մկրտիչ արքեպիսկոպոսն և զաստուածաբան վարդապետն, և զծնօղս նորին, և զփծուն ծըօղս ես ընդ նմին։ Ի թուականութեանս Հայոց կրկին քառիւք հարիւրօք և երկ յորելին ընդ նմին երկերիւրօք հանդերձ և եռիւք ընծեօք աւարտելոց (1678 թ.)...»։ Ուրեմն, № 9004 Գ. ձեռագիրն ընդօրինակված է 1678 թվականին։

սուրբ եկեղեցոյս, նաև բազում աշխատութեամբ գնաց ի Կաֆէն՝ թղթով պարոնաց և տանուտրաց, երբ զպարծանաց պարծանքն մեր՝ զլուսաւորիչն մեր զտէր Մկրտիչ. այլև զընկերք նորին՝ զքահանայքն՝ զԿիրակոս, զխաչատուր, զԳրիգոր, զՅովաննէս, զԱստուածատուր, և զմիւս խաչատուր եզնկացի: Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս զհոգևոր մայրն մեր զմղտսի Ասանեթն և զծնողս իւր, որ շատ աշխատեցաւ հետ մեզ, ևս առաւել յիշեցէք ի Քրիստոս զբռայիս Գտոնն, և զիւր աւրհնեալ որդին զխալաւն, և զխութլուն, և զԹանխուսն, որ շատ աշխատեցան հետ մեզ, և զմեր միաբանքն զամէն ծառայեցին ի շինումն սուրբ և փառաւորեալ բարձր Աստուածածնին, զմեզ զամենսեան կերակրելով, ծառայելով, լուանալով և խնամ տանելով, որոց տացէ տէր աստուած միոյն հազարա[պա]տիկ փոխարէն զարքայութիւնն երկնից՝ պարոն Գտոնին, և աւրհնեալ խալաւին, և մօրն իւրոյ խութլուին, և կենակցին իւրոյ Թանսուխին, և եղբօրն իւրոյ Անթասամին, ամէն:

Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս զՇանմելիքն՝ զկենակիցն տէր Մեսրոպայ, որ տղայ հասակաւ փոխեցաւ ի Քրիստոս, զի դեռ Բ. (2) ամիս էր, որ տէր Մեսրոպն երէց էր աւրհնած և Շանմելիքն նոր տիրուհի, և նման աբեգական փոխեցաւ ի Քրիստոս ի ՊՂԲ. (1449) թվ[ականին],*

Յիշեցէք ի Քրիստոս և զարժանին յիշման զՏրնէ-Մելիքն՝ զխաթուն մայրն Շանմելիքին, որ յետ ԺԵ. (15) աւուր և ինքն փոխեցաւ ի Քրիստոս, որոյ ողորմեսցի Քրիստոս աստուածն, ամէն:

Յիշեցէք ի Քրիստոս զՅովանէս և զԱբուսն և զիւրեանց անմեղ զաւակներն՝ զԱղուպն և զՔաքամն, որ տարաժամ մահուամբ փոխեցան ի Քրիստոս և զբօղչէն տվին Ցայսմաւուրացս՝ յիշատակ հոգոյ իւրեանց, որոց ողորմեսցի Քրիստոս աստուած գծողին այս գրիս Սարգիս սարկաւագին, ամէն, հայր մեր:

## 705

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

ՄՑՎ 10 (280), հա. Ա., սյուն. 115—116

Հետ. ստացող՝ Յովսէփ

ա

444 բ Յիշեցէք ի Քրիստոս և զվերջին ստացաւղս՝ զմեղաւոր և զանարժան սուտանուն կրաւնաւորս զՅովսէփ աբեղայս, և զմարմնաւոր ծնաւղսն իմ զխաչատուր և զԴուամէլիք, և զեղբայրսն իմ զԱմիրբէք, և զԱստուածատուր, և զՍտեփանոս՝ զփոխեցեալն ի Քրիստոս, այլ և

15 Ա. «զկենակցին»

* Հիշատակարան-վարքի մեջ եղող վերջին թվականն է այս: Ըստ այդմ էլ հիշատակարանը գրված պետք է լինի կամ 1449 թվականին, կամ նրանից միայն մեկ-երկու տարի հետո:

զհոգևոր „եղբայրն մեր՝ զտէր Յոհանէս կուսակրօն աբեղայն, և զծընաւղսն նորին՝ հայրն Եղէոնին, և մայրն Մարգային, և եղբայրն Յովանիսին, և ամենայն արեան մերձաւորաց նորին, ամէն։

Բ

Ծաղկող՝ Մկրտիչ Նաղաշ

Յորժամ ստացաւ տէր Յովսէփն, էր Թվ. ի ՊՂԸ (1449) ամին...։

Սոյն երջանիկ և աստուածաբան սուրբ վարդապետս Յոհաննէս* ետ գրել զաստուածաշունչ սուրբ տառս յիշատակ հոգւոյ իւրոյ և ամենայն մերձաւորաց։

Եւ վասն առաւել բարեսէր կամացն արար զանարժան ծառայս իւրն յորդեգիր. և յառաջ քան զվախճանն իւր երեք ամով՝ պարգևեաց մեզ զսուրբ գիրքս յիշատակ սուրբ հոգւոյն իւրոյ։ Եւ եկաց մնաց առ իս սուրբ գիրքս՝ յետ վախճանի սուրբ վարդապետին՝ վեց տարի,** ի մայրաքաղաքն յԱմիթ, ի Նորակերտ սուրբ Կաթողիկէն։ Ապա յետոյ եկն եհաս և հանդիպեցաւ առ մեզ ի յԱմիթ մայրաքաղաք ճըգնազգեաց սուրբ կրաւնաւորն Յովսէփ, ձեռնասուն աշակերտն սուրբ և աստուածաբան վարդապետին Առաքելի։ Որ և տեսեալ սուրբ աստուածաբեալ աստուածազարդ գիրքս, և փափա[գտն]աւք խնդիր արար ի մէնջ։ Եւ իմ տեսեալ զջերմեռանդ սէր և տենչումն նորա... պարգևեցաք զսուրբ աստուածազարդ գիրքս Յովսէփ կրաւնաւորին անգարձ յիշատակ. և ի պատճառ գրոցս առաք ՅԾ. (300) թանկայ ի Յովսէփ կրաւնաւորէն և խարճեցաք ի սուրբ Կաթուղիկէն՝ վարդապետի հոգւոյն, և գրեցաք զվարդապետի անունն ի սուրբ Կաթուղիկէի յիշատակարանն...։ Յիշեցէք ի Քրիստոս Յիսուս նախ և առաջին զարժանին յիշման՝ զաստուածաբան վարդապետն զՅովանէս բաբունապետն, և զեղբայրն իւր զԹուղթամուր միայնակեացն...։ Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս և զիս՝ զեղկելիս զմեղաւոր Մկրտիչ միայն անուամբ եպիսկոպոս, մականուն Նաղաշ կոչեցեալ, զշինող սուրբ Կաթուղիկէին, որ յԱմիթ մայրաքաղաք և բարձր Աստուածածնին՝ ի յամուրն Արղնու, և զծնողսն իմ զԱռաքել քահանայն և զՀռիփս-Խաթուն...։***

---

* Տպված է «Յովսէփ»։ Ըստ երևույթին ձեռագրում գրված է եղել հապավումով «Յով.», և հրատարակիչը առաջին պարբերության մեջ հիշվող Յովսէփի հետ շփոթելով, հապավված անունը սխալ է վերծանել։

Առաջին ստացող Յովհաննէսի մասին տես այս հիշատակարանի շարունակության մեջ և 1422 թվաշարքի 2-րդ հիշատակարանում։

** Այսպիսով, ձեռագրի պատվիրատու Յովհաննէս վարդապետը վախճանվել է 1449-ից 6 տարի առաջ՝ 1443-ին։ Ձեռագիրը նվիրել է Մկրտիչ Նաղաշին իր մահվանից 3 տարի առաջ, ուստի 1440-ին։

*** Հրատարակիչը հայտնում է, որ այս հիշատակարանին նոտր գրով կցված է հետևյալը. «Որ եղ յիշատակ ի դուռն ամենասուրբ Առաքելոցն և սուրբ Աստուածածնին և սուրբ Կարապետին ի աթոռն Կամխայ Աւագ վանքն, ի թվականութեան Հայոց Ջ· (1451) ամին»։ Չի պարզվում, թե ով է նվիրաբերողը։

## 706

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Ն. Ջուղա, Ամենափրկիչ 546*

*Հիշատակագիր՝* Մկրտիչ Նաղաշ

316 *Զմեղապարտ* Մկրտիչ *նկարագիր. և արքեպիսկոպոս ամենայն* Միջագետաց, *և երեսփախան կաթողիկոսի ամենայն Հայաստանեայց, որ զվերջի յիշատակարանս գրեցի, աղաչեմ յիշել...։**

## 707

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրգ. Նոտ., էջ 159—160, Բաղէշ, ս. Գէորգ եկեղեցի*

*Գրիչ՝* Ներսէս եպիսկոպոս
*վայր՝* Աղթամար

*...Եւ արդ, ես...* Ներսէս *անուամբ և եթ աբեղայ եղկելի ոգիս՝ ծրագրող սորա ... գրեցի զսա ընդ հովանեաւ գերապայծառ և երկնանման սուրբ Խաչիս՝ զմրէքթայարկ տաճարիս և սուրբ Փրկչին, ընդ հովանեաւ սուրբ Սարգսիս, և ի հայրապետութեան տեառն* Զաքարիայի, *և ի թուականութեան Հայկազեան տումարիս ՊՂէ. (1448) ամին։*

... [*Յիշեցէք*] Ներսէս *սոսկանուն աբեղայիս, որ զսուրբ աւետարանս գծագրեցի, և ծնողացն իմոց* Կուռնի-Բէկին *և* էմնայ-Խաթունին, *և հարազատ եղբօրն իւրոյ* Ստեփաննոս *սրբասէր կրօնաւորի։ Աստուածողորմի ասացէք հոգևոր հօրն իմոյ՝ անյաղթ փիլիսոփային* Մինասենց Թումային, *ամէն։*

*Եւ արդ ես՝ ունայնս...* Հայրապետ *անուամբ և եթ աբեղայս, ի* Շատվան *գեղէ, ստացայ զսուրբ աւետարանս զայս... և ընծայեցի նուէր Նկարինայ սուրբ Յարութեան և սուրբ Աստուածածնին՝ հրեշտակաբնակ մենաստանին, յիշատակ բարի հոգւոյ իմոյ և ծնողացն իմոց* Թումային *և* Մարթային...:

*Եւ մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսա ի Նկարինայ սուրբ Յարութեան տաճարէն։*

*Աւա՜ղ դառնութեան ժամանակիս, որ պատահեցաք մեք, վասն զի յայսմ ամի, որ զսուրբ աւետարանս ծաղկեցի և կազմեցի՝ էր սաստիկ մահաբաժամ, .որ չէր եղեալ այսպէս ի վաղ ժամանակաց. և ժանգն ապականեաց զվաստակ դաշտաց, և մուկն եռաց յամենայն երեսս դաշտաց և ապականեաց զվաստակս։*

*Այս եղև ի ՊՂԸ. (1449) թվականին։*

---

* *Հիշատակագրությունն անթվական է, տեղադրում ենք Մկրտիչ Նաղաշի ինքնագիր հիշատակարանին առընթեր՝ 1449-ի թվաշարքում։*

## 708

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4928*

*Գրիչ՝* Գրիգոր
*վայր՝* Աղթամար

306 բ *...Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս յաստուածապահ կղզիս* Աղ-
թամար, *ընդ հովանեաւ ամենայաղթ սուրբ Խաչիս և սուրբ Նշանացս,*
*ի հայրապետութեան տեառն* Զաքարիայի *և ի թուականիս Հայոց ի* ՊՂԸ.
*(1449), ձեռամբ* Գրիգոր *ոսսկանուն և անպիտան քահանայի... ի*
*ստոյգ և յընտիր յաւրինակէ, կենօք տառապանաց և բաղում սյան-*
307 ա *դրխտութեամբ, ի դառն և ի վշտա* ‖ *բեր ժամանակիս, որ կամք ընդ*
*հարկի անաւրինաց՝ ազգին նետողաց...։*

*Արդ, որք հաշակէք յաստուածային բուրաստանէս... յիշեսջիք...*
*ստացող սորա* զՅովանէս *ոսկերիչն, և զծնաւղսն նորա* զԱմիրմուլք *և*
զԽոճ-Մէլիք, *և զզաւակսն նորա* զՅոճանէս, զԽաչիկ *և* զՅուստիանէ, *և*
*զկենակիցն նորա* զԹուրւանդայ, *և զնորին ծնօղսն* զՄարգարէ *և* զԲա-
բաթ-Մէլէք, *և զեղբարքն* զԴովլաթիար *և* զՇաճրիար, զՍքանգար *և* Գրի-
գոր, *և զքուերք նոցին* ըզՇաճ-Փաշէն *և* զՍուլտան-Մէլիք, *և զխոջայ*
Աառմն՝ *զայրն* Թուրվանդին, *որ և յետոյ եղև,* և զայլ ամենայն ազ-*
*գատոհմսն նոցին...։*

307 բ *Ընդ նոսին և զանպիտան* Գրիգոր *գրիչս, արժանի արարէք միոյ*
*աստուած-ողորմոյ, նա և զծնօղքն իմ՝* զԽաչիկ *և* զԱզիզ-Մէլիք, *և զեղ-*
*բայրքն իմ՝ զհոչակաւոր քարտուղարն* զԹումայ *կրօնաւոր և* զՆաւա-
սարդ, *և զզաւակսն իմ և զայլ ամենայն արեան մերձաւորսն մեր՝*
*զկենդանիսն և զհանգուցեալսն...։*

## 709

## ԱՆՑԱՑՏ ՋԵՌԱԳԻՐ

*«Հայապատում» Բ, էջ 576—577*

*Վայր՝* Մէրտին

*...Յորում ամի (1449) բացան պատուհանք հինից բարկութեան ի տանէ աստուծոյ, և մերկացաւ սուրն վաղակաւոր յազդերէ իւրմէ, և տարածեցաւ հուր ծախիչ ընդ ոլորտս տիեզերաց, ոչ եթէ խրատ կամ հարուած, որպէս երբեմն յԻսրայէլի, այլ պատիժ, վրէժ աշխարհի կորստեան, զի հարուածն և խրատն մին դաւառի լինի՝ զի միւսն խրատեսցի, իսկ պատիժն՝ համօրէն և ընդհանրական, որպէս Ջրհեղեղաւն։ Սոյնպէս և յայսմ ամի յընդհանուբ արարածս տարածեցաւ տարաժամ մահ, յելանելոյն արևու մինչև ի մուտս արևու, ի հիւսիսոյ մինչ ի հարաւ, զի ոչ ոք ետես կամ լուաւ ի հնոց կամ ի նորոց այսպիսի դառնալուր պատիժ և հիանալի տեսողաց և լսողաց զարմանալի։ Մինն այս է դառնութիւն սորա, զի բոլոր ամ մի է և երեք*

---

** Երկու բառի տեղ դատարկ է թողնված։*

ամիս, որ ի Մէքտիճս է և ոչ վերանայ. և երկրորդ եղեռնագոյն դառնութիւն, որ մի անգամ և երկու հանէ խոց և ողջանայ զաւուրս բազում, և դարձեալ կրկին հանէ և մեռանի. և երրորդ դժնեայ դառնութիւն սմին, զի յոր տունն որ մտանէ՝ բնաջինջ առնէ ամենայնիւ. չորրորդ սաստկութիւն սորա, զի ոչ տայ իմանալ զցաւն, երեւի թէ անվնաս է և իսկոյն մեռանի։ Որ եղև մեզ գալ և հանդիպել ի Մէքտիճ քաղաք ի սոյն ամի և դառն ժամանակի, զոր ոչ կարեմ պատմել կամ ընդ գրով արկանել զանցս աղետից և զմրուր դառնութեան, զկսկիծս մորմոքման և զբաժակն բարկութեան, զողբս արտասուաց և զբեկումն հառաչանաց, զվիշտս վառեալ և զհուրն բորբոքեալ, զաղիողորմ դառնութիւն և զանպատմելի տարակուսանս, զմեծական հառաչանս և զաղիողորմ արտասուս, զի աստուած էր խռովեալ և արաբիչն դառնացեալ, զի անբարկանալին աստուած էր բարկացեալ, և կենարարն մահու մատնեալ, զի ողորմածն աստուած անողորմն դատեցաւ և քաղցր բնութիւնն՝ վրէժխնդիր յայտնեցաւ, զի տուողն կենաց՝ հրաման ետ մահու, և պահապան հրեշտակն հրեղէն սրովն խոցէ. քաղցր տեսութիւնն ընդ ակամբ հայեցաւ, և սուրն վաղակաւոր իսկոյն ընդ մէջ կարէ զանմեղ մանկունսն։ Զի սաստիկ էր պատգամն և ահեղ պատգամարերն, զօրաւոր էր զինաւորն և սուրն և զօրագլուխ ահեղին, զի կարծեմ թէ, որ յանապատին զքսան և չորս հազարսն կոտորեաց՝ այսօր ի միջի մերում զեօթանասուն և հինգ հազարսն երևի, կամ որ երբեմն յաւուրս Դաւթայ ընդ մէջ կոտորեաց ի միում ժամու՝ այսօր շողշողացնէ զսուրն բարկութեան ի միջի մերում. կամ այն, որ զօրս Ռափսակայ զհարիւր ութսուն և չորս հազար սատակեաց ցուցանէ այսօր և զմրուր դառնութեան պատժոյն, և առաւել դառնագոյն քան զնոյն, զի անդ միայն ի գիշերի սպանանէր, և աստ ի տուէ և ի գիշերի, և աստ մի ամ և երեք ամիս, զի անդ միայն զանհաւատսն սատակէր և զարդարն ապրեցուցանէր, աստանօր՝ զարդարն վասն մեղաւորաց պատժէ։ Յամենայն առաւօտու փոխանակ լուսոյն՝ աղիողորմն կսկիծ ծագէ, և ամենայն աւուր փոխանակ արևուն՝ արեան արտասուք, յերեկօրեայ՝ երգ տրտմութեան, և ի մէջ գիշերի՝ խաւար մահաբեր, ի հաւախօսին՝ կանայք լալականք, և ընդ արշալոյսն՝ ողբերգականք պարաւորք։ Անդ էր տեսանել զողբս արտասուաց և անդանօր զկսկիծն մաղկտտանաց, զալիս ծերոց արեան արտասուօք թաթաւեալ, և զմարքն որդեմեռ՝ կիսամահ նուաղեալ։ Ոմանք ծամակտուր և այլք ոմանք հերարձակ. ոմանք սևազգեստ և կէսք հրապարակ. ոմանք յարեան ճապաղեալ և շատք ի խելաց անցեալ. ոմանք ապշեալք և ոմանք կատաղեալք ի դառն կսկծանաց։ Զի անմեղ գառինքն ի հուր ծնողացն եփեցան, մատաղ մանկունքն ի ծնողացն պատուհասեցան, որպէս ասէ աստուած մարգարէիւն, եթէ՝ Հանեմ զմեղս հարց՝ յորդիս և յորդիս յորդւոց նոցա. և զմեղս մարց՝ ի դստերս և ի դուստրս դստերաց նոցա։ Եւ մարգարէութիւնս այս այսօր առ մեզ կատարեցաւ, զի վասն մեր մեղացն անմեղ մանկունքն կոտորեցան։ Ո՜հ դառն դատաստանիս և սաստիկ վրէժխնդրու-

թեանս, ո՜հ անկասկած կատարածի և արժանահաս պատուհասի։ Վա՜յ է ինձ ի բիւրս հազարաց և եղուկ է զիս, թէ զո՞ր կսկիծ տեսի կամ զո՞ր դառնութեան բաժակ ըմպեալ ճաշակեցի։ Զի տեսի զնորաբողբոջ մանկունքն յաստուածային անհեղ սրոյն ստասանեալ, զի թաւալէին մանկունքն առաջի ծնողացն՝ որպէս զգառն սրով զենեալ, կամ զձագս աղաւնոյ նետիւ խոցոտեալ, ի վերայ գրկաց մարցն նուաղեալ, և ողորմն ընդ երեսս ծնողին նայեցեալ, զձեռքն մեկնեալ և զոտքն տարածեալ և առ մայրն աղաղակեալ, և ի հօրէն օգնութիւն խնդրեալ։ Ոչ մայրն ողորմէր մանկան և ոչ հայրն օգնական լինէր, և հրեշտակն անհեղ կերպարանօք զհոգին քակտէր, և ընդ քակտել հոգւոյն անմեղաց՝ և ծնողաց հոգին խոցոտէր։ Անդ էր տեսանել զմանկունս մու-բուագտլի աղիողորմ թաւալեալ, զնոր փեսայն և զնորահարսն՝ զի փոխանակ վայելուչ անկողնոյն՝ ի գէջ գետին և ի ներքոյ հողին տարածեալ, և փոխանակ հարսանեացն՝ սուգ սաւառնացեալ, և փոխանակ ուրախարար երգոցն՝ կանայք լալականք և ողբերգականք։

Արդ, զո՞ր լացից կամ, զո՞ր ոք ողբացից, զո՞րս ապաշաւեցից և զորո՞ց պատմեցից. զանմեղ մանկունքն՝ եթէ զկատարեալքն հասակաւ, զվայելուչ նորափեսայքն՝ եթէ զգեղեցկագեղ նորահարսունքն, զնորաբողբոջ կուսանքն՝ եթէ զսուրբ սարկաւագունքն։ Որ ամենեքեան ի միասին կոտորեցան որպէս զծաղիկ նռնենեաց՝ հարեալ ի կարկտէ յաւուրս գարնանային, զի ամենեցուն էր պատիժն և առհասարակ պատուհասն։ Անտանօր տեսանելի էր, զի ամենայն աչք ի յարտասուք և ամենայն բերան լալական, ամենայն անձն ի սուգ և ամենայն սիրտ ի տրտմութիւն։ Եւ այս ամենայն եկն ի վերայ մեր վասն բազում մեղաց մերոց ի ՊՂԸ. թուին Հայոց (1449). յորում ամի այսպիսի սաստիկ պատուհաս ընդ ամենայն գաւառս տարածեցաւ, և բազումս լալագին արար, և զբազում աւանս անմարդաբնակս, շատ մայր առանց որդւոյ արար, և շատ ծնող առանց զաւակաց, բազում տուն առանց տանուտէր, և բազում հարսն առանց փեսայի։

## 710

## Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

Փիրղ. Նօտ., էջ, 162—163՝ Վանի ս. Յակոբ եկեղեցի

Գրիչ՝ Թումա Մեծոփացի

վայր՝ Քաջբերունեաց Արջոնից վանք

... Ուստի և տեսեալ զսորա փրկագործութեան խորհուրդ մեղուցեալ գրիչս Թումայ Մեծոփացի* զտկարութիւն մարմնոյս ի բաց ընկեցի, և զօրութեամբ և օգնութեամբ հոգւոյն սրբոյ սկսայ և աւարտեցի զսուրբ աւետարանս յիշատակ ինձ և ծնողաց իմոց՝ Ղազար մահտասուն և Անբարին՝ հանգուցելոցն ի Քրիստոս։

Գրեցաւ ի յերկիրս Քաջբերունի, ի սուրբ ուխտս, որ կոչի Արջո-

* Չպետք է շփոթել նշանավոր Թումա Մեծոփեցու հետ, որը վախճանվել էր երեք տարի առաջ՝ 1446 թվականին։

Նից վանք, ընդ հովանեաւ սուրբ Գէորգայ զօրավարիս և այլ սրբոցն, որք աստ կան հաւաքեալ, և ի հայրապետութեան տեառն Գրիգորի սուրբ Էջմիածնի, և ի թագաւորութեան Ջհանշին՝ որդի Ուսուֆին, որ տիրեաց աշխարհիս Հայոց և Ասորւոց, զի էր խաղաղարար, և հարկապահանջութիւն բուռն էր... վասն մեղաց մերոց, և ի թուականութեանս մեր ՊՂԸ. (1449)։

Դարձեալ, մեղուցեալ գրիչս Թումայ և Մինաս եպիսկոպոս ընծայեցաք զսուրբ աւետարանս աստուածահաճոյ և փառաւորեալ տէր Գրիգոր կաթուղիկոսին սուրբ Էջմիածին, որ հանապազ զմեզ ի յիւր սուրբ աղօթքն յիշէ, և անմեղադիր լինի, զի խիստ տկար էի աչօքս, որ ոչ զկարգ գրոյն և զնիրքն տեսանէի. աղաչեմք զձեզ վասն սիրոյն Քրիստոսի, որ անտես չառնէք, զի կար մեր այս էր։ Եւ զվարպետ Վարդան, որ զսուրբ աւետարանս կապեաց և կազմեաց յիշեսջիք ի սուրբ յաղօթս ձեր։

## 711

## ԱՒԵՏԱՐԱՆ

ՄՑՎ 162 (663), հտ. Ա., էջ 690—692

Գրիչ՝ Թումայ
վայր՝ Քաջբերունեաց գաւառ, Ձորոյ վանք

299 բ— ...Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի գաւառս Քաջբերունե-
293 բ եաց, ի յանապատս, որ կոչի Ձորոյվանք, ընդ հովանեաւ սուրբ Աս-
տուածածնիս և կենսաբեր սուրբ Նշանիս, ի հայրապետութեան տեառն Գրիգորի սուրբ Էջմիածնի, և ի թուականութեանս մերոյ ՊՂԸ. (1449), և ի թագաւորութեան Ջհանշին, որ է որդի Ուսուֆին և եղբայր Սքանտարին, որ տիրեաց երկու թագաւորութեան՝ Հայոց և Ասորոց, և էր խաղաղասէր. բայց հարկապահանջութիւնն բուռն է ի վերայ քրիստոնէից. վասն որոյ ապաւինեալ եմք յարարիչ արարածոց Քրիստոսն, որ այց առնէ տառապեալ ազգիս քրիստոնէից, ամէն։

Եւ ես՝ անարժան գրիչս Թումա, տեսա զսէր և զլի փափագ սորա՝ հոգևոր եղբաւրս մեր Հէրապետ կրաւնաւորիս, որ բազում անգամ աղաչեաց զմեզ. և էի խիստ տկար մարմնով և պակասեալ լուսով. հարկեցայ՝ ձեռն ի գործ արկի, մեղսամած մատամբ և մեղաւոր անձամբ գրեցի անարժան ձեռաւք իմովք։ Արդ, որ ճաշակէք յաստուածային բուրաստանէս և յամենալի սեղանոյս ընթերցմամբ, կամ գաղափար առնելով, և կամ հարևանցի տեսութեամբ՝ յիշեսջիք առաջի անմահ գառինն Յիսուսի Քրիստոսի ի մաքուր և յանապական աղաւթս ձեր...։

## 712

## ՔԱՂՈՒԱԾՈՑ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ՄԱՏԹԷՈՍԻ, ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

*Ե բեան 4419*

Գրիչ՝ Ալէքսանոս
վայր՝ Հերմոնի վանք

288 բ *... Արդ, գրեցաւ սուրբ աւետարանի քաղուածոյս Մաթէոս դըլ-*
*խին յերկիրս* Եղեգի[ա]ց, *ի վանս* Հերմոնի, *ընդ հովանեաւ սուրբ Լու-*
*սաւորչիս և սուրբ Նշանացս, ձեռամբ բազմամեղ և անարժան, տար-*
*տամ և անպիտան, փցուն և անյարմար գրչի* Ալէքսանոս *սուտա-*
*նուն աբեղայի, որ ձևով միայն է և ոչ գործով, ի առաջնորդութեան*
*սուրբ ուխտիս* Սարգիս *վարդապետի, զոր տէր աստուած պահեսցէ զսա*
*ընդ երկայն աւուրս յուղիղ վարդապետութեամբ, և փակակալի սորա*
289 ա Զա || քարիայ *սուրբ և մաքուր աբեղայի, կուսակրաւն և սրբասնունդ*
Յակոբ *քահանայի, և այլ միաբանիցս՝ մեծի և փոքու, ի Թվականու-*
*թեան Հայոց ՊՂԸ. (1449), ի յաւուրս դառն և անբարի, ի յետին*
*ժամանակս և անձուկ, որ յամենայն ուրէք բարին նուազեալք և չարն*
*յորդորեալ և Թագաւորեալ։ Զի ազգ անաւրինաց զրկեն զազգս Հայոց*
*և քահանայից ի յընչից իւրոց և դատեն անողորմ։*

*Արդ, երեսս անկեալ աղաչեմ զամենեսեան դհանդիպողսդ սմա կարդալով, կամ տեսութեամբ, կամ յօրինակով, կամ ուսմամբ՝ յիշել յեռափափագ և ջերմեռանդ սիրով և սրտի մտաւք ի մաքրափայլ և լուսաբորբոք յաղաւթս ձեր զհարազատ եղբայրն իմ ի Քրիստոս փոխեցեալ՝* զԱնտոն *աբեղայ, և զհաւրեղ[բ]այրն իմ* զՅովանէս *կուսակրաւն քահանայ, և զհայրն իմ* Մկրտիչ, *և զմայրն* Խոնդիկ, *և զայլ արեան մերձաւորս՝ զկենդանիս և զհանգուցեալս։ Ընդ նոսին և զիս՝ զանարժան և զբազմամեղ գծող սորին աղաչեմ սրտառուչ դոչմամբ և արտասուալից հառաչանաւք յիշել ի քաղցր գութն Քրիստոսի՝ յոյսոյն մերոյ, զի Թերևս ներեսցէ բազում մեղաց իմոց ձերով աղաւթիւքդ։ Եւ խոշորութեան և սխալանաց սորա անմեղադիր լինել, զի ըշտապ էի։*

*Այլ և է. (7) տետրն գրած էր առաջ, ի զատ ի առաջի մին տետրէն, որ խորանաց մեկնութիւն է՝ առել եմ իմ հալալ ընչիւք ու զպակասորդն լմնել, ի յիշատակ ինձ և ննջեցելոց իմ, զի որք բոլորով սրտիւ յիշեն զմեզ ի Քրիստոս՝ յիշեալ լիցին և ինքեանք առաջի ատենին Քրիստոսի, ամէն։**

* *Գրիչ Ալէքսանոսն ունի նաև մի քանի հիշատակագրություններ, որոնցում նոր բան չի ասում։ Ուշագրավ է միայն երկու տողանոց այն հիշատակագրությունը, որը գտնվում է 8-րդ տետրակի առաջին էջի (90 ա) ներքին լուսանցքում։ Այստեղ գրված է՝ «Աւգնութիւն ինձ ի տեառնէ եկեսցէ և սուրբ հոգին առաջնորդեսցէ, ամէն, տկար ոգոյս* Ալէքսանոսի, *որ դժադնջուց Թերատս լնունք»։*

## 713

### Ա Ս Տ Ո Ւ Ա Ծ Ա Շ Ո Ւ Ն Չ

*«Թորոս Աղբար» Բ., էջ 296, Երզնկայի ս. Սարգիս եկեղեցի*

*Հետ. ստացող՝* Կարապետ
*վայր՝* Ապահունիք վանք

... *Զվերջին ստացող աստուածաշնչիս* զԿարապետ *վարդապետն, և զհայրն* զՄկրաիչ *քահանայն, և զմայրն* զԽդիսաբեթ, *և զքոյրն* զՄարթա, *և զամենայն ազգատոհմսն, և* զՅակոբ *վարդապետն իւր... և զաշակերտսն* զՅովանէս, *և* զՅակոբ, *և* զՍիմէւոն, *և* զՄարտիրոս, *և* զՍիմէւոն *հայրապետն, և զամենայն միաբանք սուրբ ուխտիս* Ապահունիք *կոչեցեալ՝* զՍարգիս, *և* զԹորոս, զՍողոմոն, զՅովաննէս, զՊետրոս, *և զմիւս* Յովհաննէս *սուրբ քահանայն, և* զԳրիգոր *տնտեսն յիշեսջիք ի Քրիստոս...։*

*Եղև գրաւ բանիս ի Թվ. Հայոց ՊՂԸ. (1449)...։*

## 714

### Շ Ա Ր Ա Կ Ն Ո Ց

*Բրիտ. Թնգ.* Add. *18,603, կՑ 46, էջ 95, Փիրղ. Նօտ., էջ 160—161*

*Գնող՝* Յոհանէս
*վայր՝* Արգելան

15ր　*Ես* Յոհանէս *որդի* Ժանկտարին,* *ի Գ. (4) Թանկայ*** *Թամուրի ի չաղաթիցն գնեցի, յիշատակ ինձ և ծնողաց իմոց, ի վայելումն որդոց իմոց։ Որդիքս առ աստուած փոխեցան և թողին մեզ սուք անմխիթար. ետու զՇարակնոց դեռաբոյս մանկանն* Յովանէս *սարկաւագին, ի վայելումն անձին իւրոյ՝ տէր* Խսայի *որդուն...։*

*Գրեցաւ գիրս ի յ*Արգելան,*** *ի յառաջնորդութիւն սուրբ ուխտիս* Ներսէս *վարդապետիս և* Յովանէս *եպիսկոպոսիս, սոցա վկայութեամբ,* Աբդալու *որդու* Բուրաքքիս *վկայութեամբ ետու զՇարակնոցս* Յովանիսին, *ի Թվ. ՀԾՂԸ. (1449) ամին, ի հայրապետութիւն* Գրիգոր *կաթողիկոսի, ի թագաւորութիւն* Ջհանշին, *որ գնաց ի Հրէ ու ի* Խորասան։

## 715

### Մ Ա Շ Տ Ո Ց

*Երևան 3556*

*Գրիչ՝* Սարգիս
*վայր՝* Երզնկայ

212ր　*...Ի թվականութեանս Հայոց ՊՂԸ. (1449) եղև գրաւ գրչութեան սուրբ և տիեզերալոյս և համտպիտան գըրկունքս, որ կոչի Մաշթոց, ի մայրաքաղաքս* Եզրնկայի, *ի դուռն սուրբ Աստուածածնին և սուրբ*

---

* *Փիրղ. «Սքանդարին»*
** *Փիրղ. «ԻԴ. (24) Թանկայ»*
*** *Ձեռագրում եղել է «Ցարպելան» (°), ուղղում ենք՝ «յԱրգելան»։*

213 ա Կարապետին և այլ բազմահաւաք սրբոցս, որք աստ կան ժողովեալ։ ‖ Եւ ի թագաւորութեանս բարբարոսաց, և ի կաթողիկոսութեանս Հայոց տէր Գրիգորի, և յառաջնորդութեան և վերայտեսչութեան գաւառիս տէր Ներսէսի արհիեպիսկոպոսի։

Արդ, ստացաւ զսա բարեմիտ և հեզահոգի, ընտիր և պարծանք, տեսականաւն և գործականաւն բարգաւաճեալ*

Արդ, ես՝ ողորմելիս և տարտամս, ի սրտէ խոցեալ և մեղաւք
213 բ զառածեալս, ազգի ազգի մեղաւք լցեալս, ‖ զանարժան գրիչս զՍարգիս երէցս, և զծնաւղսն մեր զՄեսրոպ քահանայն, և զմայրն իմ զՄանան-Խաթունն, և զբարի խրատատուքն մեր՝ զտէր Յակոբ ճգնաւորն և զԿարապետ քահանայ Վանեցին, [որ] զգրիկս ծանուցեր է մեզ փոքր ի շատէ. տէր աստուած զիւր երկնից արքայութիւնն պատրաստէ իւրեանց հոգւոյն։

[Ա]րդ, ես յերես անկեալ աղաչեմ զամենեսեան, որ հանդիպիք այսմ տառի կարդալով, կամ տեսանելով, կամ աւրինակելով յիշեսջիք յարժանաւոր յաղաւթս ձեր և սըղալանաց և խոշորութեան և անարհեստութեան մի մեղադրէք, քանզի կար մեր այս է։ Եւ ձեզ՝ յիշողացդ և մեզ յիշեցելոցս Քրիստոս աստուած առհասարակ ողորմեսցի։

## 716
## ԱՒԵՏԱՐԱՆ

«Թորոս Աղբար», Բ., էջ 423—424, Տիգրանակերտ, ս. Սարգիս եկեղեցի

Գրիչ՝ Երեմիա
վայր՝ Դարանաղեաց գաւառ, ս. Լուսաւորչի անապատ

Գրեալ ի լաւ և յընտիր աւրինակէ յԵրեմիա կրաւնաւորէ, ի թվ. ՊՂԸ. (1449), ի լեառն Սեպուհ, ի հռչակաւոր անապատն ս. Լուսաւորչին, ի դուռն ս. Աստուածածնին, և ս. Կարապետին, և սքանչելագործին սրբոյն Մինասայ, և Երից մանկանցն, ի յառաջնորդութեան Մատթէոս սրբասէր կրաւնաւորի, ի հայրապետութեան տեառն Գրիգորի ի Վաղարշապատ քաղաքի, և ի բռնակալութեան Դարանաղեաց գաւառիս Ճաւար-Բէկի...։**

## 717
## ԼՈՒԾՄՈՒՆՔ ՍԱՂՄՈՍԱՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

Երևան 1203

Գրիչ՝ Մարտիրոս
վայր՝ Կաֆայ

255 ա ... Գրեցօ քաղուածոյս երգարանին Դաւթի ի թվականութեանս Հայոց ՊՂԸ. (1449), ի յաշխարհս հիւսիսային, ի մայրաքաղաքի յեզրս

* 5 տող գատարկ է թողնված՝ ստացողի և նրա մերձավորների անունները լրացնելու համար։

** Հիշատակարանի բովանդակությունը վերապատմել է իր խոսքերով հրատարակիչ Գ. Սրվանձտյանը։

Կաֆայի, ի մենաստանս Նորաշէն, ընդ հովանեաւ երաշխօոր սուրբ Աստուածածնին, ի հայրապետութեան տեառն Գրիգորի սուրբ էջմիածնի պատրիարգի ամենայն Հայոց, և յեպիսկոպոսութեան նահանկիս այսմ՝ Սուրղարոյ և ամենայն հիւս[իս]ական կողմանց՝ տէր Մաղաքիայ արջիեպիսկոպոսի, ի դառն և յանբարի ժամանակիս, ի նըւազել սուրբ վանորէիցս, ձեռամբ Մարտիրոս կրօնօորի, հրամանօ քեռոյն իւրոյ և երկրորգ ծնօղի տէր Սահակ բանասիրի, ի վայելումն տէր Մարտիրոսի եպիսկոպոսի և աշակերտի և նըւիրակի սուրբ էջմիածնի քրիստոսական աթոռոյ, յիշատակ իւր, և ծնողաց իւրոց, և զկնի եկելոց սուրբ ընթերցողաց։

Արդ, յերես անկեալ աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա կարդալով կամ օրինակելով, յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր զվերոյգրեալն զտէր Մաղաքիա արհիեպիսկոպոսն, որ զօրինակն շնորհեաց, և զիւր ծնօղսն, և զեղբայրն իւր՝ հանդերձ զարմօք և զաւակօք, ամէն։

Այլ և զաշխատողքս ի սուրբ գիրքս՝ զվերոյգրեալ հեզահոգի սրբասնունդ եղբայրս իմ ըստ հոգոյ՝ զտէր Սանակ կուսակրօն աբեղա և սպասօոր բանի. ընդ նմին և զհեզահոգի մանկագոյն կրօնօորն զՄարտիրոս՝ քըւերորդին իւր՝ զգաղափար սորին, որ բազում փութով և աշխատութեամբ սիրով և հնազանդ բարուք գրեաց մեզ զգիրքս զայս վասն սիրոյ աստուածային պատուիրանացն, ի յիշատակ երից եղբարցս Մարտիրոս եպիսկոպոսի, և տէր Սանակի, և իւրս (°) գծողի, և ծնողաց մերոց, և ամենայն զարմից՝ կենդանեաց և հանգուցելոց։ Այլ և զճգնազգեաց կրօնօորն և զեղբայրն իմ ըստ հոգւոյ տէր Ստեփանոս և զչարչարակիցն իմ յիշեսջիք ի Քրիստոս։

Դարձեալ երկրամած դիմօք աղաչեմ զամենեսեան՝ զհանդիպողք այսմ գանձի՝ յիշեսջիք ի Քրիստոս աստուած զերախտօորքն իմ և զհոգևոր ծնօղքն իմ՝ զԿարապետ րաբունին, և զՅոնանէս րաբունին, և զՅովանէս վարդապետն, և զաշակերտակիցսն իմ՝ զՅակոբ, զՍիմէոն, զԱբրահամն, զԱստուածատուրն, զԱւետիք։ Նայ և զմարմնօոր ծնօղսն իմ զՍանփանոս, և զմայրն ի[մ] Հռիփսիմէ, և զայլ ամենայն արեան մերձաւորսն իմ։

255 բ Այլ և զառաջնորդ սուրբ ուխտիս զտէր Քրիստոսատուր հայրապետն, որ ամենայն արդեամ[բ]ք է մեզ երախտօոր, ես առօել ի պատճառ գրոցս՝ հանապազ մոմ տալով և լոյս՝ վասն դրելոյ սուրբ գրոցս, Քրիստոս աստուած զիւր հոգին լուսօորէ. ամէն։

Այլ և զկոկող նիւթիս զԿարապետ կրօնաւոր և զՄկրտիչն յիշեցէք առ Քրիստոս, և զամենայն երախտաւորսն մեր՝ զառաջինսն և զմիջին և զվերջինսն։

Եւ Քրիստոս աստուածն իմ, որ առատն է ի տուրս բարեաց ձեզ՝ յիշողացդ և մեզ՝ յիշեցելոցս, առհասարակ, ողորմեսցի, ամէն, ամէն և եղիցի։

Բ

Արդ, ես՝ Նըւաստ ծառայս աստուծոյ Մարտիրոս պիտակ անուն եպիսկոպոս, եդի զսուրբ գիրքս ղայս, և զարծաթի սկիհն, և զիմ ոսկած աւետարանն, և զշուրջառն, և ղբաղպաներն ի յիշատակ ինձ և ծնողաց իմոց՝ ի գերեզման և ի դամբարանի սուրբ Լուսաւորչին։ Եւ ոչ ոք ունի իշխանութիւն հանել ի դրանէ սորա, ոչ վարդապետ, և ոչ եպիսկոպոս, և ո՛չ ոք ի քրիստոնէից, ոչ յիմոց և ոչ յաւտարաց, ոչ ազգական և ոչ բարեկամ, ո՛չ ի ծանաւթից և ոչ յանծանաւթից ծախել և կամ գրաւել...։*

## 718

## ՑԻՍՈՒՍ ՈՐԴԻ ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

Երևան 5297

Գրիչ՝ Թադէոս
վայր՝ Երուսաղէմ

197 բ ... Գրեցաւ գիրքս, որ կոչի Ցիսուս Որդի ի Թուականութեանս Հայոց ՊՂԸ. (1449), ի սուրբ քաղաքս Երուսաղէմ, ընդ հովանեաւ սրբոյն Ցակոբայ որդոյ Զեբեդեա, ձեռամբ բազմամեղ գրողկանս Թադէոսիս, ի խնդրոյ պատուական և կուսակրաւն քահանային Յոհանէսին։

Արդ, աղաչեմք զամենեսեան, որք հանդիպիք սմայ կամ աւգտիք ի սմանէ, կամ գաղափար առնոյք՝ յիշեսջիք ի Քրիստոս զստա-
198 ա ցաւղ ‖ տառիս՝ զսրբասէր քահանայն զՅոհանէս, և զծնողսն իւր, և զամենայն արեան մերձաւորս իւր՝ զկենդանիս և զհանգուցեալսն ի Քրիստոս, որ ստացաւ զսա ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ հոգւոյ իւրոյ, և ծնողաց իւրոց, և համաւրէն զարմից՝ յետ աստի փոխելոյն։ Ընդ նմին և զեղկելիս՝ զՅովանէսս, որ զգրկունքս ծաղկեցի, նաև զվերոյգրեալսն՝ հանդերձ ծնողաւքն իւրեանց, և որ յիշէքդ՝ և դուք յիշեսջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

---

* Ձեռագրի 14 բ էջի վրա՝ մեծ հմտությամբ ու ճաշակով նկարված է աշխատության հեղինակ Գրիգոր Տաթևացին կենտրոնում՝ մեծ դիրքով (տես էջ 102, նկ. 6), շրջապատված իր 15 աշակերտներով։ Աշակերտների մեջ կան երիտասարդ անձինք, ինչպես և հասակավոր ու ծերունի մարդիկ։ Դրանք, հավատացած ենք, իրական անձանց դիմանկարներ են, ինչ վերաբերում է Գրիգոր Տաթևացու դիմանկարին, ապա՝ տարակույս չի կարող լինել նրա հավաստիության մասին։ Այդ դիմանկարը գտնվում է նաև Գետական Մատենադարանի երկու այլ ձեռագրերում՝ նույնությամբ։ Սույն ձեռագիրն ընդօրինակված է 1449 թվականին, այսինքն՝ Գր. Տաթևացու մահվանից 39 տարի հետո։ Պետք է ենթադրել, սակայն, որ նկարը կամ ընդօրինակված է ավելի հնագույն (Տաթևացու կենդանության օրոք արված) բնագրից, և կամ գրված է ձեռագրի մեջ՝ այլ ձեռագրից։ Վերջինս հնարավոր է, որովհետև նկարի թերթը մագաղաթյա է, երբ ձեռագիրն ամբողջապես թուղթ է, և իր չափերով այդ մագաղաթե թերթը՝ փոքր է ձեռագրի թերթերից։

## 719

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան 3179*

Գրիչ՝ Յոհաննէս

132 բ ... *Արդ, գրեցաւ գիրքս կանոնաց սրբոց հարց և սակաւ ոտանաւորքս և սակաւ Բարուախաւսս առ ոտս սրբոյն Մինասայ արագայհասին, ձեռամբ* Յոհաննէս *արեղի, ի վայելումն սարկաւագատար* Յովաննէսին, *յիշատակ իւր և ծնողաց իւրոց՝ հաւրն իւրոյ պարոն* Մաղաքիային *և մաւրն՝* Տովլաթ-խաթունին:

*Արդ, աղաչեմ, որք հանդիպիք ի սմա ընթեռնելով կամ աւրինակելով, յիշեսջիք զվերոյասացեալսն՝* զՅովանէսն *և զծնօղսն իւր, և որք յիշէք՝ յիշեալ լիջիք ի տէր։*

*Գրեցաւ ի թվ. ՊՂԸ. (1449), և ապրիլի Գ. (3)-ն։*

## 720

### ԱՒԵՏԱՐԱՆ

*ՄՑՎ 122 (323), հտ. Ա., սյուն. 537*

*Նուիրատու՝* Յոհանէս

2 ա *Ես* Յոհանէս *երէցս՝* Սարգիս *երիցու որդիս՝ պարգևեցի զսուրբ աւետարանս* Մարաիրոս *երիցու, մեզ յիշատակ՝ և զարմից մերոց։ Նա չունի իշխանութիւն որ ծախէ. քանի կենդանի կենայ՝ նա բռնէ, և յորժամ իւր վախճանն հասնի՝ նա մեզ յիշատակ դնէ։ Ի թվիս Հայոց ՊՂԸ. (1449), հոկտեմբեր ԺԴ. (14).*





# 721

## Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*Երևան 5355*

*Գրիչ՝* Յովանէս.
*վայր՝* Ցիպնա վանք

ա

275 ա *...Ի խնդիր ելեալ լուսափայլ մարգարտիս առաքինասէր և բարեմիտ միայնակեացն* Կարապետ, *և փափագանաւք ետ գրել զսուրբ աւետարանս...։*

*Արդ, աղաչեմք զամենեսեան, որք հանդիպիք այսմ աստուածաքնար աւետարանիս ընթերցմամբ կամ գաղափարիւ՝ աստուած-ողորմի անյապաղ արձակել* Կարապետին, *և ծնաւղաց նորին* Թումին *և* Մարեմին, *և զաւակաց նոցին* Ազըզին, Ներսեսին, Սառ[այ]ին, Անն[այ]ին, *և զաւակաց նոցին* Ներսէս *սարկաւագին,* Վարդանին, Սարգիսի[ն]։

*Գրեցաւ սուրբ աւետարանս ի թուաբերութեանս հայկազնեան սեռիս ՊՂԹ. (1450), ի վանս* Ցիպնա՝ *Դաստակ կոչեցելոյ, ընդ հովանեաւ սուրբ Ստեփաննոս կաթուղիկէիս, և Վասիլ թագաւորի սուրբ նշանիս, և սուրբ վարդապետաց գերեզմանիս, որ աստ կան հանգուցեալ, ի խանութիւն* Թաւրէզ *քաղաքին* Ջհանշա *խաղաղարար պարոնի, և ի կաթողիկոսութեան տեառն* Գրիգորի Վաղարշապատ *քաղաքի սուրբ* էջմիածնի, *աւարտեցաւ ձեռամբ ամենամեղ գրչի* Յովանէս *սուտ կրաւնաւորի։ Այլ և աղաչեմք զձեզ յիշել ի սուրբ յաղաւթս ձեր զմիաբանք վանացս՝ զառաքինասէր հայրապետն մեր զտէր* Մինաս *եպիսկոպոսն, զ*Յոհաննէս *աբեղայն, և զ*Մանուէլ, *և զ*Առաքէլ, *և զ*Յակոբ *քահանայ, որ են ժիր մշակ ի դրունս սուրբ եկեղեցոյս...։*

բ

*Ծաղկող և կազմող՝* Թումայ Մինասենց

10 բ *Ի ՊՁԹ. (1440) թվականին* Ջըհանշա *ամիրզէն ի* Վրացտուն *մտաւ, և շատ աւեր արար, և զեկեղեցիքն քակեց, և քան զԺԲՌ. (12000) աւելի ի Հայոցս՝ զորս եսպան և զորս գերի վարեաց։ Եւ ի Պ. և ի ՂԵ. (1446) թիւն* զԲաղդատ *էառ։*

11 ա *Ի Պ. և ՂԹ. (1450) թվականին էառ* Ջըհանշա *ամիրզէն* զԵզընկէն, *և անթիւ քրիստոնէից կանայք և մանկունք գերի կալաւ։ Եւ յիննհարիւր (1451) թիւն՝* զՂըլաթայ *երկիրն և* զԲաղիշուն *արար գերի և գետին։ Վայ Ռ. (1000) բերան, որ զայս խըղճերս տեսաք. աչաւք մերովք ի ժամանակիս մերում։*

12 բ Զմեղուցեալ գծող ցանկիս և կազմող սուրբ աւետարանիս՝ զՄինասեՑց Թումայս յիշեցէք ի Քրիստոս, և աստուած-ողորմի ասացէք ինձ և ծնաւղացն իմոց, և ձեզ ողորմի Քրիստոս։*

722

ԺԱՄՈՑ

«Թորոս Աղբար», Ա, էջ 223—225**

Ա

Վաճառող՝ Մկրտիչ
վայր՝ Տիւրիկ

...Արդ, ես Մկրտիչ քահանայս, ուխտ եդեալ էի գնալ յԵրուսաղէմ. և ի զբաղմանէս և ի ծուլութենէս ոչ շտապեցայ։ Եւ յազդմանէ չարին եկաւ Նուր-Ալւանղն ի վերայ Արճիշոյ և Թալանեց զամենեսեանըս։ Եւ մեր չհանդիպեալ ուխտին՝ առաք զգիրքս և բերաք ի Տիւրիկս, և տուաք ի Ղազար երէցն. և նա ետ մեզ Ծ. (50) ֆլօրի, և մեք տարաք յԵրուսաղէմ։

Բ

Գնող՝ Ղազար
վայր՝ Տիւրիկ

Արդ, ես՝ Ղազար երէցս և որդին իմ Յովանէսս քահանայ գնեցաք զգիրքս ի Միրտիչ աբեղայէս Ծ. (50) ֆլօրի, յիշատակ մեր և ծնաւղաց մերոց։

Արդ՝ ես Ղազար երէցս ուխտ եդեալ էի գնալ յԵրուսաղէմ, և ի ժամանակիս դառնութենէն ի վերայ ազգիս քրիստոնէից, զոր ելեալ Ճիհանշան սուլթանն ի Թաղթէն Թաւրիզոյ, և եկաւ ի վերայ Եզընկոյ քաղաքին, և էառ զԵզընկայն, և բազում նեղութիւնք էած ի վերայ ազգի քրիստոնէից. և Խութլուպակ պարոնն ոչ հնազանդեցաւ Ճիհանշին, զոր հրաման ետ Ճիհանշան զաւրաց և զաւրավարաց իւրոց, զոր գնացեալ առին աւար բազում և գերի բազում. և ով կարէ պատմել զխեղճ և զաղիողորմն քրիստոնէից ազգիս։ Եւ դարձեալ անտի, և

---

* Այս հիշատակագրությունները Թովմա Մինասենցը Թողել է նշված էջերի խորաններից ներքև։ Ուշագրավ է, որ այսքան ավերածություններ գործող բռնակալ Ջհանշահը գլխավոր հիշատակարանում կոչվում է «խաղաղարար պարոն»։

** Ձեռագիրն ընդօրինակված է 1441 Թվականին, Հովաննէս գրչի կողմից, Արճեշում (տես 1441-ի Թվաշարքում)։ Ստացող (աղա և վաճառող) Մկրտիչի ու գնող Ղազարի հիշատակարաններն անԹվական են, սակայն, անտարակույս, նրանք գրվել են 1450 Թվականին։ Բ. հիշատակարանում նկարագրված քաղաքական անցուդարձերը (Երզնկայի գրավումը Ջհանշահի կողմից և այլն), ինչպես պարզվում է Թովմա Մինասենցի հիշատակագրությունից (տես նախորդ հիշատակարանը) և Դաւիթ Խարբերդցու 1453 Թվականին գրած ընդարձակ հիշատակարանից՝ տեղի են ունեցել 1450 Թվականին (վերջինս հրապարակելու ենք «ԺԵ. դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ» ժողովածուի Բ. հատորում)։

*չուեալ ի Կամախ, և առին աւար և գերի բազում. և զխեղճ և ողորմն, զոր եղաւ ի վերայ քրիստոնէից, զոր հրաման տեառն կատարեցաւ, թէ՝ Մի լինիցի փախուստն ձեր ի ձմերայնի և մի յաւուր շաբաթու. այս ի* Կամախ *կատարեցաւ: Եւ իմ տեսեալ զդառնութիւն ժամանակիս և զծերութիւն անձինս, և իմ յուսահատեալ յաստուած ապաւինեցայ, թէ այց արասցէ աստուած փափաքանաց իմոց: Եւ ողորմածն և մարդասէրն աստուած ողորմեցաւ, և այլ դուռն ողորմութեան եբաց ինձ, զոր եկաւ գիրքս այս ի յ*Արճիշոյ *և եհաս առ մեզ. և մեք տեսեալ զգիրս և զթուղթ և զվայելչութիւն ծաղկի սորա. և մեր լցեալ փափաք սրտի՝ առաք զգիրքս ի վայելչութիւն իմոյ անձին և իմ որդւոյ.* Յովաննէս *քահանային:*

## 723

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

Երևան 5223

*Գրիչ՝* Մարտիրոս
*վայր՝* Թորդանայ վանք

133 բ *Աւաղ հանդիպմանս և ահագին աղետիս, որ դիպեցաւ գօտիս և շրջակա բոլորիս, զի ծածկեցին զօրք Իսմաելին և յանխնա թալանեցին՝ զոմանս սպանին և գ[ե]րեցին. ուստեք չեղև մեզ օգնութիւն, վերուստ խնդրեմք զայցելութիւն:*

*ՊՂԹ. (1450) ամի գրեցաւ,* Թորթանայ *վանքս, առ դամբարանի հօրս լուսոյ և որդոց և թոռանց նորա, ձեռամբ մեղսամներկ ոգւոյ և անարժան* Մարտիրոս *եպիսկոպոսի:**

## 724

## ՃԱՇՈՑ

Փիրղ. Նոտ., էջ 163—164, Բաղէշ, Ամրդօլու վանք

*Գրիչ՝* Յովանէս
*վայր՝* Խլաթ

*... Զոր տեսեալ զայսպիսի գանձս աստուածային և պայծառ լուսով պատուական և երջանիկ պարոն* Ամիր-Դօլն, *ցանկացաւ այսմ աստուածային փարթամ գանձուցս, և ջերմեռանդ սիրով հոգւոյն և մեծ փափագմամբ ստացաւ զսա յիշատակ հոգւոյ իւրոյ և ծնողաց*

---

* Ձեռագրի ընդօրինակությունը կատարվել է տարբեր վայրերում և, տևելով 13 տարի, ավարտվել է 1463 թվականին: Գրիչ Մարտիրոսը շատ քարոզներից հետո թողել է սեղմ հիշատակագրություններ, ուր հայտնում է տվյալ քարոզի. ընդօրինակության տարեթիվը, երբեմն նաև՝ վայրը: Ահա այդ հիշատակագրությունների մի մասը՝

«Զմեղաւոր ԾԲՏԾԼՏԶՎ (եղբայրագիր ծածկագրով կարդացվում է «Մարտիրոս») յիշեցէք ի Քրիստոս, գր[եցաւ ի] ՋԹ. (1460)» (էջ 61 ա):

«ՋԹ. (1460 թ.) գր[եցաւ] այս Բ. (2) քարոզս» (էջ 145 բ),

«ՋԹ. (1400 թ.) գր[եցաւ], ի Պուրսա» (էջ 16 բ):

իւրոց՝ Հասանին և Թաւրէզ-Մէլիքին, և եղբարց իւրոց պարոն Թանդնին, պարոն Ապտուլ-Քարամին, պարոն Կարապետին, պարոն Մկրտչին, և քըւերցն Շիրին-խաթունին, Շատուն, Արմէլիքին, և զամենայն ազգատոհմ նորա՝ զկենդանիս և զհանգուցեալսն։ [Ցիշեցէք] զստացող սուրբ գրոյս զպարոն Դօլն, և զկենակիցն իւր զՄլքան-խաթուն, և զիւր ծնողքն զԱստուածատուրն և զՍաղդաք-Մէլիքն։ Ջանիմաստ և զանպիտան գրչակս՝ զՅովանէս սուտանուն քահանայ, և զծնողսն իմ զԿարապետ քահանայն և զԹաղայ-Մէլիքն, և զեղբարքն իմ զԱստուածատուր քահանայ, և զամենայն արեան մերձաւորս իմ...։ Կատարեցի կարողութեամբն աստուծոյ զսուրբ դիրքս ի թուականիս Հայոց ՊՂԹ. (1450)։ Այլ և գրեցաւ ի քաղաքս Խլաթ, ընդ հովանեաւ ԺԱ. (11) խորանացս, և սուրբ Գէորգ զօրավարին, զի ետ գրել զսա Ամիր-Դօլն յիշատակ իւրն և ամենայն արեան մերձաւորաց իւրոց։ Եւ ետ զսա ի դուռն սուրբ Ցովհաննիսին, ձեռամբ և վկայութեամբ Սարգիս վարդապետին, և սրբակրօն կրօնաւորացն՝ տէր Աստուածատրուն, տէր Մկրտչին, տէր Խոսրովին, տէր Ստէփաննոսին, տէր Յովանիսին, միւս տէր Ստեփանոսին, տէր Ներսէսին...։

[Ցիշեցէք] զպարոն Ամիր-Դօլն, զպարոն Թանդինն... և զծնողքն իւրեանց՝ զԱմիր-Հասանն և զԹավրէզ-Մէլիքն, և զմեծ պապն զՍուլէմանշէն, և զՇար-Մէլիքն, և զհօրեղբայրն իւր զԱմիր-Ալին, և զորդիքն՝ զՍուլտանշէն և զՍուլէմանշէն, զՅովաննէս, և զՇանրիարն, և զպարոն զԻլալն...։

## 725

## ԱՌԵՏԱՐԱՆ

*ԱՑԹ, էջ 05—07, Թաւրիզ, Լիլաւա, ս. Սարգիս եկեղեցի*

Գրիչ՝ Յովանէս
վայր՝ Արճէշ

...Ամէնաւրհնեալն և հոգիացեալն ի գործս ամենայն առաքինութեանց Վարդան գրակալն <և> ստացաւ զանառիկ մեծութիւնս զփարթամ հարստութիւնս ի յիշատակութիւն հոգւոյ իւրոյ և բարեպաշտ ծնաւղացն իւրոց՝ հաւրն Աւետիսին և մաւրն Տալիթին, և եղբարցն Քանանայապետին, Յոնանիսին, Ղազարին և Տուրութին, և հաւրեղբօրն Հէրապետին, և զաւակաց նորին, և պապուն իւրոյ՝ Ներսէս բարի քահանային, և որդոյն Անդրիաս քահանային, և մաւրքըւերցն Երանուհոյն և Խաթունին, և հօրքըւերն Եպրաքսին, և Գոհարտիկնին, և այլ ամենայն արեան մերձաւորաց իւրոց՝ կենդանեաց և հանգուցելոց։ Արդ, որք վայելէք յամէնառատ սեղանոյս՝ լիակատար սըր-

«Ի դուռն Եանարտաշ սուրբ Նշանիս գրեալ եղև Ջ. (1451) ամին» (էջ 181 ա)։

«Գրեցաւ թվ. ՋԹ. (1460), մայիս Ժ. (16), և աւարտեցաւ ի ԺԱ. (11) տարին» (էջ 200 ա)։

«Նախագիրս ի սուրբ քաղաքս Երուսաղէմ գր[եցաւ], ի ՋԺԱ. (1462)» (էջ 200 բ)։

«Այս Գ. (3) քարոզս... ՋԲ. (1463) գրեցաւ, յօրինակէ Վարագեցի Յովանէս արեղայէ և աշակերտէ, Քրիստոս լուսաւորէ զիւր հոգի և զձերն, ամէն» (էջ 204 ա) և այլն։

տիւ աստուած-ողորմի ասացէք Վարդանին և իւրոցն ամենայնի, ամէն։

Եւ արդ, ես՝ յետինս ի կարգաւորաց և անպիտան և անարժանս ի մանկունս եկեղեցւոյ և անիմաստս ի գիրս գրչութեան Յովանէս սուտանուն քահանայ շնորհիւ տեառն սկըսայ և ողորմութեամբ նորին կատարեցի զսուրբ աւետարանս ի Թուականիս Հայոց Մեծաց ՊՂԹ. (1450) ամին, յԱրճէշ քաղաքի, ընդ հովանեաւ և ի դուռն սուրբ տաճարիս Գէորգեայ ղաւրավարիս, ի հայրապետութեան տեառն Գրիգորի աստուածադիր կաթողիկոսի մեծ աթոռոյս աստուածաշէն Կաթուղիկեի սուրբ էջմիածնի Վաղարշապատու, զոր տէր աստուած հաստատուն և անփորձ պահեսցէ զնա յաթոռ իւր ի պարծանս և ի մխիթարութիւն յետնեալ և նուաղեալ ազգիս, ամէն։

Արդ, որք ճաշակէք յաստուածային բուրաստանէս և յամենալի սեղանոյս՝ լի սրտիւ և առատ բերանով աստուած-ողորմի ասացէք վարպետ Վարդանին և քւերն իւրոյ Քարամ-խաթունին, ամէն։ Եւ ինձ անարժան գրիչ Յովանէս քահանայի, և երախտաւոր ուսուցչին իմոյ Թումա աշխարհալոյս վարդապետի՝ հետևողի առ Քրիստոս, և մարմնաւոր ծնաւղաց իմոց՝ Մանկասարին և Փաշային՝ գնացելոցն ի Քրիստոս։

Բայց խոշ[որ]ութեան գըրիս անմեղադիր լինել աղաչեմ, զի կար մեր այս է, և զի սիրտս խոցեալ է ի սատանայէ, և զի կենդանոյն մեռեալ եմ, և աչքս ի բաղում արտասուաց կուրացեալ է, զի իմ սիրական որդիքն Սանակն և Մեսրոպն զիս սևեցին։

## 726

## ԱՒԵՏԱՐԱՆ

ՔՑԲ 6, էջ 5

Գրիչ՝ Յոհաննէս
վայր՝ Հարճոց

...Եւ արդ ես՝ ունայնս ի բարեաց գործոց, սուտանուն գրչակս Յոհաննէս... գրեցի զսա՝ զսուրբ աւետարանս ի գեւղս, որ կոչի Հարճոց, ընդ հովանեաւ սուրբ Քրիստափորի և Աւաք սուրբ Խաչի։

...Եւ արդ, ես Կիրակոս եպիսկոպոս... ետու գրել սուրբ աւետարանս յիշատակ հոգոյ իմոյ և ծնօղացն իմ, ամէն, եղիցի. եղիցի։

Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի Թուականիս Հայոց ՊՂԹ. (1450), ի դառն և ի նեղ ժամանակիս, ի հայրապետութեան Հայոց տէր Գրիգորի, ի ղանութիւն Թավրիզոյ Ջհանշի...:*

* Հիշատակարանը հրատարակված է նաև «Բյուզանդիոն»-ի 1888 թ. համարում, էջ 101։ Այնտեղ հայտնված է նաև, որ ձեռագրի ծաղկողի անունն է Մկրտիչ։

727

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրզ. Նոտ., էջ 165, Մշոյ ս. Մարինանէ եկեղեցի*

*Վայր՝* Բաղէշ

*...Եւ գաի ստոյգ և ընտիր օրինակ, զոր դրեալն էր* Յովանէս Աղէթրցի *ի* Թորոս *փիլիսոփայէ՝ ի* Դրազարկն, *և յուղարկեալ հռչակաւոր ուխտին Առաքելոցն* Տարօնոյ, *որ կոչի Ղազարու վանք։ Եւ իմ առեալ դրեցի... ձեռօքս, ի թվականիս Հայոց ՊՂԹ. (1450), ի քաղաքս* Բաղէշ, *ընդ հովանեաւ սուրբ Սարգսի...։*

728

## ՃԱՇՈՑ

*Երևան 936*

*Հետ. ստացող՝* Վէգեն

232 բ *Ջվերջին ստացողիս այս սուրբ գրոցս, որ է Ճաշագիրք զհայրս* Վէգեն, *և բարէպաշտ և աստուածայսէր զկինն իւր* Մրվարթն, *և զորդին իւր՝ զ*Ամիր-Մէմէն, *և զ*Յովանէս *սարկաւագն, և զ*Հայրապետն, *և զվանիզն հայր զ*Հայրա/պետն՝ *քահանայ փառաւոր և պատուելի, և զայլն ամենայն արեան մերձաւորքն՝ լի սրտիւ աստուած-ողորմի ասացէք և մեղաց թողութիւն խնդրեցէք ի յաստուծոյ,* Վէգենին *և կողակցին* Մրվարթին *յիշեցէք ի Քրիստոս աստուած մեր։ Գիրքս տվի սուրբ Աստուածածնին դուռն յիշատակ հոգոյ իմոյ և այլ ամենայն արեան մերձաւորացն, թվականիս ՊՂԹ. (1450)։*

729

## ԺԱՄԱԳԻՐՔ

*Բրիտ. Թնգ.* Add. *16,408, կԹ. 61, էջ 159*

*Գնող՝* Թադէոս Շաճապունեցի
*վայր՝* Կաֆայ

406 ա *Յամի տեառն ՌՆԾ. (1450) վերջի ստացող Բրէվիաբիս ես՝* ֆր. Թադէոսս Շաճապունեցի *եկի ի* Կաֆայս՝ *ի սուրբ* Նիկօլ *վանքս և գնեցի ըզգիրքս զայս ի լադինացոց, ի հալալ արդեանց իմոց, և ետու զսա վերստին կազմել և զպակասն լնուլ, ի վայելումն անձին իմոյ և յիշատակ ինձ և ծնողաց իմոց, և որք հանդիպիք ի սմայ՝ յիշեսջիք յաղօթս ձեր զիս՝ զ*ֆր. Թադէոսս, *և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, ամէն։*

730

## ԺՈՂՈՎԱԾՈՅ ԱՌԱԿԱՑ ԵՒ ՔԱՐՈԶԻՑ

*Երևան 2226*

*Գրիչ՝* Մակար Կիլիկեցի՞

250 ա *Այս քարոզներս ասացեալ է ի* Ղուկաս Կեղեցի *սուրբ վարգա-*

պետէ՝ դիւրալուր հեշտիմաց ըստ աշխարհականաց ճանապարհաւ։ Եւ յառաջն եդաւ գեղեցիկ պատմութիւնք անծանօթք վասն օրինակի, ի հնոց որրոց վարդապետաց ասացեալ և գաղափարաւ առ մեզ հասեալ։

Գրեցաք ի վայելումն մեծի րաբունապետին տեառն Սարգսի վարդապետին Մեծոփեցւոյ՝ աշակերտին Գրիգորի Տաթևացւոյն: Գրեցաւ ձեռամբ Րակամ (=Մակար*) գրչիս էլիկեցւոյ,** թվ. ՐՃՂԹ. (1450),***

## 731

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՐԳՈՑ ԵՐԳՈՑՆ, ԳՐԻԳՈՐԻ ՆԻՒՍԱՑԻՈՑ

Երևան 2514

Նուիրատու՝ Յովսէփ

170 բ Ես Յովսէփ աբեղայս բաշխեցի զայս սուրբ գիրքս իմ հոգևոր եղբաւրն Սուքիաս կրաւնաւորին ի յիշատակել զիս և զծնաւղսն իմ ի ժամ ընթերցման խրատու սուրբ հաւրն Նւսգրիոսի, աւգտելով ի սմանէ՝ ի յերգ երգոցն Սօղօմոնի, աստուած ո[ղո]րմի աս[աս]ցէ մեզ և ինքն յիշեալ եղիցի ի Քրիստոսէ՝ հանդ[երձ] եղբաւրն Դաւիթ կրաւնաւորիւ, և ամենայն ազգականաւք և ծնաւղիւք, ամէն։

Ի թվ. ՊՂԹ. (1450)։

## 732

## ՄԱՇՏՈՑ

Մ. Աթոռ 31, «Էջմիածին», 1950 թ., նոյեմբեր—դեկտեմբեր, էջ 85

Գրիչ՝ Կարապետ

ա

211 բ ...Գրեցաւ սուրբ տառս աստուածային՝ յորջորջեալ ցուցակ արարուած սուրբ հաւրն Մաշդոցի, ի թուականիս Հայոց ՊՂԹ. (1450), ձեռամբ յոգնամեղ և անարժան և պարտաւոր գրչի՝ սուտանուն Կարապետ աբեղայի, չարեաւք լցեալ եմ յաշխարհի։

բ

101 բ– Ո՛հ, ոհ, զայս ոչինչ տունս, զինչ յերգէն կու անկանի՝ թոի ի
102 ա գիրս և ապականէ։

գ

144 բ Զեղկելիս և զանարժան գրիչս յիշեցէք և զպատուական կին զՔիչի-Խաթունն՝ զստացող գրոցս աղաչեմ յիշել ի Քրիստոս. և ինքն՝ ամենատատն աստուած ձեզ ողորմեսցի՝ կարդացողաց և լսողացդ յիւր միւսանգամ գալստեանն, ամէն, ամէն, եղիցի։

---

* Պետք է կարդալ աջից ձախ։

** Թերևս եղած պետք է լինի «Կիլիկեցւոյ»։

*** Հիշատակարանը գրված է, անտարակույս, Ղուկաս Նեկեցի վարդապետից (սա 1857 թ. գրեց իր չափածո տաղերը) հետո: Երկրորդ պարբերությունը ընդօրինակված է այն ձեռագրից, որի մասին ընդօրինակողն ասում է՝ «գաղափարաւ առ մեզ հասեալ»։

## ԼՐԱՑՈՒՄ

*Սույն ժողովածուի բնագրային բաժինն արդեն հրատարակված էր, երբ մենք հնարավորություն ունեցանք լինելու Լենինգրադում և ծանոթանալու ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի Արևելագիտության ինստիտուտի Արևելյան ձեռագրերի սեկտորի 316 հայերեն ձեռագրերի, ինչպես նաև Մ. Ե. Սալտիկով-Շչեդրինի անվան հանրային գրադարանի Ձեռագրական բաժնի հայերեն 96 ձեռագրերի հետ։ Վերոհիշյալ ձեռագրերից 7-ը ունեին ԺԵ. դարի առաջին կեսի ընթացքում շարադրված հիշատակարաններ, որոնք մեջ են բերվում ստորև, որպես լրացում սույն ժողովածուի բնագրային բաժնի։*

*Վերջերս Մատենադարանը ձեռք բերեց Զմմառի (Բեյրութի մոտ) վանքի հայերեն 154 ձեռագրերի անտիպ ցուցակի լուսանկար պատճենը։ Այդ ձեռագրերից 4-ը ունեն ԺԵ. դարի առաջին կեսի հիշատակարաններ, որոնք ևս մեջ են բերվում ստորև։*

*Վերոհիշյալ հիշատակարանները նույնպես շարադասել ենք ժամանակագրական կարգով, տալով նրանց հերթական համարներ (№№ 733—744)։*

## 733

### ԱՍՈՐԱ-ՀՌՈՄԷԱԿԱՆ ԴԱՏԱՍՏԱՆԱԳԻՐՔ ԵՒ ԴԱՏԱՍՏԱՆԱԳԻՐՔ ՀԱՅՈՑ ՄԽԻԹԱՐԱՅ ԳՈՇԻ

*Լենինգրադ, Հանր. գրադարան.* Арм. н. с. 39

*Գրիչ՝* Թումա

ա

*Թվ. ՊԾԳ. (1404) գրեցաւ գիրս դատաստանի ձեռամբ մեղապարտ-գրչի* Թումաի *բանի խնդրողի, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնի և Գէորգեա ղաւր[ավար]ի, ով ոք որ ընթեռնու յիշէ ի մաքրափայլ յաղօթս իւր զհոգևոր հայրն մեր զէլէքսաճ կր[օնաւոր] և զծնաւղսն մեր, և դուք յիշեալ լիջիք յառատ ողորմութիւնն աստուծոյ...։*

բ

*Զխնդրողս բանի զ*Թումայ *յաղօթս յիշեա։*

## 734

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Քեշիշյան, Ցուց. Զմմառի 121*

*Գրիչ՝* Յովհանճէս։

86 բ *Արդ, յերես անկեալ պաղատիմ ի [ման]կանցդ եկեղեցոյ, որք հանդիպիք այսմ կտակիս | | | քերականիս ա | | | թեան խրատիս, յիշեսջիք ի բարին Քրիստոս զա | | | արեգակն, զքրիստոսածաւալ աղբիւրն, զհոգևոր հայրն մեր և զծնաւղ՝ զմեծ րաբունապետս* Գրիգորիոս *զորդի* Տերին, *որ [պարգև"] ողորմութեան շնորհեալ մեզ՝ մեղուցեալ անձին՝ պիտակ անուն վարդապետի | | |, ի մեծ թվականին Հայոց ՊԾԹ. (1410)... ըստ արժանաւորութեան իմոյ, այլ ըստ անխարդախ սիրոյն և հայրական | | | թեանցն, զոր ունի առ մեզ։ Եւ [դուք յի]շեալ լիջիք ի Քրիստոսէ մերոյ։*

## 735

## ՃԱՇՈՑ

Բեշիկչյան, Ցուց. Ջմմառի 2

Գրիչ՝ Յովսէփ

ա

462 բ ... Աւարտեցաւ քառահիւն և առաքելախօս մարգարէաշէն հոգիաբուխ այս տառ ձեռամբ յոգնամեղ և անարժան գրչի Յովսէփ անուն կրաւնաւորի, ի խնդրոյ սրբասէր և սրբահոգի Կարապետի և Ստեփաննոսի, ի Թվ. ՊԿԳ. (1414) ի հայկազան սեռիս տումարի, ի հայրապետութեան տեառն Յակոբայ, ի թագաւորութեան Հայոց ազգիս, որ այլ չերևին, ի դառն և ի նեղ ժամանակիս, որ հարկապահանջութեամբ զհայք տապալեցին և մեք կանք հալած[ական | | |

բ

41 ա Եղբա՛յր, անմեղադիր լեր, զի օրինակն այնց էր, յայլ տեղ գիտ և կարդայ։

գ

242 ա Ո՛, աղաչեմ անմեղադիր լերուք խոշորութեան, զի ցամաք կորեկ հաց կերայ և գրեցի, անմեղադիր [լերուք]։

դ

245 ա Ո՛վ եղբայր իմ հոգևոր Կարապետ, անմեղադիր լեր, զի ճանչերն ուտէին զաչս։

ե

248 բ Աւրն պահք էր և հացն ցամաք կորեկ, աղաչեմ անմեղադիր լեր։

զ

254 ա Ո՛, զխոշոր թուխթս, որ զիս ի յաջ իղն երեր, ու ճանճերս։

է

270 ա Ո՛, զայս խոշոր թուխթս, որ ձանձրացոյց զիս, և ճանճերս։

ը

271 ա Ձէրէց մի յայսմ ամի ուրացաւ զաստուած և անուանեաց զինքն զանթարի։

թ

279 ա Պահք էր և կորեկ հաց կերայ ցամաք։

ժ

286 ա Ո՛, ծարաւեցայ և ոչ կայր ջուր խմելոյ։

ժա

358 ա Ո՛հ, շոգ էր և ճանճերն չեն ի տալ դադար։*

* Նման մանր հիշատակագրություններ կան նաև ձեռագրի այլ էջերում։

## 736

## ՔԱՂՈՒԱԾՈՅ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ՄԱՏԹԷՈՍԻ, ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

*Բեշիշյան, Ցուց. Զմմառի 50*

*Գրիչ՝* Յովաննէս
*վայր՝* Տաթև

391 բ *... Արդ, գրեցաւ սուրբ և գերամբարձ աւետարանի քաղուածոյս ի լուսաւոր բանից Մատթէոս գլխոյ, հարմարեալ և աշխատասիրեալ* Գրիգորի *արի վարդապետի, ի սուրբ և ի դերահռչակ ուխտս և յականաւոր աթոռս* Եւստաթէի *սուրբ առաքելոյս, ընդ հովանեաւ սուրբ Նշանիս աստուածածնիս և սուրբ Լուսաւորչիս և այլ բազմահանգէս սրբոցս աստ գումարելոց, ի տեղապահութիւն աթոռոյս վարժապետին* Մխիթար *վարդապետի, և իշխանութեան տեղոյս մեծատոհմի* Բէշքէնի, *հարազատով* Շահիւ *("), ձեռամբ ապիկար և թարմատար գրչի* Յովաննէս *վարդապետի, և ղստացող գրոցս* զՄարգարէ *աբեղայ, որ ստացաւ յիշատակ իւր և ծնողաց իւրոց, ի թվիս Հայոց ՊԿԴ. (1415), ի դառն և ի յետին ժամանակի, յորում նեղինք ժողովք ըստ առաքելոյ բանի, խաղաղութիւն տարաբձեալ և սէր բազմաց ցամաքեալ և ատելութիւն ղաւրացեալ և հաւատոյ պակասեալ, և մեք տարտամքս գործովք ի յայս ժամուս պատահեալք։*

*Արդ, յերեսս անկեալ աղաչեմ ղամենեսեան զհանդիպողք սմին տեսութեամբ և կարդալով կամ յաւրինակելով՝ յիշեսջիք սրտի մտօք ի լուսաբորբոք և ի հաշտարար աղօթս ձեր՝ զիս* զՄարգարէ *անարժան աբեղայ, և զծնողսն իմ, և ղամենայն արեան մերձաւորսն իմ միով տէր ողորմայիւ...։*

## 737

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ, ԽՄԲԱԳՐԵԱԼ Ի ՅԱԿՈԲԷ ՂՐԻՄԵՑՒՈՅ

*Լենինգրադ, Արևելագիտության ինստիտուտ,* ADM. A. 88

*Խմբագիր՝* Յակոբ Ղրիմեցի*

*Արդ, ես* Յակոբ *սուտ անուամբ վարդապետս* Ղրիմեցի *եկի ի վանքս* Մեծոփու**, *առ* Թումայ *րաբունապետն, և առի զքարոզգիրքն զԲ. (2) հատորն, զոր աշխատասիրեալ էր քաջ հռետորն՝ մեծն* Գրիգոր: *Եւ մեծաւ ջանիւ ընթերցեալ իմ զտիւ և զգիշեր զՅԾ. (350) քարոզսն և ի խնդրոյ րաբունոյս* Թումայի *դարձեալ վերստին նուաստութիւնս մեր ծաղկաքաղ արարի ղսոսայ և հանի ՃՀԳ. (173) քարոզ։ Եւ է ի քարոզքս, ղի զինքն որպէս էր հանց գրեցաք և թէ ուրէք-ուրէք բան կամ բառ, որ ի յինքն իրք մի կարիք ունէր՝ զայն լուծաք և բացաք. և է որ առաւելաւ ի քարոզքն, և է որ պակասեաց, և է որ յերկուցն*

* *Արևելագիտության ինստիտուտի այս ձեռագիրը Հակոբ Ղրիմեցու ինքնագիրն է։*
** *Վանքի անունը ջնջված է։*

և կամ յերից զզօրաւոր բանսն և զգեղեցիկսն ըստ կարգի շարադասեցաք և այնպէս գեղեցկայարմար ոճիւ զքարոզսն ի գլուխ հանաք։ Եւ էր, որ ի հանդիսաւոր տօնսն, որպէս ի յաւագ ուրբաթուն և ի յարութեանն և յաստուածածնին և ի խաչին, որ ի յայլմէ վարդապետաց ասացեալ էր և չէին բանքն ըստ կարգի և ըստ պատշաճի, զայն քարոզսն ի շնորհաց հոգոյն սրբոյ և այլ քարոզք վասն խոստովանութեան և վասն մահու վարդապետաց՝ նուաստութիւնս մեր զբոլորն արտաճառեաց։ Եւ է այլ քարոզք, որ ի կիսու ըր[եա̄լ] կամ այլ առաւել և նուազ՝ շնորհօք սուրբ հոգոյն աշխատասիրեցաք և ի գլուխ հանաք զբանսն ըստ կարգի, և է որ ի մեր գրոց, և է որ ի յայլ դրոց հարկաւոր և ընտիր քարոզք՝ զայն այլ ի դիրքս մուծաք։ Եւ այնպէս արարաք զսայ ըստ տկարութեանս մերում, շնորհօք սուրբ հոգոյն, զի բովանդակն, որ ի գիրքս հաւաքեցաք. բովանդակն ըստ իւրաքանչիւր կարգի ասելի է և քարոզելի։ Եւ ոչ մուծի աստ այնպէս քարոզ, որ ասենք, թէ այս ասելի է և այս ոչ, այլ բովանդակն ասելի է և քարոզելի, զորն որ կամիս, ամէնն արդիւնաւոր է և քաղցր ի քարոզել և ի լսել։ Եւ ի սկիզբն քարոզացս Խ. (40) քարոզ ի Խառաբաստու վանքն գրեցի, ի Կարապետ վարդապետի գրոցն և սակաւ ինչ յայլ գրոց։

Եւ ամենայն ոք, որ օրինակէ զգիրքս մինչև ցայս վայր՝ զյիշատակարանս զայս գրեսցէ, զի և զմեզ աստուած-ողորմի ասելոյն վարձ լիցի։ զի վասն այն յուսոյն աշխատասիրեցաք, գիտէ տէրն իմ Յիսուս։

Արդ, որ ոք օրինակեսցէ զսայ և կամ ընթերցեալ լուսաւորեսցի ի սմանէ և յայլս լուսաւորեսցէ, յիշեսցէ ի սուրբ սրտէ զգերերջանիկ րաբունապետն և զքաջ հռետորն զմեծն Գրիգորիոս, և ղերիցս երանեալ րաբունապետն իմ և զքաջ փաղերայն զմեծն Գէորգէոս, համշիրակ մեծին Գրիգորի և կրսեր եղբայրն նորա, և զսրբասնեալ ծերունին՝ զմեծն և զհռչակելի հռետորն զՅակոբ րաբունապետն՝ զհամշիրակ և զերէց եղբայրս սոցա։ Սոքա երեք արեգակունքս համշիրակ շառաւեղեցան ի յեռամեծէն Յոհաննու Որոտնեցոյ, որ կախեալ էր ի սէրն Յիսուսի, և լուսաւորեցին զաղգս հայկազան դրենեաւք և աշակերտաւք և մեծամեծ սուրբ վարդապետաւք և րաբունապետաւք, զոր տէր աստուած Յիսուս Քրիստոս հատուսցէ վարձս ըստ վաստակոց. ամէն։

Այլ և յիշեսջիք զհեզահոգի րաբունապետքս՝ զԹումա վարդապետս, և զԿարապետ վարդապետն, և զծերունի հայրս մեր զՅովաննէս վարդապետն, որ ժողովող եղեն պանդխտութեանն մեր և ամենայն պիտոյիւք հանգուցին զմեզ և մխիթարեցին օրինակօք, թղթովք և հարկաւոր պիտոյիւք, զորս տէր աստուածն իմ Յիսուս Քրիստոս հատուսցէ ի հոգի սոցա բիւրապատկապէս, ամմէն։

Այլ և զիս զՅակոբ սոսկ անուամբ վարդապետս Դրիմեցի, զաշակերտ մեծին Գէորգի Երզնկացոյ, յերես անկեալ աղաչեմ. զհեզութիւն ձեր, ո՛վ դասք սուրբ վարդապետաց և բանասիրաց և ամենայն ընթերցողաց, որք օրինակէք և կամ ընթեռնուք և լուսաւորիք՝ յիշեցէք ի սուրբ սրտէ, աղաչեմ, ի մաքուր և յընդունելի աղօթս ձեր և աստ-

ւած ողորմի համեցէք ողորմելի գրչիս՝ Յակոբ վարդապետիս, զի վասն այժմ յուսոյ աշխատեցայ ի սայ գրելով և սրբագրելով, զի անտարակոյս լիցի օրինակողաց և ընթերցողաց։

Այլ և զբարեպաշտ ծնօղսն իմ և զաստուածասէր՝ զհայրն իմ Նորազատ և զմայրն իմ զՄելիք, և զեղբարսն իմ զԵղիսէ, և զքոյրսն իմ զԽաս-Մելիք և զԼալ-Խաթուն աղաչեմ յիշել....

Արդ, սկսեալ եղև ընտիր քարոզագիրքս ի թվիս հայի ՊԿԴ. (1415), ի Խառաբաստայ վանքն՝ ի դուռն սուրբ Աստուածածնին, բազում աշխատութեամբ և հոգեկան և մարմնական կրից փորձութեամբ, զոր յոյս ապաւինի զաղօթս ձեր ունիմ, զի ինքն աստուած քաղցրասցի ի բարերար կամաց իւրոց և զելս փորձութեան ամենայն հաւատացելոց և զմերն ի բարին աւարտեսցէ և ինքն աւրհնեալ եղիցի յաւիտեանս, ամէն։

Բայց գիրքս տկիկ երեկ, այս է պատճառն, զի ժամանակս ձմեռն էր և անճարակ էաք Դմըշխ թխթի. Թավրիզի թուղթս հաստ էր և դիրքն փոքր, իսկ որ օրինակաց ի վերայ...* ի թխթի այն պարկեշտ երեկ, զի թուխթ բարա...*

Կատարեցաւ գիրքս յապրիլ ամսոյ ի Ա. (1) և որէի ի Զ. (6), ի վանքս Մեծոփու** սուրբ Աստուածածնին գեղեցկաշէն տ[աճարին]։***

738

## ՈՂԲ Ի ՎԵՐԱՑ ԽԱՉԵԼՈՒԹԵԱՆՆ ՔՐԻՍՏՈՍԻ

Քեշիշյան, Ցուց. Ջմմառի 25****

354 բ Որ և զմեզ մաքրեսցէ Քրիստոս աստուած յամենայն մեղաց մերոց, նաև զՂրիմեցի Յակոբ վարդապետն,***** որ բազում աշխատու-

---

* 3—4 տառ. ջնջված լինելով չի վերծանվում։

** Վանքի անունը ջնջված է։

*** Այս նույն ձեռագրի վերջում Հակոբ Ղրիմեցին ընդօրինակել է նաև իր «Ցաղագս ազգականութեանց բաժանմանց» աշխատությունը, որը նույնպես շարադրել է Թովմա Մեծոփեցու խնդրանքով։ Այդ աշխատության կապակցությամբ հեղինակի գրած հիշատակարանի մի փոփոխակ, քաղելով Ղ. Փիրղալեմյանի «Նոտարք Հայոց» աշխատությունից, հրատարակել ենք սույն ժողովածուի 183 էջում (Հիշատակարան № 193), ենթադրաբար այն տեղադրելով 1416-ի թվաշարքում։

Այս ձեռագրի մեջ պահպանված Հակոբ Ղրիմեցու ինքնագիր հիշատակարանի տվյալով հաստատվում է, որ նա իր վերոհիշյալ աշխատությունը շարադրել է, իրոք, 1416 թվականին։

Ստորև տալիս ենք այդ ինքնագիր հիշատակարանի կարևոր մասը. «Գրեցաւ ի թվականութեանս Հայոց ՊԿԵ. (1416), ի վանքս Մեծոփու, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնոյք և կամ օրինակէք՝ մեղաւոր Ցակոբ վարդապետիս Ղրիմեցոյ աստուած ողորմի համեցէք և ծնողաց իմոց...»։

**** Ձեռագիրը ժողովածու է. Խաչելութեան ողբն ընդօրինակված է ձեռագրի 247ա—254բ էջերի վրա։

***** Հակոբ Ղրիմեցին վախճանվել է 1426 թվականին, ուստի այս հիշատակարանի գրությունը այդ թվականից առաջ պետք է եղած լինի։

թիւն կրեաց ի շինուﬓ ողբիս և զգրող սորա յիշեցէք ի մաքրափայլ
յաղօթս ձեր, ով ընթերցողք։

## 739

## ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

Լենինգրադ, Հանր. Գրադարան, АРМ. Н. С. 31

Գրիչ՝ Գրիգոր Ախալցխեցի.
վայր՝ Հերմոնի վանք

ա

388 բ ...Արդ, գրեցաւ սայ ձեռամբ յոգնամեղ և ախմար գրչի Գրիգոր
սուտանուն աբեղայի և գործով խաբեբայի, ի թվականութեանս Հայոց
տաւմարի յութհարիւրերորդի վաթսներորդի և ութերորդի (1419), ի
յաշխարհակալութեանն Ուսուֆին՝ Թուրքման պարոնին և ի կաթողի-
կոսութեան տէր Պաւղոսի։ Զոր յայսմ ամի ղմին կաթողիկոս Գրիգոր
անուն աքսորեցին ի յաթոռոյն, զոր մականուն Խանձող կոչիւր, և
զտէր Պաւղոս՝ Երուսաղէմայ եպիսկոպոս հարկեցին և հաստատեցին
կաթողիկոս։ Եւ եկն միւռոնն սուրբ և նամակն աւրհնութեան նորայ
յԱրևելս՝ ի յաշխարհս Հայոց։ Եւ ամենայն բաբունեաց պետք և բա-
բունիք և եպիսկոպոսք և քահանայք և իշխանք և ամենայն ազգս ու-
րախացան ի յանկուﬓ Խանձողին և ի նստիլն յաթոռն և ի հաստատիլն
տէր Պաւղոսի։ Բերկրեցաւ ամենայն ազգս Հայոց, զի էր ամենայնիւ
զարդարեալ նայ տեսականաւն և գործնականաւն, հոգեկան և մարմ-
նական առաքինութեամբ։ Եւ Վրաց ի թագաւորութեանն Աղէքսանդրի՝
որդւոյ Կոստանդիանոսի, զոր սպանաւ նայ ի ձեռն Ուսուֆ պարոնին,
որ էր Կոստանդիանոսն այն որդի Բագրատայ թագաւորի, և ի յա-
թափագութեանն Իվանէի, որդոյ Աղբուղայի։

Գրեցաւ գիրքս այս, որ կոչի Հարցմունք ի գաւառս Եղեգեաց, ի
վանքս, որ կոչի Հերմոնի, ընդ հովանեաւ սուրբ Լուսավորչիս Գրի-
գորի, և սուրբ Յակոբայ սուրբ Նշանիս, և սուրբ բաբունեաց դամ-
բարանացս, որ աստ կան հանգուցեալ սուրբ Նշխարք նոցայ, և այլ
389 ա բազմահաւաք սր ‖ բոց, որք աստ կան հաւաքեալ։ Եւ ի հայրապետու-
թեան սուրբ ուխտիս և գաւառիս պարոն Տարսայիճին, որդւոյ Գու-
զուճին, որդոյ Իճանիկին, որդոյ Բուրթէլին։ Զի յայսմ ամի յոյժ ի նե-
ղութիւն, ի տառապանք և յաղքատութիւն անկաւ, զի նա, որ բոլոր
գաւառիս իշխէր, այժմ ոչ միոյ ագարակի կամ գեղջ ոչ կարէ իշխել
զի խլեալ և յափշտակեալ էին ի նմանէ զամենայն գեւղ և զքաղաք.
զվանք և զանապատ ի նմանէ. և նայ փախեալ և թագուցեալ էր ի
ծերպս վիմաց և ի մայրիս, մինչև այց արասցէ նմա տէր աստուած
և յառաջին փառսն և իշխանութիւնն դարձուսցէ զնայ։ Եւ ի հայրա-
պետութեան այսմ նահանգի տէր Ստեփանոսի, մականուն Իւանէի, որ-
դի պարոն Սմբատայ և եղբայր պարոն Բէշքէնի, զոր տէր աստուած
պահեսցէ զնոսայ ընդ երկայն աւուրս՝ հարազատովն իւր։ Եւ ի յա-
ռաջնորդութեան սուրբ ուխտիս եռամեծիս Յովհաննու բաբունեաց

պետիս, զի յայսմ ժամանակի փայլէր իբրև զարեգակն ի մէջ աստե-
ղաց, նմանեալ անուանակցացն Յովհաննու Մկրտչին և Յովհաննու
389 բ որդոյն Զեբեթեայ... զոր պահես || ցէ զսայ տէր աստուած բարձր փա-
ռաւք բարգաւաճ կենաւք ի կամս ողորմութեանն իւրոյ և յետ աս-
տեաց սուրբ վարդապետացն և անուանակցացն դասակից և պսակակից
արասցէ տէր աստուած՝ հանդերձ ծնաւղաւք և ամենայն արեան մեր-
ձաւորաւք։
Արդ, գրեցաւ սայ յիշատակ ինձ, և հոգևոր հաւրն և վարդապե-
տին իմոյ Մարուգէ կրաւնաւորի, և ծնաւղացն՝ հոգևորացն և մարմ-
նաւորացն։
Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա կարդալով կամ
աւրինակելով յիշեցէք ի յաղաւթս ձեր զՄարգարէ կրաւնաւորն, զի
յոյժ երախտաւոր է մեզ, և զառաջին վարպետն իմ զՄկրաիչ քահա-
նայն, և զՎարդան, և զԿարապետ քահանայն, զի նոքա անյիշատակ
են և խեղճ. յիշեցէք աստուած ողորմայիւ և զհայրն իմ զՍարգիս և
զմայրն իմ զԽէրխաթուն, յիշեցէք յաղաւթս ձեր և զեղբարսն իմ զկեն-
դանիս՝ զԱստուածատուրն և զԱւետիսն...։
Այլ և կրկին յերես անկեալ աղաչեմ և համբուրեմ զսուրբ գար-
շապարստ ձեր, ո՛վ ընթերցողք և հանդիպողք այսմ գրոցս, յիշեցէք
զվերոյասացեալ զծնաւղսն մեր առհասարակ. և զիս՝ անպիտան և ախ-
մար գրիչս յիշեցէք աստուած-ողորմայիւ միով և մեղաց թողութիւն
խնդրեցէք և անմեղադիր լերուք, զի երեք ամ բոլոր գրիչ ի ձեռս չի
առել, ու սատանայ զիս ի պարսետ եդիր ու յաշխարհէ յաշխարհ ձգեց.
յետոյ աւգնութիւն յաստուծոյ հասաւ ու դարձոյց զիս ի յառաջին
հանգիստն յետ երեք ամին։ Յորժամ եկի վանքս Բ. (2) տարով յա-
ռաջ մորեխ մարախն զվաստակն կերաւ և յոյժ գառնութիւն հասաւ
արեելից աշխարհիս, զի երեք ամ հետ մի զմիոյ վաստակն կերաւ և
աւերեաց զաշխարհս։ Ու մինչև ի գրոց կէսս, որ կու գրէի միաբանա-
տուն ու սեղանատեղ կայր, յետոյ վանիցս տնտեսն գնաց ու վանից
սեղանատեղս աւերեցաւ ու երկպառակութիւնն ի միաբանքս անկաւ,
որ բամբասանք ու տրտունջն շատացաւ, ու եղան ամէնն ինքնագլուխ
խցւոր։ Ու ամէն խուց ունէին ու ես ոչ, ու ամէն հաց ունէին ու ես
ոչ, ու զվանիցս հացն վերայ իւրեանցն բաժանեցին ու ինձ ոչ տվին,
թէ նայ զտրիպ է, նրայ բաժին մի տէք, ու ամէնն մոնթ, սպասաւոր
ունէին ու ես ոչ, ու ամէնն սիրելի ունէին, որ հաց ու թաց կու բե-
րէին ու ինձ ոչ, ու ամէնն կու երթէին ի վարդապետի խուցն, ու-
տէին ու խմէին ու ես ոչ, ու վարդապետն զամէն մարդու քաղց գի-
390 ա տենէր ու զիմս ոչ, ու զամէն մարդ միաբանքն մին մին || տանէր ի
խուցն ու կերակրէր ու զիս ոչ. ու զամէն մարդու գոհ ու գանգատ
հարցանէր ու զիմս ոչ, ու զամէն մարդ մխիթարէր ու զիս ոչ, ու ես
նրայ սրբութեանն համար նստեալ էի* կու գրէի սոված ու քաղցած
ու գնի ոչ։ Տնտեսին գնալն մին ·գիրն Գ. (3) աւր հաց չկերայ ու ես

* Հապավված է այսպես՝ «նստլի»։

ուզեցի ոչ, մին գիրն Բ. (2) աւր անաւթի կացի ու ուզեցի՝ նա հաց տվին ոչ, ու մին աւր մինչև իրիկուն անաւթի կացի, մին խիար ընկաւ՝ զէն կերայ ոչ ու մենակ, մինչ յիրիկուն, գիր կու գրէի։ Երբ ի ժամ կու երթայի եզրարքն ինձ քէն ին արել, ի հետս խաւսէին ոչ, ու վաղւէնէ մինչ յիրիկուն մաւա վարդապետն դան դիշերուի՝ ես ի մաւան էի ոչ, ու շաբաթն մէկ հետ զաւրինակն կուզէր վարդապետն, թէ կու երթամ ու ես լմնել կտրէի ոչ, ու վարդապետին մեծ աշակերտն ինձ խիստ կու աւգնէր, կու երթէր մաւտ ի վարդապետն, թէ Ախալցխեցուն աւրինակ կու տաս ու ինձ ոչ։՛Եղբարցս աւգնութիւնն այս չափսս էր ու մարմնաւոր ուրախութիւնն ինձ ի յայս գրոցս գրելս այս չափ էր։ [Ու վարդապետն գրիեանք բաժնեց աշակերտացն Բ. (2) ու Գ. (3) ու ինձ մեկ մ' ոչ։ Աստուծոյ համար, ով որ դարիպութիւն չէ գնացել թող այլ չերթայ. զհոգու խոցն ի սատանայէ լեզուաւ ասել կարեմ ոչ։ Ու ճտնապարհ կայր ինձ գնալու ու միտքս հանգչէր ոչ. և զայս ամենայն վիշտս քաշել եմ ի գրոց գրելս ու մարգ գիտէր ոչ].* Մին այլ մեծ աշակերտն զմին փոքր աբեղա կու ծեծէր, թէ Գրիգորին Թուղթ յէ՞ր կու կոկես ու ի դուս ձգես ոչ։ Յետոյ արարիչն աստուած, որ զամենայն տարակոյս ի մարդոյ կու բառնայ ու զամենայն քաղց կու լնու. ու կերակրէ, յաբոյց մին բարի մարդ ու եղաւ ինձ հայր ու իւր կողակիցն ինձ մայր, մինչև զգիրքս լմնեցի տվին շալակով հանապազ հաց ինձ կու զրկէին, տացէ նոցա տէր աստուած զայն հացն, որ ուտեն ու այլ ոչ քաղցենան, դՋամալադին մոնթն ի խորին ծերութիւնն հասուցանէ։ Ու ես հէնց խեղճ ու մենակ, որ մէկ բարչ Ջրի բերող անգամ ոչ ունէի, բայց զաստուած աւգնական ունէի, ու կամաւն աստուծոյ սկսայ ու կարողութեամբ նորին ՀԴ. (74) աւրն վճարեցի։

Արդ, որք աւգտիք ի սմանէ վասն սիրոյն Քրիստոսի և յուսոյ արքայութեանն մի աստուած ողորմայիւ աւգնեցէք ինձ, զի կարող է աստուած ի ձեռն այլոց այլում ողորմութիւն առնել, զի և դուք լիջիք յայնմ ատենին, ուր բանք սպառին ու գործք թագաւորեն, և մեք և դուք ի մի բերան աւրհնութիւն և փառս տացուք անեղին աստուծոյ։

Ընդ նմին յիշեցէք զկազմաւղ գրոյս զԿարապետ կուսակրաւն աբեղայ զմանուկ կրաւնաւորն՝

Նմտնեալն Դանիէլի,
Այն, որ հոգոյն էր ցանկալի,
Աժխոյժ մտաւք խիստ գովելի,
Մատունք ձեռացն շնորհաւքն ի լի,
Որ մտանէր յեկեղեցի
Եւ շաւշափէր զբանն ի մարմնի,
Որպէս որդիքն Զեբեդի,
Եւ տեսանէր զտէրն մարմնով

---

* Ուղղաղիծ փակագծերի մեջ առնված հատվածն ավելացված է լուսանցքի վրա։

*Պատարագեալ յեկեղեցի,*
*Որպէս երբեմն Մովսէսի*
*Երևեցաւ ի Սինայի,*
*Եւ զարգարէր մատեանս,*
*Որ ընթեռնուն յեկեղեցի.*

*Տացէ նմա տէր աստուած կեանք խաղաղական և պահեսցէ ընդ երկայն աւուրս և յետ աստեացս զինքն, զիւր ամենայն արեան մերձաւորաւքն, սուրբ կրաւնաւորացն դասակից արասցէ տէր աստուած, ամէն և եղիցի.*

Բ

352 ա *Զմեղաւոր և անպիտան գրիչս՝ զ*Գրիգոր *սուտանուն արեղայ յիշեցէք յորժամ ընթեռնուք զսուրբ մատեանս, զի յոյժ վշտով գրեցի և դառնութեամբ, զի և դուք լիջիք յիշեալ առաջի աստուծոյ։*

## 740

## ՑԱՑՍՄԱՒՈՒՐՔ

*Լենինգրադ, Հանր. Գրադարան,* АРМ. Н. С. 15

*Գրիչ՝* Կարապետ
*վայր՝* Վարձգ

ա

*Աւարտեցաւ սուրբ գիրքս այս յամի ՊՀԶ. Թուականութեանս հայկազեան տոհմիս տումարի (1427), ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի* Կարապետ *մեղաւոր և ծոյլ երիցու և անարժան այսմ անուան և աստիճանի, ի խնդրոյ աստուածասէր տանուտրոջն* Յովանէսի... *յիշատակ անջինջ ի մէջ սուրբ եկեղեցոյ իւրն և ծնողաց իւրոց՝ բարեպաշտիցն և երկիւղածացն* Թաւաքալին *և* Ղրփչախին, *և կենակցին իւրոյ* Մըրուաթին, *և զաւակին իւրոյ* Սահակին՝ *փոխեցելոցն ի Քրիստոս և այլ ամենայն արեան մերձաւորաց իւրոց՝ կենդանեացն և հանգուցելոցն։*

*... Որ և տացէ Քրիստոս աստուած այսմ փոխան... զձայնն երանական, թէ՝ Մուտ յուրախութիւն տեառն քո՝* Յովանիսին, *և ծնողաց նորին* Թաւաքալին *և* Ղրփչախին, *և եղբարցն* Յակոբին *և* Սանակին, *և քուերցն* Թավրէզ-Մէլէքին, Օրդու-Մէլէքին *և* Մըրուաթին, *և կենակցին իւրոյ* Մըրուաթին, *և զաւակին իւրոյ* Սահակին, *որ տարաժամ փոխեցաւ ի Քրիստոս և սուգ անմխիթար եթող* Յովանէսին:

*Եւ արդ, ես՝ անպտուղս ի բարեաց, մեղանչականս յանմեղաց և անկատարս ի կատարելոց, անկարգս ի կարգաւորաց, տգէտս ի գիտնականաց և անարհեստս ի յարուեստագիտաց, անյիշելիս ի | | |*

Բ

*... Ողորմեա Քրիստոս աստուած* Ամիր-Սարգսին, *որ զօրինակն շնորհեաց, ետ առաւել* Յովանէսին *և ծնողաց նորին, որ ստացաւ զգիրքս*

և եա ի դուռն սուրբ Նշանին Վարագայ, որք ընթեռնուք յիշեցէք և աստուած-ողորմի ասացէք։*

## 741

### ԱԻԵՏԱՐԱՆ

Լենինգրադ, Արևելագիտության ինստիտուտ, Арм. В. 25

Գրիչ՝ Թովմա
Վայր՝ Մեծոփայ վանք

... Կրաւնաւորն զՍտեփաննոս...ետացաւ զսուրբ աւետարանս յիշատակ բարի հոգւոյ իւրոյ, և բարի ծնաւղաց իւրոց՝ Ներսեսին և Սաղդաթին՝ հանգուցելոցն ի Քրիստոս, և եղբաւր իւրոյ Էլէքսան կրաւնաւորին, և ամենայն արեան մերձաւորաց իւրոց՝ կենդանեաց և հանգուցելոցն ի Քրիստոս, ամէն։

Եւ արդ, գրեցաւ սա յերկիրս Քաջբերունեաց, ի սուրբ մենաստանիս, որ կոչի Մեծոփայ վանք, ընդ հովանեաւ տիրամաւր սուրբ Աստուածածնիս, և սուրբ Յակոբ հայրապետիս, և սուրբ վարդապետացս գերեզմանացս, որ աստ կան հանգուցեալ, և առ ոտս տիեզերալուր և աշխարհալոյս մեծ րաբունապետիս մերոյ Թովմայի և Մատթէոս կրաւնաւորի, որ հայրական գթով նախախնամէ զմեզ...։

Եւ ի մերոյ մեծ թվականիս Հայոց ութհարիւրերորդի եւթանասուներորդի և ութերորդի (1429), ձեռամբ անարժան, յոգնամեղ, մեղսաշաղախ, ծոյլ և անարի, փծուն և անարհեստ գրչի Թովմա սուտանուն կրաւնաւորի, զոր ոչ եմ արժանի այսմ գործոյ և աստիճանի, այլ ըստ բազում հայցման և պատկառանաց սուրբ եղբաւրս մերոյ Ստեփաննոս կրաւնաւորի ձեռն ի գործ արկի տխեղծ մատամբ և մեղաւոր անձամբ գրեցի տնարժան ձեռաւք իմովք։ Արդ... յիշեսջիք... զստացող սորա զՍտեփաննոս կրաւնաւորն և զԱլեքսան կրաւնաւորն զհանգուցեալն ի Քրիստոս և զՂազարբէկ միակեցն՝ զհարազատ եղբարքն իւր, և զծնաւղսն իւր զՆերսէսն ‖ և զՍաղդաթն՝ զհանգուցեալքն ի Քրիստոս, և զքուրն իմ զՇամշէն, և զորդին իւր զՅոհանէս քահանայն, և զՂազար դպիրն, և զամենայն արեան մերձաւորսն իւր...։

[Նա]և զհոգև[որ եղբայ]րն մեր զՆերսէս եպիսկոպոսն, որ բազում աշխատութեամբ աշխատեցաւ ի վերայ մեր յիշեցէք ի բարին... ընդ նոսին և զանպիտան գրիչս Թումա և զծնաւղսն իմ զՂազար մահդասին և զԱմբարն՝ զհանգուցեալքն ի Քրիստոս յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր...։

* Մանր և անհեաաքրքիր ու միօրինակ հիշատակագրությունններ գրիչը թողել է համարյա բոլոր վարքագրությունների վերջում։

742

ԱՒԵՏԱՐԱՆ

*Լենինգրադ, Հանր. գրադարան,* ADM. H. C. 34

*Վայր՝* Խաղտեաց գաւառ, Բերդակայ վանք

... *Ցամի ութհարիւրերորդի եւթանասուներորդի և իններորդի թուականութեանս Հայոց նոր տումարի (1430), ի գաւառս* Խախտեաց, *ի հրեշտակաբնակ մենաստանս, որ կոչի* Բերդակայ *վանք, ընդ հովանեաւ սրբոյ Աստուածածնիս և սրբոյ լուսաւորչիս, ի հայրապետութեան տէր* Կոստ[անդնեայ] *և յեպիսկոպոսութեան գաւառիս* Բաբերդոյ *և* Դերջնայ *տէր* Աւեաեաց. *յուսամք յամենայն մեծն աստուած, որ զինքն անփորձ պահէ մինչև ի կէտ կոչման իւրոյ, հանդերձ իւր միաբան կրաւնաւորաւքն, ամէն։ Նաև զԲերդականս առաջնորդ՝ զ*Գրիգոր *հերպետն իւր միաբանաւքն անսասան պահէ։*

*Ի յայսմ ժամանակի գրեցաւ ամենագովելի և գերահռչակելի* սուրբ աւետարանս...։*

*Արդ, այսմ աստուածապատում և քրիստոսաւանդ տառիս ցանկացող եղեալ բարիոք և պատուական** հեզահոգի մայրն* Մարեայ՝ *գնեց զաւետարանս իւր յիշատակ և | | |****

743

ՇԱՐԱԿՆՈՑ

*Լենինգրադ, Արևելագիտության ինստիտուտ,* Арм. A. 38

*Գրիչ՝* Յովանէս
*վայր՝* Տփխիս

... *Գրեցաւ եղանակաւոր տառս ի թուաբերութեան հայկազեանս տումարի ՊՁԶ. (1437), ձեռամբ աստուածահաճոյ ընտրեալ և սուրբ կրաւնաւորի և քաջ փիլիսոփայի տէր* Սարգսի՝ *[աթոռա]կալի սուրբ Կաթուղիկէին քաղաքիս* [Տփխիս], *և աւարտեցաւ ձեռամբ բազ[մամեղ և անար]հեստ գրչի* Յովանէս *սուտանուն | | | ք]աղաքիս* Տփխիս, *ի հայրա[պետութեան տեառն* Կոս]տանդեա *և ի թագաւորութեան [Վրաց* Ալեքսա՞նդ]րեա, *ի լաւ և յընտիր աւրինակէ, ընդ հովանեաւ կամակատար սուրբ Աստուածածնիս և լուսակիր տաճարիս, ի խնդրոյ բարեմիտ, մաքուր և հեզ և կուսակրաւն ծաղկեալ ալեաւք քահանայի* Խաչատրոյ, *յիշատակ յաւիտենական հոգւոյ իւրոյ և ծնաւղաց իւրոց և ի վայելումն քուերորդւոյ իւրոյ մաքրամիտ քահանայի* Գալըսաի։

*Արդ, որք հանդիպիք սմա ուսմամբ կամ աւրինակելով և կամ տեսանելով՝ յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զվերոյգրեալ ստացող սորին* զԽաչատուր *կրաւնաւոր, հանդերձ աստուածասէր զարմիւքն.*

* *Բաց ենք թողնում 4 անհետաքրքիր էջ, ուր փառաբանվում է ավետարանը։*

** *Շարունակությունը գրված է այլ ձեռագրով։*

*** *Շարունակությունը խնամքով ջնջված է։*

